Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ



ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆ. ԱԿՏԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



ՄՇԱԿՈՒՅԹ ԵՎ ԿՅԱՆՔ



ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ




**Խմբագրության հասցեն՝**
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**
գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանքի՝ 51—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11








# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ

## (ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑ ՍՄԿԿ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԻ ՀԵՏ)

Շատ ժամանակ չի անցել ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսից, և մարդիկ տակավին գտնվում են նրա խոր ազդեցության ներքո, նրա հիմնադրույթների, որոշումների ոգով վերագնահատում են իրենց գործունեությունը, անում անհրաժեշտ եզրահանգումներ, հետևություններ՝ վերակառուցման իրականացմանն առավել ակտիվորեն մասնակցելու համար:

Հայաստանի կուսակցական կազմակերպության պատվիրակության կազմում կոնֆերանսին մասնակցում էր նաև ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար Ծ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ: Մեր հատուկ թղթակից Ա. ՍԱՔԱՆՅԱՆԸ հանդիպում ունեցավ նրա հետ և խնդրեց պատասխանել մի քանի հարցերի:

**— Առաջին հարցը, ըստ էության, ավանդական է. ինչպիսի՞ն է կոնֆերանսից ստացած ձեր տպավորությունը:**

— Նախ ասեմ, որ ինձ համար մեծ պատիվ էր մասնակցել կուսակցության այնպիսի կարևոր, ես կասեի՝ դարակազմիկ, փորումի, ինչպիսին XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսն էր: Կոնֆերանսից ստացած իմ ամենախոր տպավորությունը նրա հրապարակայնությունն էր: Զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում ամենայն պարզությամբ ու քննադատորեն արծարծվեցին մեր երկրի տնտեսական, սոցիալական և հասարակական-քաղաքական կյանքի գրեթե բոլոր ոլորտներն ընդգրկող հարցերը, որոնք այսօր հուզում են կուսակցությանն ու ժողովրդին: Մարդիկ արտահայտվում էին անկաշկանդ, սրտաբացորեն, անկեղծորեն խոստովանում էին իրենց աշխատանքներում տեղ գտած թերություններն ու թերացումները, սկզբունքային դիրքերից քննադատում իրենց և ուրիշների սխալներն ու վրիպումները: Այլ խոսքով, տիրում էր իսկական բանավիճային մթնոլորտ, մի բան, որը բացառված էր լճացման տարիներին:

Այո՛, նախկինի պես չէր, որ մարդիկ հանդես գային ինքնահաշվետվությամբ, գովերգեին արածն ու չարածը: Ինքը՝ դահլիճն էր պահանջում, որ ելույթը բխի կոնֆերանսում քննարկվող հարցերի էությունից, կոնֆերանսի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների պահանջներից ու ոգուց: Ժամանակի ու հարցադրումների նկատմամբ պահանջկոտությունն այնքան ուժեղ էր, պրոբլեմների նկատմամբ՝ հետաքրքրությունն այն աստիճան բարձր, որ դահլիճը երբեմն ընդհատում էր հռետորին, եթե նրա խոսքը գործի էությունից չէր բխում: Տարբեր ռեգիոնների կուսակցական, սովետական և տնտեսական աշխատողների ելույթներում առաջ քաշված հարցերը այնքան հրատապ ու կենսական էին, որ, ասես, վերաբերում էին նաև մեզ, կարծես մեր գործունեությունն էր վերլուծվում: Ես նկատի ունեմ, օրինակ, տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, նոր տնտեսական քաղաքականության իրականացումը, աշխատանքի կազմակերպման և վարձատրության նոր ձևերի ներդրումը, էկոնոմիկայի գրեթե բոլոր բնագավառներում ինքնուրույնության ապահովումը և այլն:

Հայտնի է, որ մինչև վերակառուցումն էլ մեր էկոնոմիկայի զարգացման հարցերը բազմիցս քննարկվել են ՍՄԿԿ Կենտկոմի պլենումներում: Ու թեև բոլորս միահամուռ կրկնում էնք, թե այդ պլենումների ընդունած որոշումները պետք է փրկեն, բարձրացնեն մեր էկոնոմիկան, սակայն իրականում որևէ բան չէր իրականացվում, քանի որ տնտեսական մեխանիզմը հին էր, կաշկանդում, կասեցնում էր զարգացման

Հարցազրույցը պատրաստ էր տպագրության, երբ ընկ. Շ. Ալեքսանյանն ընտրվեց ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար:

առաջընթացը: Հիշենք, օրինակ, 1965 թ. մարտյան և սեպտեմբերյան պլենումները, որոնցից առաջինը նվիրված էր գյուղատնտեսության, իսկ երկրորդը՝ արդյունաբերության զարգացման հարցերին: Սպասելիքները մեծ էին, մինչդեռ այդ բնագավառներում էական տեղաշարժեր չեղան, քանի որ կառավարման մեթոդներն ըստ էության անփոփոխ մնացին:

Կոնֆերանսի նշանակության մասին լավ ասաց Մ. Ս. Գորբաչովը՝ այն ընդգրկեց ներկա փուլում կուսակցության և երկրի առջև կանգնած պրոբլեմների ամբողջ կոմպլեքսը, խոշոր փուլ դարձավ Կենտկոմի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի լենինյան գծի զարգացման, վերակառուցման տեսության և պրակտիկայի խորացման ճանապարհին:

**— Կոնֆերանսում շատ խոսվեց կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների իրավունքների սահմանազատման, այդ առնչությամբ վերջիններիս ինքնուրույնության, նրանց աշխատողների ակտիվության ու նախաձեռնության զարգացման մասին: Այս առումով ինչպե՞ս է վիճակը ձեր շրջանում:**

— Տեղին հարց է: Այո՛, ինչպես Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ, այնպես էլ մտքերի փոխանակությանը մասնակցած մի շարք ընկերների ելույթներում այդ հարցերը արծարծվեցին պատշաճ կերպով: Կոնֆերանսը խնդիր դրեց, որպեսզի կուսակցական մարմինները դայակի դեր չկատարեն սովետական ու տնտեսական մարմինների նկատմամբ, տարանջատվեն, սահմանազատվեն նրանց իրավունքները, ամեն մի մարմին զբաղվի իր գործով, իր անելիքով:

Մեզ համար կուսակցական կոնֆերանսի այդ պահանջը գործունեության իսկական ուղենիշ է: Վերակառուցման ընթացքում լայն հնարավորություններ են ընձեռվում տեղական սովետների, տնտեսությունների և հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին՝ ինքնուրույն կերպով լուծելու իրենց կենսական հարցերը: Նիգավանի գյուղսովետի գործկոմի նախագահ Ն. Մանուկյանը, օրինակ, լավ է պատկերացնում իր աշխատանքը, ինքնուրույնաբար զբաղվում է գյուղի սոցիալական զարգացման հարցերի լուծմամբ: Նույնը կարելի է ասել նաև կուսբյուրոյի քարտուղար Հ. Մարտիրոսյանի մասին: Նիգավանում տնտեսության, գյուղսովետի և կուսկազմակերպության ղեկավարները ակտիվորեն համագործակցում են միմյանց հետ, ոչ մեկը մյուսի ֆունկցիաների մեջ չի մտնում, մեկը մյուսին չի փոխարինում:

Մեզ մոտ բացառված է կուսկազմակերպության կողմից գյուղսովետին հանձնարարություն տալը: Աշխատանքը տարվում է այնտեղի կոմունիստների միջոցով:

Սակայն ցավոք, այսօր էլ հանդիպում են տնտեսությունների ղեկավարներ, որոնք, ըստ էության, լավ չեն պատկերացնում իրենց իրավունքներն ու պարտականությունները: Երբեմն, որքան էլ տարօրինակ է, տնտեսության ղեկավարն ասում է, թե հանձնարարություն է տվել գյուղսովետի գործկոմի նախագահին: Եթե, իրոք, այդպես է, այդ նշանակում է, որ վերջինս ևս իր տեղում չէ: Մենք այս հարցերի վրա ենք բևեռում սովետական ու տնտեսական կադրերի ուշադրությունը: Մենք արդեն բոլորել ենք վերակառուցման երեք տարին, մարդկանց ինքնուրույնաբար գործելու լայն հնարավորություն է տրվել: Կարելի՞ է, արդյոք, այդ պայմաններում հանդես գալ խնամառուի դերում և այս կամ այն հիմնարկ-ձեռնարկությունների, տնտեսության կամ գյուղական սովետի գործադիր կոմիտեի ղեկավարին հուշել, թե որն է նրա անելիքը: Դա բնավ կուսշրջկոմի գործը չէ: Մենք պետք է մշակենք հեռանկարը, զբաղվենք պրոբլեմների լուծման հեռանկարային հարցերով: Բայց չի կարելի չնկատել, որ առանձին ղեկավարներ պատրաստ չեն ինքնուրույն աշխատանքի, չեն կարողանում կամ չեն կամենում լուծել իրենց վերաբերող հարցերը, սպասում են «վերևի» հանձնարարությանն ու օգնությանը: Այստեղից էլ՝ կադրերի ակտիվության բարձրացման ու նախաձեռնության զարգացման ձախողումները: Կուսշրջկոմի խնդիրն էլ այն է, որ ոչ թե աշխատի նրանց փոխարեն, այլ գործի լծի նրանց, նպաստի նրանց մտքի շարժմանը: Արագածի պետական տնտեսության դիրեկտոր Ա. Կարապետյանը եկել էր շրջկոմ և ասում էր. «Օգնեցեք կերի կուտակմանը, 16 հնձվորով ի՞նչ անենք»: Պատասխանեցի. «Գնացեք կերի կուտակման, հնձի աշխատանքները կատարեք դեմոկրատական հիմունքներով, պայմանագրեր կնքեք մարդկանց հետ»: Դիրեկտորը գնաց և խոտհարքները կապալով տվեց բնակչությանը: Շուտով խոտի բերքահավաքը կարգավորվեց և ընթացավ մեծ հաջողությամբ: Իսկ եթե դիրեկտորը կապալային աշխատանքի կազմակերպման մասին մտածեր վաղօրոք, ապա հարկ չէր զգացվի գալ կուսշրջկոմ: Կամ՝ Թթուջրի պետական տնտեսության դիրեկտորը տրտնջում էր, թե



մեր մարդիկ սովխոզի գործը թողած գնում են Վարդենիս՝ խոտհնձի: Մինչդեռ գործը խելամտորեն կազմակերպելու դեպքում նրանք կմնային իրենց տնտեսությունում:

Կադրերի ինքնուրույն գործելուն շատ հաճախ խանգարում է նաև հանրապետական առանձին մարմինների անտարբեր, չինովնիկական-բյուրոկրատական վերաբերմունքը տնտեսությունների և հիմնարկ-ձեռնարկությունների հոգսերին ու կարիքներին: Վարդենուտի տնտեսությունում անասնապահական ֆերման ընդլայնելու նպատակով տրամադրվել է 750 հազար, Հարթավանում՝ 1.600 հազար ռուբլի: Սակայն դրանց մեքենայացման տեխնոլոգիաները, աշխատանքի կազմակերպման ձևերը մեր պայմաններին չեն համապատասխանում, չկան օժանդակ հարմարություններ՝ բաղնիք, ճաշարան, հանգստի սենյակներ և այլն: Տնտեսությունների, ՇԱԱՄ-ի խորհրդի ղեկավարները զբաղվել են, բողոքել, խնդրել, որպեսզի այդ թերացումները շտկվեն և կարգավորվեն, սակայն նրանց չեն լսել, չեն ընդառաջել: Կուսշրջկոմը ստիպված միջամտում է, այստեղից էլ՝ տնտեսական մարմինների անելիքը սեփական ուսերի վրա առնելը:

Կամ մեկ ուրիշ օրինակ: Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունը մեզ մոտ բացել է ֆաբրիկայի մասնաճյուղ: Մարդիկ աշխատանքի են տեղավորվել: Դա, ինչ խոսք, լավ է: Սակայն վատն այն է, որ տարեկան 10 մլն ռուբլու արտադրանք թողարկող կոլեկտիվը զրկված է կենցաղային տարրական հարմարություններից: Այստեղ հիմնականում աշխատում են կանայք, սակայն նրանց համար հիգիենայի սենյակ չկա: Մասնաճյուղի ղեկավարների ահազանգերը մնացել են, ինչպես ասում են, «ձայն բարբառո հանապատի»: Ինչ անեինք, չզբաղվեի՞նք: Այդ հարցը քննարկման առարկա դարձավ շրջկոմի բյուրոյում, մինիստրությանը տեղյակ պահեցինք մեր որոշմանը: Մեր միջամտությունից հետո միայն մինիստրությունում հարցը վերանայեցին, խոստումներ տվեցին, բայց, ցավոք, մինչև օրս գործնական քայլերի չեն դիմել:

Այս ամենից կարելի է մի հետևություն անել: Ճիշտ է, կուսշրջկոմը չպետք է խառնվի սովետների ու տնտեսական մարմինների գործերին, և ես գտնում եմ, որ, իրոք, այդպես էլ հարկավոր է: Սակայն մի բան է ցանկանալը, մի ուրիշ բան՝ հնարավորությունը: Իրողությունն այն է, որ գործող կառուցվածքի պայմաններում դրա իրականացումը որոշակի դժվարությունների հետ է կապված: Համոզված եմ, որ դրությունը շտկելու համար մենք պետք է հնարավորին չափ արագորեն կյանքի կոչենք կառավարման մեխանիզմը կատարելագործելու վերաբերյալ կոնֆերանսի հիմնադրույթները:

**— Հետաքրքրական է, թե ինչի՞ մասին կխոսեիք, եթե կոնֆերանսում ձեզ ձայն տրվեր:**

— Ինչի՞ մասին: Թերևս ամենից շատ՝ մեր հոգսերի, նաև նոր պահանջներին համապատասխան կուսշրջկոմի աշխատանքում եղած փոփոխությունների մասին:

Նախ ասեմ, որ կոնֆերանսի օրերին հանդիպումներ եմ ունեցել այլ հանրապետությունների մի շարք կուսշրջկոմների քարտուղարների հետ: Ի դեպ, նրանց էլ նույն հարցերն են հուզում: Ըստ էության, շատ բաներ, ինչպես հարկն է, չենք պատկերացնում՝ պիտի աշխատել նոր ոճով, բայց ինչպե՞ս... Եթե կուսշրջկոմը չպետք է խառնվի տնտեսական մարմիններին ու սովետներին վերապահվող հարցերին, իսկ դա, նորից եմ կրկնում, այդպես էլ պետք է լինի, ապա ի՞նչ երաշխիքներ կան, որ նրանց մոտ ամեն բան կընթանա այնպես, ինչպես մենք ենք ուզում:

Կուսակցական կոնֆերանսում ամենայն խստությամբ խոսվեց ընտրովի մարմինների հեղինակության ու պատասխանատվության բարձրացման մասին: Դա արժանացավ կոնֆերանսի մասնակիցների լայն հավանությանը: Այս առթիվ կուզեի հայտնել իմ նկատառումը, արդյոք, չե՞նք շփոթում շրջանային կոմիտեն, որը ընտրովի մարմին է, շրջկոմի ապարատի հետ, որը շրջկոմի կոլեկտիվ կամքի կատարողն է: Միտքս պարզեմ: Վերցնենք թեկուզ շրջկոմի բյուրոյում քննարկվող հարցերի նախապատրաստումը: Մինչև օրս էլ դրանք նախապատրաստվում ու քննարկվում են շրջկոմի ապարատի աշխատողների միջոցով, մինչդեռ ժամանակն է, որ իրենց դեմքը ցույց տան շրջանային կուսկազմակերպության կոնֆերանսում ընտրված շրջկոմի անդամները, այսինքն՝ մասնակցեն հարցերի նախապատրաստմանը և քննարկմանը, հսկեն շրջկոմի բյուրոյի և ապարատի աշխատանքը:

Կոմունիստների պատասխանատվության բարձրացման առնչությամբ կուզեի շոշափել, իմ կարծիքով, մի կարևոր հարց: Այն վերաբերում է նրանց կողմից կանոնադրական պահանջների կատարմանը: Նախապես ասեմ, որ մեզ մոտ բավականաչափ պակասել է տույժ ստացած կոմունիստների թիվը: Մենք գտնում ենք, որ ոչ

շինության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում: Հաստոցաշինության մեջ կապիտալ ներդրումների ծավալում ընդլայնվում է թվածրագրային կառավարմամբ (ԹԾԿ) հաստոցների արտադրության և մշակման կենտրոնների տեսակարար կշիռը:

Ճյուղի ձեռնարկությունների վերակառուցումը և տեխնիկական վերազինումը հընգամյակում կապահովեն արտադրանքի հավելաճի 63 տոկոսը նախորդ հնգամյակի 35 տոկոսի դիմաց: Դրանք կապահովեն նաև հիմնական ֆոնդերի հավելաճի 61 տոկոսը, նոր ապրանքների աճի 72 տոկոսը, սարքավորումների նոր տեսակների ներդըրման ծավալի 45 տոկոսը:

Ճյուղի զարգացման խնդիրների իրացումը պահանջում է գործող ձեռնարկություններում ԹԾԿ-ով նոր հաստոցների, ռոբոտների և մշակման կենտրոնների կիրառման մասշտաբների ընդլայնման, արտադրության ինտենսիվացման խորացման մի շարք տեխնիկատնտեսական միջոցառումների իրականացում, տեխնոլոգիական նոր միջոցառումների մշակում ու ներդրում մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքի կազմի արմատական նորացման և դրա ճյուղային կառուցվածքի կատարելագործման նպատակով:

Այս միջոցառումների իրացման անհրաժեշտությունը բխում է այն բանից, որ հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքի ամբողջ ծավալի համարյա 85 տոկոսը կոմպլեկտավորող շինվածքներ են: Վերջնական արտադրանք են միայն մետաղահատ, քարամշակման հաստոցները, դարբնոցամամլիչային սարքավորումները, շարժական էլեկտրակայանները և ավտոբեռնիչները: Ընդ որում կոմպլեկտավորող շինվածքների մեծ թիվը տարբեր անվանացանկով ու թողարկման երկարաձգությամբ (15 տարուց ավելի) դժվարացնում է արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացումը:

Նման վիճակի կարելի է հանդիպել մեքենաշինական շատ ձեռնարկություններում: Թվենք դրանցից մի քանիսը՝ Երևանի «Տեխսարքավորում» արտադրական միավորումը նույն տիպի գայլիկոնի կապիչներ է թողարկում 1968 թվականից, Հայէլեկտրաապարատ ԱՄ կոճակային ապարատներ է արտադրում 1967 թվականից, «Հայքիմմեքենա» ԱՄ նույն մոդելի կենտրոնախույս պոմպեր և դրանց պահեստամասեր է թողարկում 1970—72 թվականներից:

Մեքենաշինության արտադրանքի կառուցվածքի կատարելագործման ուղին կոմպլեկտավորող շինվածքներից վերջնական արտադրանքին աստիճանաբար անցումն է՝ թողարկվող արտադրանքի անվանացանկի արմատական նորացմանը նպաստող կատարյալ կոնստրուկցիայի շինվածքների նոր սերնդի պատրաստման և արտադրանքի տեխնիկապես հնացած տեսակները արտադրությունից հանելու միջոցով:

Հայկական ՍՍՀ վիճակետկոմի տվյալներով, 1987 թ. ճյուղում առաջին անգամ ՍՍՀՄ-ում յուրացվել են մեքենաների մի շարք նոր մոդելներ: Հաստոցաշինության մեջ՝ գայլիկոնման հաստոցներ շպինդելի ավտոմատ ցիկլով (Երևանի հաստոցաշինական ԱՄ), ունիվերսալ ժապավենահղկիչ հաստոցներ վերջնական մշակման համար, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ սինխրոնային գեներատորներ («Հայէլեկտրամեքենա» ԱՄ), ճանապարհային վերելակային անջատիչներ (Հայէլեկտրաապարատ ԱՄ) և այլն: Դրա հետ մեկտեղ ձեռնարկություններում կան 20 տարուց ավելի թողարկվող շատ սարքավորումներ: Օրինակ, «Հայէլեկտրամեքենա» ԱՄ-ն արտադրում է այնպիսի շինվածքներ, որոնք յուրացվել են 1958—1965 թվականներին: Պարզ է, որ դրանք արտադրությունից անհապաղ հանման ենթակա են: Այդպիսի շինվածքներ կարելի է հանդիպել և մյուս ձեռնարկություններում: Հետևաբար, հանրապետության մեքենաշինության մեջ արտադրությունից հանվող արտադրատեսակների ցուցանիշը պետք է արագ աճի: Ընթացիկ հնգամյակում այն կհասնի մինչև 12—13 տոկոսի, տասնմեկերորդ հնգամյակի 2—3 տոկոսի դիմաց: Դա թույլ կտա զգալիորեն բարելավել ամբողջ արտադրանքի որակը: Այդ միջոցառումների իրականացման շնորհիվ իրացվող արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ համաշխարհային նմանօրինակների տեխնիկական մակարդակին և որակին համապատասխանող արտադրատեսակների տեսակարար կշիռը կհասնի 75—80 տոկոսի, տարեցտարի նորացվող արտադրանքինը՝ 13—14 տոկոսի, անցած XI հնգամյակի 3—4 տոկոսի դիմաց, միկրոպրոցեսներով հանդերձված արտադրանքինը՝ 30—35 տոկոսի: Արտադրանքի կազմի նորացումը և նոր ձեռնարկություններում արտադրանքի թողարկումը թույլ կտա ավելացնել վերջնական արտադրանքի տեսակարար կշիռը՝ 13 տոկոսից (1985 թ.) մինչև 45 տոկոս (1995 թ.):



Արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձր ցուցանիշների ձեռքբերման համար հանրապետության մեքենաշինության մեջ անհրաժեշտ է նաև ներդնել արտադրանքի տեխնիկական մակարդակի կառավարման կոմպլեքսային համակարգ, որը բաղկացած է ձեռքի կառավարման սարքավորման բազայի վրա ստեղծված համակարգից, ԹԾԿ ավտոնոմ միանպատակ հաստոցների և ԹԾԿ-ով ավտոնոմ բազմանպատակ հաստոցների համակարգերից ԹԾԿ-ով միանպատակ հաստոցների բազայի վրա ռոբոտացված համալիրներից, մշակող կենտրոնների հիման վրա ռոբոտացված կոմպլեքսներից:

Նշված միջոցառումների իրականացումը հեռանկարում թույլ կտա անցնել շինվածքների ավելի կատարյալ տեսակների թողարկմանը: Այսպես, լուսատեխնիկական սարքավորումների արտադրության մեջ նախատեսվում է ավելացված լուսատվությամբ և ծառայության ժամկետով լույսի աղբյուրների նոր տարբերակների յուրացումը: Ցածրավոլտ ապարատուրայի արտադրությունը կզարգանա կոմպլեքսային կայանքների ու կառավարման ապարատների յուրացման ուղղությամբ, կիրառելով միկրոէլեկտրոնիկայի դետալներ և հանգույցներ:

Նախատեսվում է ստեղծել հերմետիկ նոր տրանսֆորմատորներ, որոնց ներդրումը կապահովի սև մետաղների գլանվածքի ծախսման զգալի նվազում:

Գեներատորների արտադրության մեջ նախանշվում է արտադրատեսակների նոր սերիաների յուրացումը: Ընդ որում 7—10 տոկոսով կիջեցվի ընդհանուր նյութատարողությունը, իսկ էլեկտրատեխնիկական պողպատի և փաթույթի պղնձի ծախսը կնվազեցվի համապատասխանաբար 30 և 20 տոկոսով: Ասինխրոն բարձրարագ գեներատորների ներդրման բազայի վրա ճյուղում յուրացվում է սակավաչափ և սակավանյութատար շարժական նոր էլեկտրակայանների արտադրությունը: Այստեղ ընդհանուր նյութատարության իջեցումը կկազմի մոտ 25 տոկոս:

Վերելակային ապարատուրայի բնագավառում նոր տեխնիկայի զարգացումն ընթանում է դեֆիցիտային նյութերի կրճատման ուղիով կոմուտացիոն կոնտակտավորման տարրերի պատրաստմամբ, միաժամանակ բարձրացնելով շահագործման պարամետրերը: 1987 թվականին մեր հանրապետությունում, առաջին անգամ ՍՍՀՄ-ում, յուրացվել են նոր տիպի վերելակային անջատիչներ և կոճակային վերելակային կետեր: Հեռանկարում նախատեսվում է նաև վերելակային կանչման կոճակների և կառավարման կետերի փոխադրումը սենսորային սարքերի վրա:

Նոր տեխնիկան հետևողականորեն թափանցում է նաև էլեկտրաշարժիչների արտադրության մեջ, ուր աշխատանքներ են տարվում էներգետիկական ցուցանիշների բարելավման, ստատորների փաթույթի գալարի միջին երկարության կրճատման, մագնիսատարի պատրաստման անթափոն տեխնոլոգիայի կիրառման, իսկ ամբողջությամբ վերցրած շինվածքի հուսալիության և երկարակեցության բարելավման ուղղությամբ:

Հաստոցաշինության մեջ յուրացվում են խառատային նոր հաստոցներ, ինչպես նաև ավելի կատարյալ խառատային համալիրներ՝ օգտագործելով արդյունաբերական ռոբոտներ և մանիպուլյատորներ: Հերթի է դրվել թվային ինդիկացիայով շառավղային գայլիկոնման հաստոցների և ներկայումս թողարկվողների բազայի վրա ավտոմատ կառավարմամբ ավելի կատարյալ հաստոցների գամմայի արտադրության յուրացումը:

Մեր հանրապետության ռադիոէլեկտրոնային արդյունաբերության արտադրանքի աճը նպաստում է արտադրության էլեկտրոնացման ընդհանուր միութենական խնդիրների լուծմանը, որը իրականացվում է մի կողմից ժամանակակից տեխնոլոգիական, ավտոմատ պրոցեսների կառավարման համար անհրաժեշտ մեքենաների համակարգերի, բազմաֆունկցիոնալ հաստոցների թվածրագրային կառավարմամբ առանձին համակարգերի, իսկ մյուս կողմից՝ սարքավորումների զանազան տեսակների ավտոմատ շահագործման նպատակով՝ ճկունարտադրական, ռոբոտացված մոդուլների և ծրագրավորող ապարատների արտադրության միջոցով: Յուրացվում է նաև մետրաչափական բարձր հատկություններ ապահովող, տեխնոլոգիական պրոցեսների վերահսկման և կառավարման առանձնապես բարձր ճշտության կարգավորող և գրանցող սարքերի արտադրությունը: Մեքենաշինության զարգացման համակարգում կարևորագույն ուղղություն է հանդիսանում գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների օգտագործումը: Դա թելադրվում է սարքավորման հասակային կազմով (15 տարուց ավելի), որը դարձել է տեխնիկատնտեսական բարձր պարամետրերով վերջնական արտադրատեսակների յուրացման և սերիական թողարկման տեմպերի արագացումն արգելակող գործոն:

1985 թվականի տվյալներով մեքենաշինության հնացած սարքավորման (10 տարուց ավելի հասակով) տեսակարար կշիռը կազմում է մոտ 35 տոկոս: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է զգալիորեն բարձրացնել հիմնական արտադրական ֆոնդերի ակտիվ մասի դուրսգրման գործակիցը:

Հիմնական ֆոնդերի նորացման մյուս ուղղությունը սարքավորման մոդեռնացումն է, որի բաժինը հիմնական ֆոնդերի նորացման ընդհանուր արժեքի մեջ 1985 թվականի 1,5 տոկոսի դիմաց անհրաժեշտ է հաջորդ հինգ տարում բարձրացնել մինչև 7—8 տոկոսի: Այդ գործակցի բարձրացման անհրաժեշտությունը բխում է այն բանից, որ նորացման մասշտաբներից և հիմնական ֆոնդերի նորացումից ստացված տնտեսական արդյունքի ավելացումը որոշակի չափով կախված է մոդեռնացման ծավալից և դրա արդյունքից, որը 1987 թ. եղել է չափազանց ցածր և կազմել է էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ 44,4 հազար ռուբլի, հաստոցաշինական արդյունաբերության մեջ՝ 3,1, սարքաշինության մեջ՝ 8,5 հազար ռուբլի: Սարքավորման դուրսգրման գործակցի բարձրացման ուղին ֆիզիկապես մաշված և բարոյապես հնացած հաստոցները ԹԾԿ-ով հաստոցներով և մշակման կենտրոններով փոխարինելն է: Այդ հարցերի լուծումը կիրականացվի ինվեստիցիոն և կառուցվածքային քաղաքականության վերակառուցման, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների ներդրման արագացման ճանապարհով:

Կարևոր խնդիր է մեքենաշինության գիտական և արտադրական պոտենցիալի արագ մեծացումը: Այդ նպատակով գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման համար պետք է ուղղել զգալիորեն ավելի շատ կապիտալ ներդրումներ:

Կառուցվածքային տեղաշարժեր են տեղի ունենում հաստոցաշինական ձեռնարկությունների արտադրական պրոցեսում: ԹԾԿ-ով հաստոցների արտադրությունը մինչև 1990 թ. կաճի 2,3 անգամ, մշակման կենտրոններինը՝ 2,8 անգամ: Սակայն ռոտորային և ռոտորակոնվեյերային հոսքագծերը ներկայումս ակնհայտորեն քիչ են: Այդ հոսքագծերի տեսակարար կշիռը ավտոմատ հոսքագծերի ընդհանուր թվի մեջ 1987 թվականին կազմել է 1,28 տոկոս: Խիստ կարևորվում է դինամիկ, էներգետիկական և զանգվածագաբարիտային բարելավված բնութագրերով արդյունաբերական ռոբոտների ներդրումը: Դրա շնորհիվ աշխատանքի արտադրողականության մակարդակը 1990 թվականին կբարձրանա 1,5 անգամ, իսկ աշխատանքի արտադրողականության աճի հաշվին արտադրանքի հավելաճի բաժինը կկազմի 85 տոկոս: Ընդ որում որոշ ենթաճյուղերում (էլեկտրատեխնիկական արդյունաբերություն, նավթաքիմիական մեքենաշինություն) ապրանքային արտադրանքի ամբողջ աճը ապահովվում է աշխատանքի արտադրողականության հաշվին:

Քննության առնենք հանրապետության մեքենաշինության ևս մեկ պրոբլեմ: Հանրապետության մեքենաշինության արտադրանքը բնութագրվում է բարձր մետաղատարությամբ, որը բացատրվում է մետաղարտադրանքի ցածր որակով և թողարկվող շինվածքների կոնստրուկցիաների կատարելագործման ցածր տեմպերով: Ոչ տընտեսական նախապատրաստվածքների կիրառումը հանգեցնում է այն բանին, որ մետաղի թափոնները մեքենաշինության մեջ շատ մեծ են (մոտ 84 հազ. տոննա): Սև մետաղների օգտագործման գործակիցը (գլանվածք, դրանից պատրաստված շինվածքներ, չուգունից ու պողպատից ձուլվածքներ) մեքենաշինության և մետաղամշակման մեջ Հայկական ՍՍՀ-ում կազմում է 0,7՝ ՍՍՀՄ-ում 0,79-ի դիմաց:

Հանրապետության վիճպետկոմի տվյալներով 1987 թ. մի շարք մեքենաշինական ձեռնարկություններ չեն կատարել սև մետաղների գլանվածքի տնտեսման պլանը: Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանը այս ցուցանիշը կատարել է ընդամենը 48,5 տոկոսով, Երևանի հաստոցաշինական ԱՄ-ն՝ 79,7, «Էլեկտրակոնդենսատոր» ԱՄ՝ 73,9 տոկոսով և այլն: Բայց չէ որ նյութական ծախսերի տնտեսման պլանի գերակատարումը մետաղի օգտագործման գործակցի բարձրացման կարևորագույն ուղությունն է:

Մետաղների օգտագործման գործակիցը կախված է նաև ձուլվածքների պատրաստման եղանակից: Ձուլման արտադրության մեջ ճշգրիտ մեթոդներով է թողարկվում արտադրանքի 20 տոկոսը: Դրանց կիրառումը դարբնոցամամլիչային արտադրության մեջ չի անցնում 40 տոկոսից: Հիմնականում այս պատճառով մետաղի ծախսման կրճատման առաջադրանքները մի շարք ձեռնարկություններում չեն կատարվում: Ներկայումս իրականացվում են Չարենցավանի «Կենտրոնաձույլ» գործարանի տեխնիկական վերազինումն ու վերակառուցումն այն հաշվով, որպեսզի մինչև



1995 թվականը դրա հզորության աճը կազմի 25 հազար տոննա: Ընդ որում ձուլվածքների ամրության և հուսալիության բարձրացման, դրանց չափերը և մակերեսի որակը պատրաստի դետալների պարամետրերին առավելագույն մոտեցման նպատակով պետք է լայնորեն ներդնել ձուլման ճշգրիտ մեթոդները, ընդլայնել մոդիֆիկատորների կիրառման մասշտաբները, կազմակերպել թողարկվող նախապատրաստվածքների մշակումը անմիջականորեն ձուլման գործարաններում:

Մեքենաշինության մեջ մետաղի օգտագործման արդյունավետության բարձրացման հեռանկարային ուղղություններից է հաստոցներում ու մեքենաներում ձուլվածքների փոխարեն եռակցվող դետալների կիրառման մասշտաբների ընդլայնումը: Մինչև օրս մեր հանրապետությունում դրանք լայն կիրառում չեն ստացել: Այդ բացը վերացնելու նպատակով Չարենցավանի «Կենտրոնաձույլ» գործարանում կազմակերպվում է այդպիսի դետալների արտադրության արտադրամաս:

Հեռանկարում ձուլման արտադրությունը քանակական հարաբերակցությամբ ի վիճակի է ապահովել հանրապետության մեքենաշինության պահանջները: Ձուլման միջոցով ստացվող դետալների որակի ու տեխնիկական մակարդակի բարձրացման նպատակով այստեղ էլ նպատակահարմար է ընդլայնել նախապատրաստվածքների ստացման ճշգրիտ մեթոդների կիրառումը:

Հանրապետության հաստոցաշինական ձեռնարկությունների պահանջը ապահովելու համար անհրաժեշտ է վերակառուցել Ջրվեժի փոշու մետալուրգիայի փորձնական գործարանը, Չարենցավանի հաստոցաշինական ԱՄ-ը՝ կիրառելով դարբնոցամամլիչային սարքավորումների առաջադիմական տեսակները: Տեխնիկական վերազինման նպատակը 150—180 մմ տրամագծով դետալների թողարկումն է 1000 հատից ոչ պակաս տարեկան ծրագրով: Գործարանի կարողությունը կկազմի տարեկան 600—700 տոննա: Կարևոր նշանակություն ունի նաև տեխնիկական վերազինումը՝ Չարենցավանի գործիքաշինական գործարանում, մեխանիկական մշակման նվազագույն թողնվածքով նախապատրաստվածքների ստացման համար կիրառելով կոմպլեքսային, մեքենայացված և ավտոմատացված դարբնոցամամլիչային սարքավորումներ և տեխնոլոգիական պրոցեսներ: Դարբնոցադրոշմային արտադրությունը կհասնի տարեկան 12—15 հազար դրոշմի, որը հնարավորություն կտա ապահովել հանրապետության գործարանների պահանջը առանցքների, պատճենիչների ու լիսեռների տիպի դետալների համար բարձրորակ նախապատրաստվածքների նկատմամբ:

Հանրապետությունում մեքենաշինության համար սեփական հումքի բազայի ստեղծման նպատակով շատ կարևոր է ընդլայնել մետաղի փոխարինիչների կիրառման մասշտաբները: Կորպուսային դետալների համար նպատակահարմար է չուգունի ու պողպատի փոխարեն օգտագործել սինթետիկ գրանիտ, իսկ լիսեռների, բռնակների, ձողերի, միջադիրների, օղակների և նման տիպի դետալների համար՝ պլաստմասսաներ:

Այդ կապակցությամբ անհրաժեշտ է արագացնել սինթեգրանի արտադրության գործարանի շինարարությունը: Այն կորպուսային դետալներ կպատրաստի սինթետիկ գրանիտից, որի կիրառումը կտա սև մետաղների տնտեսում: Մետաղի տնտեսման, ձուլման-դարբնոցային արտադրության մեջ ավտոմատացման մակարդակի բարձրացման պրոբլեմների լուծման համար անհրաժեշտ է ներդնել մի շարք ավտոմատացված կոմպլեքսներ, համակարգեր, մեքենաներ ու սարքավորումներ: Դրանցից կարևորներն են կաղապարների ու ձողերի պատրաստման ժամանակ բարձրորակ խառնուրդների ստացման, ձուլվածքների մաքրման, ձուլման ու լցման ավտոմատացված սարքավորումներն ու տեխնոլոգիան, նախնական կաղապարման ու օժանդակ նյութերի, հրակայուն կաղապարների արտադրության ավտոմատացված կոմպլեքսները, ավտոմատ մանիպուլյատորների, արդյունաբերական ռոբոտների կիրառմամբ ձուլվածքների վերջնական մշակման սարքավորումների կոմպլեքսները:

Կարևոր է նաև տեխնիկական պրոցեսների կառավարման ավտոմատ համակարգով ձուլման սարքավորումների ու հոսքագծերի բարձրարտադրողական կոմպլեքսների ներդրումը:

Մեծ նշանակություն ունի նաև ձուլման արտադրության համար տեխնոլոգիական սարքավորումների արտադրության կազմակերպումը (մոդելակաղապարային հարմարանքներ, ձողավոր արկղեր և մամլակաղապարներ): Սարքավորումների կենտրոնացված արտադրությունը մինչև օրս չի կազմակերպվել ոչ հաստոցաշինական ձեռնարկություններում, ոչ էլ մյուս ճյուղերում, որը զգալի դժվարություններ է ստեղծում և արգելակում է առաջադիմական տեխնոլոգիաների ներդրումը, արտադրական պրո-

ցեսների ավտոմատացումը և ձուլվածքների որակի բարձրացումը: Տեխնոլոգիական սարքավորումների զարգացման հարցերի լուծումը պահանջում է տեխնիկական վերազինում՝ ձուլման-դարբնոցային արտադրության հիմնական ֆոնդերի ակտիվ մասի արմատական նորացման նպատակով: Այս խնդիրը պայմանավորված է նրանով, որ հնացած (15 տարուց ավելի), մաշվածության բարձր տոկոսով (30 տոկոս) դարբնոցամամլիչային մեքենաների տեսակարար մեծ կշիռը հնարավորություն չի տալիս ապահովել դետալների պատրաստման անհրաժեշտ ճշգրտությունը: Ֆոնդերի նորացման ժամանակ նախատեսված է ավելի լայնորեն ներդնել բարձրարտադրողական ռոբոտացված սարքավորումներ, անմարդ տեխնոլոգիաներ: Ձուլման-դարբնոցային արտադրության զարգացման համակարգում արդիական է մեքենաշինության տարբեր ենթաճյուղերի զարգացման ճյուղային և տարածքային պլանավորման ռացիոնալ զուգակցումը՝ ինչպես առանձին դետալների ու հանգույցների պատրաստման, այնպես էլ միջճյուղային նշանակության արտադրանքի արտադրության ու օգտագործման ուղղությամբ կոոպերացված կապերի ուժեղացման համար: Այս կապակցությամբ կարևոր է գործող առանձին մասնաճյուղերի վերածելը փոքր և միջին չափի ինքնուրույն ձեռնարկությունների, որոնք ընդունակ կլինեն բավարարել ոչ միայն գլխավորող գործարանի, այլև որոշ դետալների ու տեխնոլոգիական պրոցեսների գծով՝ նաև ամբողջ ռեգիոնի կարիքները:

Մեքենաշինության զարգացման հիմնական ուղիների և ձևերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ճյուղի տեխնիկատնտեսական աճը, դրա որակն ու տեմպերը կախված են գործոնների բարդ միացությունից՝ նոր առաջադիմական սարքավորումների ստեղծումից, դրանց ռեսուրսային պոտենցիալի օգտագործման աստիճանի բարձրացումից, որոնք ապահովում են ձեռնարկությունների տեխնիկատնտեսական ու սոցիալական զարգացման համար միջոցների անհրաժեշտ ծավալների ձևավորումը:

Ժամանակակից բարդ տեխնիկայի ստեղծման ու գործողության պայմաններում նման գործոնների թիվն անընդհատ աճում է, իսկ տեխնիկայի շահագործումը ձեռք է բերում բազմակողմանի բնույթ: Ուստի յուրաքանչյուր գործոնի ավանդը տնտեսական աճի մեջ չափվում է տարբեր մեթոդներով և արդյունքներով: Այստեղ հատկապես կարևորվում է նոր տեխնիկայի ներդրման նպատակահարմար ընտրության նշանակությունը՝ արտադրության գործոնների կոմպլեքսային օգտագործման և գործարկման հիման վրա: Այս խնդիրների լուծումն առանձնապես հրատապ է դառնում տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման ներդրման պայմաններում: Հետևաբար, շատ կարևոր են ամբողջ տնտհաշվարկային համակարգի զարգացումը, հաշվի առնելով լրիվ տնտհաշվարկի սկզբունքների երկարաժամկետ կողմնորոշումը, որը նպաստում է սպառողի վճարունակ պահանջարկի բավարարմանը, բոլոր տեսակի ռեսուրսների վճարովիությունը, արտադրության տեխնիկական վերազինման ու վերակառուցման ծախսերի ինքնածախսածածկումը, շահութաբերության նորմատիվային մակարդակի ձեռքբերումը:

Լրիվ տնտեսական հաշվարկի կիրառման փորձը ցույց է տալիս, որ մեքենաշինության ձեռնարկությունների համար ստեղծվել են ֆինանսական ապահովության զանազան աստիճաններ, որը մեծապես պայմանավորված է տնտհաշվարկի երկու մոդելներից մեկի ընտրությամբ:

Ելնելով օգտագործվող շահույթի ծավալից, աշխատավարձի ֆոնդի ձևավորման և լրիվ տնտհաշվարկի փոխադրված ձեռնարկությունների ամորտիզացիոն ֆոնդի օգտագործումից, նրանք կարող են ընտրել լրիվ տնտհաշվարկի երկու մոդելներից մեկը: Առաջին մոդելի համաձայն ինքնուրույն կերպով ձևավորվում է աշխատավարձի ֆոնդը, ամորտիզացիոն ֆոնդի և շահույթի հաշվին ստեղծվող տնտեսական խթանման ֆոնդի օգտագործումը: Ըստ երկրորդ մոդելի նման բաշխումը նախատեսված չէ, այլ կատարվում է միայն արտադրանքի իրացումից հասույթի վերաբաշխում, հանելով նյութական ծախսերը, իսկ աշխատանքի վարձատրության ֆոնդը ձևավորվում է բյուջետային վճարումներից, արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացման ֆոնդի ու սոցիալական զարգացման ֆոնդի ստեղծումից հետո: Առաջին մոդելի առաջնությունը պայմանավորված է աշխատավարձի ֆոնդի ստեղծման կայունությամբ:

Այդ պատճառով ձեռնարկությունների մեծ մասը նախընտրում են հենց այդ մոդելը, քանի որ այն թույլ է տալիս հաշվի առնել շահույթի բացարձակ մեծությունը, շահույթի բաժինը առանձին շինվածքների մեծածախ գների մեջ, շահութաբերության մակարդակը: Այս կարևորագույն դրույթները հաշվի առնելը կնպաստի լրիվ տնտհաշվարկի մեխանիզմի ճիշտ կիրառմանը, պետական ձեռնարկության օրենքի համաձայն նրանց ընձեռված իրավունքների իրական ընդլայնմանն ու գործադրմանը:

# ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Մ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ քաղաքականության բարձրագույն նպատակը ժողովրդի նյութական և կուլտուրական կյանքի մակարդակի անշեղ վերելքն է: Մեր երկրում իրականացվող վերակառուցման գլխավոր իմաստը ժողովրդի բարեկեցության բարձրացումն է, սոցիալական ոլորտի արագացված զարգացումը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում, ուժեղ սոցիալական քաղաքականությունը գլխավոր առաջնություններից մեկն է կուսակցության գործունեության մեջ: Ահա թե ինչու տասներեքերորդ հնգամյա պլանը մշակելիս պետք է անկյունաքարը դարձնել տնտեսական զարգացման սոցիալական ուղղվածությունը:

ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած սոցիալական ծրագրի իրականացման գործում կարևորագույն դեր է պատկանում պետական բյուջեին: Հայտնի է, որ սովետական պետությունը բյուջեում կենտրոնացնում է երկրի ազգային եկամտի մի մասը և այն կենտրոնացված ձևով ուղղում առաջնահերթ խնդիրների իրականացմանը՝ ժողովրդական տնտեսության զարգացմանը, աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացմանը, երկրի պաշտպանությանը, պետական կառավարման մարմինների պահպանմանը, պետական նյութական և ֆինանսական ռեսուրսների ստեղծմանը:

Երկրի պետբյուջեում, ժողովրդական տնտեսության ֆինանսավորումից հետո մեծ տեսակարար կշիռ ունի սոցիալ-կուլտուրական ոլորտը: 1988 թ. բյուջեի ծախսերը նախատեսված են 443,6 միլիարդ ռուբլի: Դրանից 241 միլիարդը (54,3 տոկոսը) հատկացվում է ժողովրդական տնտեսության ֆինանսավորմանը: Սոցիալ-կուլտուրական միջոցառումների և գիտության բաժինը կազմում է 153,6 միլիարդ ռուբլի (34,6 տոկոս), պաշտպանությանը՝ 20,2 մլրդ ռուբլի (4,6 տոկոս), կառավարմանը՝ 3 մլրդ (0,7 տոկոս):

Առաջիկայում էական տեղաշարժեր կկատարվեն պետական բյուջեի կառուցվածքում: Ձեռնարկությունները (միավորումները) լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելուն զուգընթաց ժողովրդական տնտեսության ֆինանսավորման զգալի մասը կկատարվի հենց իրենց՝ ձեռնարկությունների հաշվին: Լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականության հետևողական իրականացման, սպառազինությունների կրճատման և միջազգային լարվածության թուլացման հետ մեկտեղ էապես կկրճատվեն երկրի պաշտպանության ծախսերը, իսկ էկոնոմիկայի կառավարման վերակառուցումը կհանգեցնի կառավարչական ծախսերի կրճատմանը: Դա հնարավորություն կընձեռի ավելի շատ միջոցներ կենտրոնացված կարգով, պետբյուջեի միջոցով ուղղել սոցիալական նպատակներին, ժողովրդի բարեկեցության բարձրացմանը: Բյուջեի գերակշիռ տեղաշարժը դեպի սոցիալական ոլորտը հատկապես բնորոշ է միութենական հանրապետությունների բյուջեներին: Այսպես, Հայկական ՍՍՀ 1960—1988 թթ. պետական բյուջեի ծախսերը աճել են 201,9 տոկոսով, այդ թվում՝ ժողովրդական տնտեսության հատկացումները՝ 183,6 տոկոսով, սոցիալ-կուլտուրական միջոցառումներինը և գիտությանը՝ 258,3 տոկոսով: Եթե 1960 թ. ՀՍՍՀ պետական բյուջեում ժողովրդական տնտեսության հատկացումները կազմում էին 53,7 տոկոս,

ԱՎԵՏԻՍՅԱՆ ՄԱՐԻՆԵ ՇԱՀԵՆԻ— ՀՍՍՀ ֆինանսների մինիստրության տնտեսագետ:

ապա 1988 թ. դրանք իջել են մինչև 48,8 տոկոսի։ Այդ նույն ժամանակամիջոցում սոցիալական ծախսերի բաժինը 39,5 տոկոսից բարձրացել է մինչև 50,5-ի։

Սոցիալական առաջնահերթ խնդիրներից մեկը ժողովրդին բնակարանով ապահովելն է։ Չէ որ բնակարանային պայմանների բարելավմամբ է մեծապես պայմանավորված անհատի համակողմանի զարգացման, պահանջմունքների բավարարման, ազատ ժամանակի ավելացման, ինչպես նաև ընտանիքի ամրապնդման, երեխաների դաստիարակության հնարավորությունների ընդլայնումը։

Ինչպես նշել է Ֆ. Էնգելսը, բնակարանային պահանջմունքների բավարարման աստիճանը «կարող է այն բանի չափանիշը ծառայել, թե ինչպես են բավարարվում մնացած բոլոր պահանջմունքները» (Маркс К., Энгельс Ф. соч., т. 2, с. 302)։

Կուսակցությունը խնդիր է դրել մինչև 2000 թ. գործնականում յուրաքանչյուր սովետական ընտանիքի ապահովել բնակարանով։ Մեր երկրում բնակտարածության չորս հինգերորդ մասը կառուցվում է պետական բյուջեի միջոցների հաշվին։ Ընթացիկ հնգամյակի անցած երկու և կես տարիներին կառուցվել է 4,4 մլն բնակարան, որը հնարավորություն է տվել բարելավել 22 մլն մարդու բնակարանային պայմանները։ 1987 թ. սկզբին երկրի յուրաքանչյուր բնակչին միջին հաշվով ընկնում էր 14,9 քառ. մետր ընդհանուր բնակտարածություն։ Այդ թվում ՀՍՍՀ-ում՝ 13,7, Էստոնական ՍՍՀ-ում՝ 20,3, Վրացական ՍՍՀ-ում՝ 17,6 քառ. մետր։ Բնակտարածության ռացիոնալ նորման 19—20 քառ. մետր է։

Չնայած բնակարանով ապահովվածության ցածր մակարդակին, մեր հանրապետությունում ոչ միայն չի անում, այլ, ընդհակառակը, սիստեմատիկաբար ձախողվում է բնակարանային շինարարության պլանը, չեն իրացվում այդ նպատակով պետբյուջեի հատկացումները։ Ավելին, վերջին տասնհինգ տարում մեր հանրապետությունում անհիմն կերպով նվազել են բնակարանային շինարարության տեմպերը։ Եթե 1970 թ. ՀՍՍՀ-ում բնակչության հազար շնչի հաշվով կառուցվել է 9,6 բնակարան, ապա 1980 թ.՝ 4,5, 1986 թ.՝ 6 բնակարան, այսինքն՝ 1970 թ. մակարդակի 62 տոկոսը։

Համամիութենական XIX կուսակցական կոնֆերանսը, վերլուծելով բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության ծրագրի իրականացման ուղղությամբ կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների կատարած աշխատանքը, պահանջեց միջոցներ ձեռնարկել երկրի առանձին շրջաններում բնակարաններով, հիվանդանոցներով, դպրոցներով, մանկապարտեզներով և սոցիալական նշանակության այլ օբյեկտներով բնակչության ապահովվածության անհամամասնությունները հետևողականորեն վերացնելու համար։

Այդ նպատակով կապիտալ ներդրումներում իրականացվում են կառուցվածքային տեղաշարժեր՝ բարձրացնելու համար սոցիալական ոլորտին ուղղված միջոցների տեսակարար կշիռը, ապահովելու նրա զարգացման արագ տեմպերը։ Միայն 1988 թ. ֆինանսավորման բոլոր աղբյուրներով բնակարանային շինարարության նպատակով հատկացված է 33,9 մլրդ ռուբ., որը 1,2 մլրդ ռուբ. ավելի է, քան 1987 թ.։ Ծախսերի 70 տոկոսը ծածկվում է բյուջեի հաշվին։

Բնակարանային պրոբլեմի լուծման գործում պակաս կարևոր դեր չունեն կոոպերատիվ և անհատական շինարարությունը, բնակարանների շինարարության գործում աշխատավորական կոլեկտիվների կողմից շինարարական կազմակերպություններին ցույց տրվող օգնության ընդլայնումը, երիտասարդական բնակարանային համալիրների կառուցման ծավալումը։

Տնտհաշվարկային ձեռնարկությունների ու կազմակերպությունների ավելի ու ավելի մեծ չափի միջոցներ պետք է հատկացվեն բնակարանային շինարարությանը։ Լրիվ տնտհաշվարկի պայմաններում աշխատող կոլեկտիվների որոշմամբ այդ նպատակին կարող են ուղղվել սոցիալ-կուլտուրական և բնակարանային շինարարության ֆոնդին հատկացված միջոցների 50 և ավելի տոկոսը։

ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած տեմպերը գերազանցվում են, որը և հնարավորություն է ընձեռել ընթացիկ հնգամյակի համար սահմանել նոր, առավել բարձր առաջադրանք, այն է՝ հանձնել 630 մլն քառ. մետր բնակարան, որը 12 տոկոսով ավելի է նախապես սահմանվածից։

Ընդհանուր առմամբ, մինչև 2000 թ. բնակչությունը պետք է ստանա 40 մլն առանձին բնակարան կամ տուն՝ ավելի քան 2 մլրդ քառ. մետր բարեկարգ բնակտարածություն։ Դա այն քանակության կեսն է, ինչ որ այժմ ունի երկիրը։ Բնակարաններ



ների գերակշիռ մասը կառուցվում է պետական բյուջեի հաշվին և արտոնյալ պայմաններով տրվում աշխատավորներին։

Բյուջետային զգալի ծախսեր են հատկացվում բնակֆոնդի պահպանման դոտացիայի վճարմանը։ Մեկ քառ. մետր բնակելի մակերեսի պահպանման համար պետությունը ծախսում է 6 ռ. 82 կոպ., մինչդեռ բնակվարձը մեկ քառ մետրի համար նախատեսված է 1 ռուբ. 61 կոպ.։ Ի դեպ, բնակարանի վարձի այս չափը սահմանված է 1924 թ. և այդ ժամկետից ի վեր չի փոխվել։

Ներկայումս յուրաքանչյուր ընտանիք բնակարանի և կոմունալ ծառայությունների համար ծախսում է իր դրամական եկամուտների միայն 2,7 տոկոսը։ Այսուհետև ևս բնակարանի վարձը մեր երկրում կլինի աշխարհում ամենացածրը։

Կուսակցության սոցիալական ծրագրում առանձնահատուկ տեղ ունի ժողովրդական կրթությունը։ ՍՍՀՄ-ում ուսուցումը ձրի է։ Մարդկանց կրթական և կուլտուրական մակարդակի բարձրացումը նպաստում է սոցիալական առավել լրիվ հավասարության հաստատմանը, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև առկա էական տարբերությունների վերացմանը, կառավարման գործում աշխատավորների մասնակցության ընդլայնմանը։ Սովետական մարդկանց ինտելեկտուալ մակարդակի բարձրացումը երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կարևորագույն գործոնն է։ Տնտեսագետների հաշվարկներով ժողովրդական կրթության ոլորտում ներդրված յուրաքանչյուր լրացուցիչ մեկ ռուբլին ապահովում է ազգային եկամտի 3—4 ռուբլու լրացուցիչ հավելում։ Ազգային եկամտի տարեկան աճի մեկ քառորդը ստացվում է բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների կրթական մակարդակի բարձրացման հաշվին։

Ելնելով հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացի և անհատի համակողմանի զարգացման պահանջմունքներից, ազգային եկամտի պատկառելի մասը նպատակաուղղվում է կրթության, մշակույթի և գիտության զարգացմանը։ Ընդ որում, կրթության և գիտության նպատակին հատկացվող ծախսերն աճում են ավելի արագ տեմպերով, քան ազգային եկամուտը։ Այսպես, եթե 1960—1986 թթ. ազգային եկամուտն ավելացել է 4 անգամ, ապա կրթության և գիտության ծախսերը՝ 4,8 անգամ։ Սովետական պետությունը հանրակրթական դպրոցի մեկ սովորողի հաշվով տարեկան ծախսում է 240 ռուբ., միջնակարգ մասնագիտական հաստատությունում՝ 780 ռուբ., բուհերի ամեն մի ուսանողի համար՝ 1200 ռուբլի։ Ընդ որում, հաշվի առնելով ժողովրդական կրթության սոցիալական առանձնահատուկ նշանակությունը, այդ նպատակով պետական բյուջեի ծախսերն աճել են առաջանցիկ տեմպերով։ Այսպես օրինակ, Հայկական ՍՍՀ պետական բյուջեի ընդհանուր ծախսերը 1970—1988 թթ. ավելացել են 202, իսկ կրթության, գիտության և մշակույթի ծախսերը՝ 250 տոկոսով։ Այս միտումը ոչ միայն պահպանվում, այլև նոր թափով ծավալվում է։

Ընթացիկ տարում կրթության, գիտության և մշակույթի ծախսերը կազմում են ՍՍՀՄ պետբյուջեի 11,2 տոկոսը (61,3 մլրդ ռուբ.), որը ավելի է նախորդ տարվանից։ Բացի այդ, տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատող ձեռնարկությունները այդ նպատակին հատկացնում են ևս 2,8 մլրդ ռուբլի։

Բյուջեում անհրաժեշտ ներդրումներ են նախատեսվում հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի, բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների ամբողջ համակարգի ռեֆորմի իրականացման նպատակով։ Դրա հետ մեկտեղ, ցավոք, վերջին տասնամյակներին, ինչպես երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում նվազել են դպրոցական շինարարության տեմպերը։ Եթե 1975 թ. երկրում կառուցվել է 3206 դպրոց, ապա 1986 թ.՝ 1627. ՀՍՍՀ-ում՝ 1975 թ.՝ 73 դպրոց, 1986 թ.՝ միայն 29։ Մեզ մոտ հատկապես անմխիթարական է նախադպրոցական հիմնարկներին հատկացված միջոցների իրացման վիճակը։ Դրա հետևանքով հանրապետությունը նախադպրոցական հիմնարկներով երեխաների ապահովվածության ցուցանիշով ևս խիստ հետ է մնում միջին միութենական մակարդակից։ Այսպես, եթե երկրում համապատասխան հասակի երեխաների 57 տոկոսն է հաճախում մսուր կամ մանկապարտեզ, ապա մեզ մոտ՝ միայն 39 տոկոսը։

Կուսակցության սոցիալական քաղաքականության կարևորագույն ուղղություններից մեկը սովետական մարդկանց առողջության պահպանումն է, նրանց ակտիվ կյանքի տևողության ավելացումը։ Ժողովրդի առողջության ցուցանիշներով կարելի է դատել այս կամ այն հասարակության առաջադիմության մասին։ Մեր երկրում գործնականում ապահովված է բնակչության անվճար բժշկական սպասարկումը։։ Անկախ մարդկանց սոցիալական դրությունից և նյութական ապահովությունից, բոլոր քաղա-

քացիների համար ստեղծված են բուժման համար հավասար պայմաններ: Սակայն առողջապահության ոլորտում առկա են լուրջ թերություններ: Երկրում առողջապահությունը հիմնականում զարգացել է էքստենսիվ կերպով, «լայնակիորեն»: Ցածր է բուժօգնության նկատմամբ բնակչության պահանջմունքների բավարարման մակարդակը: Շատ շրջաններում ամբուլատոր ապահովվածության աստիճանը զիջում է նորմատիվայինին, բժիշկների մոտ հերթեր են նկատվում, հիվանդասենյակները գերծանրաբեռնված են, չեն բավականացնում դեղորայքի շատ տեսակներ:

Բժշկական սպասարկման գործը հատկապես անբարեհաջող է մեր հանրապետությունում: Հիվանդանոցային մահճակալներով ապահովվածությամբ ՀՍՍՀ-ն ամենավերջին տեղում է երկրում: ՍՍՀՄ-ում 10 հազար բնակչի հաշվով հիվանդանոցային մահճակալների թիվը 130,1 է, այդ թվում՝ Լատվիայում՝ 140,5, ՌՍՖՍՀ-ում՝ 135,2, Ղազախստանում՝ 133,3, իսկ Հայաստանում՝ միայն 86,2: Առավել վատ է մեր հանրապետության վիճակը մանկական հիվանդատեղերի հարցում: 10 հազար երեխայի հաշվով երկիրն ունի միջին հաշվով 86 հիվանդանոցային մահճակալ, այդ թվում Ղազախստանը՝ 94, Վրաստանը՝ 66, իսկ Հայաստանը՝ 44,8:

ՍՍՀՄ-ում ազգային եկամտի համեմատաբար փոքր մասը՝ ընդամենը 5 տոկոսն է հատկացվում առողջապահության կարիքներին, այն դեպքում, երբ զարգացած երկրներում այդ նպատակով ծախսվում է ազգային եկամտի 8—11 տոկոսը: Այդ իսկ պատճառով մեզ մոտ ֆինանսական միջոցները չէին բավականացնում հիվանդանոցներն ու պոլիկլինիկաները բժշկական արդի սարքավորումներով հագեցնելու համար, երկար ժամանակ չեն վերանայվում սննդով և դեղորայքով ապահովելու նորմաները:

ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց ամենակարճ ժամկետներում և ամենուրեք բավարարել բուժպրոֆիլակտիկ օգնության և դեղորայքի նկատմամբ բնակչության պահանջմունքները, նոր ձևով դնել և լուծել առողջապահության նյութատեխնիկական բազայի, գիտության և կադրերի պրոբլեմները:

Ընթացիկ հնգամյակում և մինչև 2000 թվականը նախատեսված է բուժպրոֆիլակտիկ հիմնարկների ցանցը ընդլայնել բազմապրոֆիլ և մասնագիտացված հիվանդանոցների, պոլիկլինիկաների և բուժդիագնոստիկ կենտրոնների ստեղծման հաշվին: Մեծ ուշադրություն կնվիրվի շրջանային կենտրոնական հիվանդանոցների ու ամբուլատորիաների կառուցմանը, գյուղական բնակչության բուժսպասարկման բարելավմանը: Առաջանցիկ տեմպերով կընդլայնվի մանկական հիվանդանոցների, պոլիկլինիկաների և ծննդատների ցանցը: Եվ միանգամայն օրինաչափ է, որ պետբյուջեում առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի զարգացման համար 1988 թ. հատկացված են 13,4 տոկոսով ավելի միջոցներ:

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունել են կարևոր որոշումներ, որոնք նախատեսում են առողջապահության օբյեկտների նյութատեխնիկական բազայի հետագա կատարելագործում, բժշկական բարձր արդյունավետ սարքավորումներով դրանց հագեցման նպատակով միջոցների ավելացում, հիվանդանոցներում սննդի և դեղորայքի նորմաների բարձրացում և շատ այլ էական միջոցառումներ: Բնակչության բուժսպասարկման բարելավման կարևոր սոցիալական գործոն է 7 միլիոն բժիշկների և առողջապահության ոլորտի մյուս աշխատողների աշխատավարձի բարձրացումը: Միջին հաշվով այն կավելանա մեկ երրորդով: Նոր աշխատավարձը ներդրվում է աստիճանաբար: Այն սկսվել է 1986 թ. և կավարտվի 1992 թ.: Այդ նպատակով պետբյուջեով նախատեսվում են անհրաժեշտ միջոցներ: Հաջորդ տասներեքերորդ հնգամյակում 2,5 անգամ կաճի առողջապահության ֆինանսավորումը:

Մյուս կարևոր պրոբլեմը սովետական մարդկանց սոցիալական ապահովությունն է: Սովետական պետության՝ Վ. Ի. Լենինի ստորագրած ամենաառաջին ակտերից մեկը սոցիալական ապահովության մարմինների ստեղծման մասին դեկրետն էր: ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ հարկ է պատշաճ հոգատարություն ցուցաբերել ավագ սերնդի՝ պատերազմի և աշխատանքի վետերանների նկատմամբ:

ՍՍՀՄ քաղաքացիներին սոցիալական օգնության հիմնական ձևերից՝ ժամանակավոր անաշխատունակության նպաստներից և ըստ հասակի ու հաշմանդամության թոշակներից բացի, պետությունը մեծ ծավալի օգնություն է ցույց տալիս կանանց ու մայրերին, նրանց վճարելով հղիության, ծննդի, երեխաների խնամքի նպաստներ: Նյութական ապահովություն են ստանում բազմազավակ և միայնակ մայրերը:

Տարեցտարի պետական բյուջեում աճում է սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության նպատակով հատկացվող միջոցների տեսակարար



կշիռը: Սակայն, թոշակների մասին գործող օրենքը, որն ընդունվել է ավելի քան 30 տարի առաջ, ունի մի շարք էական թերություններ և այլևս չի համապատասխանում արդի պայմաններին, երկրի տնտեսական զարգացման մակարդակին: Այդ օրենքը վերանայման կարիք է զգում: Ինչպես հայտնի է, արդեն մշակվում է նոր օրենքի նախագիծը և մինչև տարեվերջ այն կներկայացվի համաժողովրդական քննարկման: Անկասկած, կնախատեսվի թոշակների զգալի բարձրացում՝ հիմնված սոցիալական արդարության վրա, կվերացվի թոշակավորման համահարթումը և յուրաքանչյուր աշխատողի թոշակի չափը կպայմանավորվի նրա կոնկրետ աշխատանքային ներդրմամբ:

Մեր կարծիքով, լիովին հիմնավորված են այն առաջարկները, որ թոշակները հաշվարկվեն հինգ տարվա աշխատավարձից, այլ ոչ թե վերջին մեկ տարվա՝ ինչպես դա կատարվում է այժմ: Անհրաժեշտ է ավելի շատ հաշվի առնել և գնահատել երկարամյա անբասիր աշխատանքի ստաժը, լիովին հասունացել են կոլտնտեսականների և պետական ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատողների թոշակավորման տարբերությունների վերացման պայմանները:

Սոցիալական ոլորտի զարգացման համար պետական բյուջեից կատարվող վիթխարի միջոցների հատկացումը պահանջում է բոլոր նրանց բարձր պատասխանատվությունը, ովքեր անմիջականորեն առնչվում են բնակչության սպասարկմանը: Ռեսուրսները պետք է ոչ թե պարզապես իրացվեն, այլ օգտագործվեն իրենց նպատակին, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար առավելագույն արդյունքով: Այդ խնդրի լուծմանը մեծապես կնպաստեն ֆինանսական մեխանիզմի վերակառուցումը և տնտեսված միջոցների օգտագործման հարցում բյուջետային հիմնարկություններին և կազմակերպություններին լայն իրավունքներ ընձեռելը:

Ներկայումս բյուջետային կազմակերպություններին իրավունք է վերապահված կատարված հատկացումներից ունեցած խնայողությունները օգտագործել իրենց սոցիալական կարիքների համար: Բայց դա տվյալ կազմակերպության գործունեության ցուցանիշների կատարման պայմանով:

Խնայված միջոցները կարող են օգտագործվել պարգևատրումների, հավելումների վճարման, նյութական օգնության համար, կոլեկտիվի անդամների առողջության պահպանման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման նպատակով: Տնտեսված միջոցները կարելի է հատկացնել նաև հասարակական սննդի արժեքի էժանացման, աշխատակիցների և նրանց ընտանիքների անդամների հանգստի կազմակերպման, բնակարանների և սոցիալական այլ կարիքների համար փայատիրական մասնակցության նպատակով: Խնայված միջոցների օգտագործման մյուս ոլորտը կարելի է համարել հիմնարկության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, շենքերի ու կառուցվածքների պահպանման և հիմնական նորոգման, շրջակայքի բարեկարգման ծախսերը:

Մեր կարծիքով, բյուջետային կազմակերպություններում տնտեսված միջոցների հաշվին կարելի է ստեղծել հետևյալ ֆոնդերը. ա) նյութական խրախուսման ֆոնդ, բ) գիտատեխնիկական զարգացման ֆոնդ, գ) սոցիալական զարգացման ֆոնդ: Դրանց ստեղծումը կուժեղացնի կոլեկտիվների նյութական շահագրգռվածությունը՝ սոցիալական կարիքների համար պետության կողմից հատկացվող ֆինանսական միջոցների խնայողաբար և արդյունավետ օգտագործման համար:

Այսպիսով, կուսակցության սոցիալական քաղաքականությունն ուղղված է բնակչության բարեկեցության անշեղ բարձրացմանը: Ի տարբերություն սոցիալական ոլորտի զարգացման համար միջոցներ հատկացնելու անցյալում կիրառված «մնացորդային սկզբունքի», ավելացված են հատկացումները բնակարանային շինարարության և առողջության պահպանման, ժողովրդական կրթության զարգացման և մշակույթի նյութական բազայի ամրապնդման, սոցիալական այլ նպատակների համար: XIX կուսկոնֆերանսում նշվեց, որ Հայկական ՍՍՀ-ն սոցիալական բնագավառի զարգացման ուղղություններով հետ է մնում միութենական միջին ցուցանիշներից: Ուստի պետք է առանձնակի ուշադրություն դարձնել այդ բնագավառի վրա՝ մոբիլիզացնել բոլոր նյութական և ֆինանսական ռեսուրսները, լրիվ և արդյունավետ օգտագործել այդ նպատակի համար հատկացված ինչպես պետական բյուջեի, այնպես էլ սոցիալիստական տնտեսությունների միջոցները այն հաշվով, որ կարճ ժամանակահատվածում հանրապետությունը հաղթահարի սոցիալական ոլորտի հետ մնալը:

# ԿԱՊԱԼԸ ԻՆՔՆԱՀԱՍՏԱՏՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Ն. ՄՈՎՍԻՍՅԱՆ

ԸՆԹԱՑԻԿ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ երկրի ագրոարդյունաբերական համակար-
գում պետք է լուծվեն մասշտաբային, իրենց բնույթով սկզբունքային նոր
խնդիրներ: Գյուղատնտեսության մեջ համախառն արտադրանքի միջին տարեկան ծա-
վալը պետք է աճի 14—16 տոկոսով: Դրա համար անհրաժեշտ է արտադրության մեջ
հետևողականորեն կիրառել ինտենսիվ տեխնոլոգիաներ, տնտեսավարման առաջա-
դիմական եղանակներ, ավելի նպատակային ու արդյունավետ օգտագործել նյութական
ռեսուրսները: Խոսքը առաջին հերթին վերաբերում է կոլեկտիվ ու պետական տնտե-
սությունններում աշխատանքի վերակառուցմանը, որի կարևորագույն գործոնը տնտե-
սավարման նոր եղանակների՝ տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի արմատավորումն է:
Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի ար-
մատավորման և ընդհանրապես պարենային ծրագրի իրականացման ասպարեզում
ապահովվում է կուսակցական պատշաճ ղեկավարումը, այնտեղ միշտ էլ հեշտությամբ
են հաղթահարվում դժվարությունները, և վերջնական արդյունքն էլ, բնականաբար,
մեծ է լինում: Այս առումով ուսանելի շատ բան կա Նաիրիի շրջանում:

Կուսշրջկոմը, ինչպես նաև տնտեսությունների սկզբնական կազմակերպություն-
ները իրենց նիստերում պարբերաբար քննարկում են կապալային աշխատանքի կազ-
մակերպմանն ու բարելավմանը վերաբերող հարցեր, նպաստում այդ առաջավոր եղա-
նակի արմատավորմանը: Այսպես, շրջկոմի բյուրոյի ընթացիկ տարվա փետրվարի
29-ի նիստում գործարար մթնոլորտում քննարկվեց կապալի արմատավորման հար-
ցը, որոշվեց զարկ տալ հատկապես այդ առաջավոր եղանակով աշխատող օղակային
և անհատական ստորաբաժանումների կազմավորմանը, նկատի առնել այն պարզ
ճշմարտությունը, որ կապալն առանց ներտնտեսային հաշվարկի միշտ էլ կկրի ձևա-
կան բնույթ: Բյուրոն գտավ, որ ժամանակն է արմատավորել նաև վարձակալական
կապալը՝ հողը մշակության տրամադրել երկարատև ժամկետով: Դա ավելի կամրա-
պնդի մարդկանց, հատկապես արտագնա աշխատանքի մեկնողների վստահությունը
ձեռնարկած նոր գործի նկատմամբ, նրանց կկապի հողի հետ: Շրջկոմի գյուղբաժնի
վարիչ Ա. Ավետիսյանը կապալի արմատավորման առնչությամբ ասում է. «Միության
առաջավոր փորձը մեկ անգամ ևս վկայում է, որ այժմ ավելի մեծ արդյունավետություն
ունեն կոլեկտիվ կապալի տարբեր ձևերի ու եղանակների իրականացումը, կապալի
բազմազան ստորաբաժանումներում ընդգրկված աշխատողների ռեալ վարձատրու-
թյունը, նրանց հոգեբանության վերակառուցումը: Հողի յուրաքանչյուր աշխատող
պետք է լավ գիտակցի, որ առաջընթացը հնարավոր է ապահովել միայն համատեղ
ջանքերով, հողի նկատմամբ տիրոջ մոտեցում ցուցաբերելով: Այո՛, բազմազան են
կապալի իրականացման ձևերը, ըստ այդմ էլ՝ փաստացի արդյունքները»:

Ճիշտ է, գյուղատնտեսության բնագավառում շրջանում կապալային եղանակը
մուտք է գործել դեռևս 1983 թվականից, սակայն սպասվելիք արդյունքը չի տվել հան-
րապետության մի շարք վերադաս կազմակերպությունների, այդ թվում նախկին գյու-
ղատնտեսության մինիստրության հետ առաջացած տարաձայնությունների պատճառով:
Խոսքը առաջին հերթին վերաբերում է գերակատարման համար տրվելիք հավելյալ
վարձատրությանը: Յուրաքանչյուր վերադաս կազմակերպություն ձգտել է որպես գնա-
հատման չափանիշ մտցնել իր առաջարկությունը, յուրաքանչյուրը ջանացել է հաստա-
տել իր առաջնությունը:



ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1987 թ.) պլենումում առանձնահատուկ խստու-
թյամբ նշվեց, որ մի շարք հանրապետություններում կապալային եղանակը ճիշտ չի
իրականացվում, որի պատճառով շարունակում է բարձր մնալ գյուղատնտեսական
մթերքների միավոր արտադրանքի ինքնարժեքը: Հաճախ կապալային պայմանագրերը
մնում են միայն թղթի վրա, որովհետև դրանց համար հավասարապես պատասխա-
նատու երկու կողմերը միշտ չէ, որ կատարում են իրենց պարտականությունները:
Տնտեսության ղեկավարները շատ դեպքերում պայմանագիրը կնքված են համարում,
երբ դրված են կնիքը և մի քանի համապատասխան ստորագրություններ: Նման թե-
րացումներ կային նաև Նաիրիի շրջանում: Զևական փաստաթղթերի հիման վրա
կոլեկտիվ կապալի եղանակով իրենց տնտեսությունների հետ աշխատելու պայմա-
նագրեր են կնքել Զովունիի, Քարաշամբի, Բուժականի և Թեղենիքի անասնապահա-
կան ֆերմաների կոլեկտիվները: Սակայն անտեսվել էր այն հանգամանքը, որ տնտե-
սությունները չեն կարող նրանց ապահովել պահանջվող քանակությամբ ու տեսակի
կերերով, ի վիճակի չեն կարգավորել տոհմային գործը, մեքենայացնել աշխատա-
տար գործողությունները: Բնականաբար, արդյունքում ոչինչ չստացվեց: Դեռ ավելին.
նվազեց կաթնատվությունը, իջավ կաթի յուղայնությունը: Պատճառն այն էր, որ ան-
տեսվեց մի կարևոր հանգամանք ևս՝ ստույգ հաշվարկը. չի կարելի կապալային եղա-
նակն իրականացնել առանց ներտնտեսային հաշվարկի, հանգամանորեն հաշվի առ-
նելով կատարված ծախսերն ու դրանց դիմաց ստացված փոխհատուցումը:

Միանգամայն օրինաչափ էր, որ նոր փորձի ներդրման արդյունքները հանգա-
մանորեն քննարկվեցին կուսշրջկոմի բյուրոյում, շրջսովետի գործկոմի, ՇԱԱՄ-ի խոր-
հըրդի նիստերում, բացահայտվեցին թերությունների ու բացթողումների պատճառնե-
րը, նշվեցին դրանց կարգավորման ուղիները: Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան
(1986 թ.) պլենումի պահանջներից՝ կուսշրջկոմը խնդիր դրեց զարկ տալ կապալային
նոր՝ օղակային, ընտանեկան և անհատական ստորաբաժանումներին, շեշտը դնել այն
կարգի պայմանագրերի կնքման վրա, որոնք նախատեսում են ծախսերի կրճատում,
նվազագույն ծախսերով բերքատվության և մթերատվության ավելացում, վարձատրու-
թյուն նաև բնամթերքով, լիմիտային չեկային գրքույկներով ծախսերի ճշգրիտ հաշ-
վառում: Ամենակարևորը՝ վարձատրությունը կատարել ոչ միայն տվյալ ստորաբա-
ժանման վերջնական արդյունքով, այլև՝ տնտեսության համախառն եկամտի հաշվով:
Հենց այս խնդիրների շուրջն էլ հետագա բացատրական լայն աշխատանքը ծավալեց
թե՛ կուսշրջկոմը, թե՛ ՇԱԱՄ-ի խորհուրդը: Համակողմանի այդ աշխատանքի շնորհիվ
1987 թ. շրջանում պատկերը բոլորովին փոխվեց: Հենց միայն բուսաբուծության ճյու-
ղում կազմավորվեցին կապալային 60 բրիգադ, 74 օղակ և 27 ընտանիք, անասնա-
պահության ճյուղում՝ 33 բրիգադ, 9 օղակ և 2 ընտանիք: Լավ արդյունքի հասան
հատկապես ընտանեկան ստորաբաժանումները: Խոշոր եղջերավոր անասունների
մատղաշի օրվա միջին քաշը նրանք հասցրին 670—700 գրամի, կերի ճակնդեղի մեկ
հեկտարի միջին բերքատվությունը՝ 670 ցենտների:

Հետաքրքիր միջոցառում իրականացրեց Քանաքեռավանի սովխոզի սկզբնական
կուսկազմակերպությունը: Նրա որոշմամբ այստեղ բուսաբուծության ճյուղում բոլոր
բրիգադները վերակազմվեցին կապալային երկուական օղակի, ստորաբաժանումների
թիվը հասցվեց 20-ի, երեք օղակ ստեղծվեց անասնապահական ֆերմայում:

Վերակառուցման ասպարեզում տեղաշարժը նշանակալից էր նաև Թեղենիքի,
Արագյուղի, Քարաշամբի, Քասախի և Պռոշյանի անվան տնտեսություններում: Բերենք
բնորոշ մի քանի օրինակ. նշված բոլոր տնտեսությունների ֆերմաները 1987 թ. առա-
ջին եռամսյակում պետությանը կաթ էին հանձնում 3,3—3,35 տոկոս յուղայնությամբ,
իսկ այս տարվա նույն ժամանակամիջոցում այդ ցուցանիշը հասել է 3,6—3,7 տոկոսի,
ի դեպ միայն առաջին կարգի, սառեցրած վիճակում: Ինչո՞վ բացատրել նման կտրուկ
փոփոխությունը: Նրանով, որ առաջավոր կթվորները որպես պարգև ոչ միայն մեկա-
կան գլուխ հորթ ստացան, այլև կապալին զուգահեռ, հիրավի, գործնական բնույթ էր
հաղորդվել միջօղակային մրցությանը: Այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել նաև
մյուս տնտեսություններից:

Ոչ այդքան կտրուկ, սակայն որոշակի տեղաշարժեր կան նաև բուսաբուծության
ճյուղում. ընթացիկ տարում առանձին ընտանիքների ու անհատների հետ կապալային
պայմանագրեր են կնքվել ոչ միայն այգիների, այլև գյուղատնտեսական կուլտուրա-
ների մշակության վերաբերյալ: Այսպես, Եղվարդում, Թեղենիքում, Արագյուղում, Քա-

ռաշամբում այդ կարգով է ընթացիկ տարում մշակվել եգիպտացորենի և կերի ճակընդեղի մեծ մասը:

Կապալային ստորաբաժանումներ են կազմավորվել նաև Զովունիի տնտեսության կաթնապրանքային ֆերմայում: Հարցին ճիշտ մոտեցումը դրականորեն է անդրադարձել նաև տարբեր ստորաբաժանումներում ընդգրկված բանվորների միջին վարձատրության վրա: Նշված տնտեսություններում կապալայինների ամսական միջին վաստակը, ներառյալ պարգևատրումներն ու հավելյալ վճարումները, հասնում է 300—350 ռ., 1986-ի՝ 150—200 ռ. դիմաց:

Ձեռքբերումները առկա են, առաջընթացը՝ նույնպես: Սակայն արտադրության մարդիկ գիտակցում են, որ շատ են նաև անելիքները. շրջանի անասնապահական մի շարք ֆերմաներում առայժմ այդպես էլ չեն կարողանում հրաժարվել այն մտքից, որ կարևորը ոչ թե մեկ կովից ստացված կաթի կիլոգրամներն են, ոչ թե մեկ հեկտարի ցենտներով հաշվվող բերքատվությունը, այլ առաջին հերթին՝ դրանց որակը, դրանով պայմանավորված իրացման բարձր գները, այդ ամենի հետ մեկտեղ՝ միավոր արտադրանքի ցածր ինքնարժեքը: Այժմ մարդիկ հաշվում են ծախսված յուրաքանչյուր ռուբլին, յուրաքանչյուր կգ. հանքային պարարտանյութը, յուրաքանչյուր լիտր ոռոգման ջուրը. քիչ ծախսեցիր՝ շատ կստանաս, շատ ծախսեցիր՝ փոխհատուցում չես ունենա:

Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները, գյուղատնտեսության բնագավառի աշխատողները լավ են գիտակցում, որ 1988-ը կապող, անցումային օղակ է. եկող տարվա սկզբից ագրոարդյունաբերական համալիրի կազմի մեջ մտնող բոլոր տնտեսություններն ու ձեռնարկությունները անցնելու են տնտեսավարման նոր եղանակին՝ ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման աշխատակարգին: Իսկ դրա համար հաստատուն հիմքեր են պետք: Ահա թե ինչու կուսշրջկոմի բյուրոն իր ուշադրությունը կենտրոնացրել է այդ կարևոր խնդրի վրա: Համապատասխան հանձնարարություններ են ստացել շրջանի տնտեսությունների ու գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների ղեկավարները, սկզբնական կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ԾԱԱՄ-ի խորհրդի ղեկավարներն ու համապատասխան մասնագետները: Շրջկոմը տնտեսությունների ղեկավարների և կուսկազմակերպությունների առջև խնդիր է դրել՝ **միջոցներ ձեռնարկել** բուսաբուծության ճյուղում քիչ ծախսումներով ապահովելու լավ բերք, վերակառուցելու խաղողի և պտղատու այգիները, արմատավորելու կերային սևնդարար, սպիտակուցներով հարուստ կուլտուրաներ, անասնապահության ճյուղում շահագործման հանձնելու ժամանակակից կառույցներ՝ կովանոցներ, հորթանոցներ, կերախոհանոցներ...

Խնդիրը կտրուկ է դրվում, որովհետև Բուժականի տնտեսությունում հինգերորդ տարին է, ինչ կառուցման ընթացքի մեջ է ֆերմայի շենքը, Սարալանջի տնտեսությունը հիմնադրվել է մեկ տարի առաջ, սակայն մինչև հիմա այստեղ չի լուծվում կովանոցների կառուցման հարցը: Նման տնտեսություններում, բնականաբար, խոսք անգամ չի կարող լինել կապալային որևէ ստորաբաժանում ստեղծելու մասին, քանի դեռ վերադաս կազմակերպությունները ոչ մի պայման չեն ստեղծել:

Կուսկազմակերպությունների և տնտեսության ղեկավարների համագործակցությունը, գործարարությունն ու եռանդը հաջողության կարևոր պայման են: Զովունիի պետական տնտեսությունում կատարվող աշխատանքը դրա պերճախոս վկայությունն է: Այն հիմնադրվել է 1965 թ. Ապարանի շրջանի նախկին նույնանուն կոլտնտեսության բազայի վրա: Եվ քառորդ դարից էլ պակաս ժամանակահատվածում զարգացել է դինամիկորեն, հզորացել և այժմ դասվում է շրջանի առաջավորների շարքը: Ծաղկել, շենացել, գեղեցկացել է նաև Զովունի գյուղը՝ իր ասֆալտապատ փողոցներով ու վարդագույն շենքերով: Այստեղ գործում են միջնակարգ դպրոց, մսուր-մանկապարտեզ, մշակույթի և կենցաղի տներ, մթերային ու արդյունաբերական խանութներ, բուժամբուլատորիա և շատ այլ օբյեկտներ: Տնտեսության կոլեկտիվը շրջանում հայտնի է իր լավ ավանդույթներով, ստեղծագործ աշխատանքով: Նա այսօր էլ իր արժանի ավանդն է ներդնում պարենային ծրագրի իրականացման գործում: Այդ կապակցությամբ ահա թե ինչ պատմեց կուսբյուրոյի քարտուղար Վ. Գալստյանը:

— Տնտեսական մեխանիզմի ու տնտեսավարման եղանակների կատարելագործման ներկա ժամանակաշրջանում կուսակցության առաջադրած կուրսը նոր խնդիրներ դրեց ագրոարդյունաբերական համալիրի առջև: Նրա տնտեսավարման մեխանիզմի կատարելագործման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների



խորհրդի հայտնի որոշմամբ պահանջվեց արտադրական ստորաբաժանումները փոխադրել տնտհաշվարկի և նրանցում արմատավորել աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակը, դրանով իսկ՝ պայմաններ ստեղծել ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման անցնելու համար:— Այժմ այս խնդիրների իրականացմանն են ձեռնամուխ եղել սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունն ու դիրեկցիան: Ճիշտ է, դեռևս 1983 թ. շրջանում առաջինը մեր այգեգործական բոլոր բրիգադները և կերարտադրության մեկ օղակ անցան կապալային եղանակին, սակայն պետք է ինքնաքննադատաբար նշել, որ առաջին երեք տարիներին, լավ չըմբռնելով դրա ճիշտ կիրառման նրբությունները, օրենքի շրջանակներից դուրս ավելորդ խոստումներ տալով կամ պայմանագրեր կնքելով և դրանք չկիրառելու հետևանքով, մենք ընկանք դժվարին կացության մեջ, բանվորների մոտ թուլացավ հավատը այդ առաջավոր եղանակի նկատմամբ:

Եվ, ահա սովխոզի կուսկազմակերպությունը և դիրեկցիան, խորությամբ վերլուծելով ստեղծված իրավիճակը, լայն բացատրական աշխատանք ծավալեցին աշխատավորների շրջանում, կոնկրետ միջոցներ ձեռնարկեցին արտադրական ստորաբաժանումներում տնտհաշվարկի արմատավորման և կապալի ներդրման համար: Կուսակցական ժողովներում, բյուրոյի նիստերում, արտադրական խորհրդակցություններում հաճախ են քննարկվում այդ հարցերը, դրանց լուծման համար պատասխանատու անձանց տրվում կոնկրետ հանձնարարություններ: Կուսբյուրոն ժամանակին անդրադառնում է դրանց կատարման ընթացքին և արդյունքներին: Արդեն 1986 թ. տնտեսությունում, իսկ 1987 թ.-ից նաև բոլոր արտադրական ստորաբաժանումներում արմատավորվել է տնտհաշվարկը, կիրառվում են լիմիտային չեկերը: Դրանց ղեկավարները յուրաքանչյուր ամսվա վերջում տնտեսագիտական և հաշվային, հաշվապահական ծառայություններին են ներկայացնում տվյալներ՝ կատարած ծախսերի մասին: Հաջորդ տարի ներդրվեց օղակային, իսկ ընթացիկ տարվանից՝ նաև ընտանեկան կապալը: Կաթնապրանքային ֆերմայում անցյալ տարի ստեղծվեց կապալով աշխատող երկու օղակ: Տարեվերջին, արդյունքների ամփոփումից պարզվեց, որ ձեռք են բերվել գոհացուցիչ արդյունքներ և նախորդ տարվա համեմատությամբ ավելի է արտադրվել 54 տոննա կաթ, 8,5 տոննա միս: Աճել է անասնապահների աշխատավարձը, կովերի միջին կաթնատվությունը հասել է 4.069 կգ-ի, իսկ առանձին կթվորուհիներ՝ Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների ասպետ, շրջսովետի դեպուտատ Լ. Եղիազարյանը, Կ. Հայրապետյանն ու Հ. Ոսկանյանը ամեն մի կովից ստացել են 4.117 կգ կաթ: Այս տարի ֆերմայում կապալային աշխատանքի անցան ևս մեկ օղակ և երկու ընտանիք, իսկ ութ կթվորուհիներ էլ աշխատում են անհատական կապալի եղանակով: Ընտանեկան մեկ կապալ է ստեղծվել նաև այգեգործական № 4 բրիգադում: Կ. և Ա. Մկրտչյան եղբայրները և նրանց ազգական Ս. Ֆարմանյանը ստանձնել են երկու հեկտար բերքատու և ութ հեկտար երիտասարդ պտղատու այգու խնամքը և խոստացել են տնտեսության միջինի համեմատությամբ կրկնակի բերք ստանալ: Սակայն օղակային և ընտանեկան կապալի արմատավորումը այգեգործական ճյուղում դեռևս լուրջ դժվարությունների է հանդիպում: Պատճառները լուրջ են. նախ՝ ավանը քաղաքամերձ է և աշխատուժ է կորցնում, ապա՝ այգեհատվածները խիստ կտրտված են իրարից և զգալի է տարբերությունը դրանց բերքատվության միջև:

Սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը դիրեկցիայի հետ ձեռնարկում է համապատասխան միջոցներ՝ բանվորների մոտ հավատը ամրապնդելու և այգեգործության մեջ օղակային ու ընտանեկան կապալը ավելի լայնորեն արմատավորելու համար:

Վերջին տարիներին զգալի առաջընթաց է ապրել Քարաշամբի տնտեսությունը, և այդ գործում մեծ է կապալի դերը: «Կոնկրետ ի՞նչ տվեց կապալը տնտեսությանը»: Այս հարցին պատասխանում է տնտեսության կուսկազմակերպության քարտուղար Բ. Մկրտչյանը.

— Կապալը մեր տնտեսությանը շատ բան տվեց. նախ՝ ասենք, որ բոլոր ցուցանիշներով կատարվել ու գերակատարվել են ոչ միայն առաջադրանքները, այլև սոցիալիստական պարտավորությունները, զգալիորեն աճել է համախառն եկամուտը,

բանվորների միջին վաստակը նախորդ տարիների համեմատությամբ գրեթե կրկնապատկվել է, չհաշված բնամթերային վարձատրությունը: Որոշակի են հաջողությունները հատկապես անասնապահության բնագավառում: Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ առաջին եռամսյակում ավելի է արտադրվել 6,5 տոննա կաթ, յուղայնությունը 3,3-ից հասցվել է 3,6 տոկոսի, հորթերի օրական միջին քաշաճը, նախատեսված 300-ի փոխարեն, կազմել է 600—700 գրամ: Կուսակցական ժողովի որոշմամբ անցած տարի ստեղծվել են ճագարաբուծական, թռչնաբուծական և ոչխարաբուծական ճյուղեր, որոնցից մեծ սպասելիքներ ունենք: Ձնայած բնակլիմայական անբարենպաստ պայմաններին՝ 1987 թ. հեկտարից 27 ցենտներ հացահատիկի, մոտ 100 ցենտներ պտղի բերք ստացանք:

Քարտուղարի ասածին հարկ է ավելացնել, որ այդ հաջողությունները հիմնականում ձեռք են բերվել կապալային ստորաբաժանումների ստեղծման, կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման շնորհիվ: Սկզբնական կուսկազմակերպությունն իր գործունեության կարևոր խնդիրներն է համարում էկոնոմիկայի արմատական վերակառուցումը, տնտեսավարման նոր եղանակների արմատավորումը, տնտեսական մեխանիզմի կատարելագործումը: Կուսժողովներում, արտադրական խորհրդակցություններում բազմիցս քննարկման առարկա են դարձել կապալի, տնտհաշվարկի, աշխատավորների տնտեսագիտական գիտելիքների ամրապնդման հարցերը: Գաղափարախոսական, բացատրական աշխատանքը աշխուժացել է հատկապես վերակառուցման ղեկավարման մասին կուսբյուրոյի հաշվետվության քննարկումից հետո:

Տնտեսավարման և վարձատրության նոր ձևերին անցնելու կապակցությամբ կուսկազմակերպությունը և դիրեկցիան լուրջ նախապատրաստական աշխատանք են կատարել. կոմպլեկտավորվել են կապալային ստորաբաժանումները, ընտրվել են դրանց ղեկավարները, լրացվել լիմիտային չեկերը: Տնտեսագիտական ուսուցման խմբակներում, որոնցում ընդգրկվել են գրեթե բոլոր աշխատողները, մանրամասնորեն ուսումնասիրվել է տնտեսավարման նոր եղանակի էությունը: Այժմ տնտեսությունում կան կապալային 13 ստորաբաժանումներ, որոնցից հինգը՝ ընտանեկան, մյուսները՝ օղակային: Հիմք ընդունելով նախորդ հինգ տարիների միջին ցուցանիշները՝ դիրեկցիան ճշգրտել է կապալային ստորաբաժանումների պլանային առաջադրանքները, նրանց հետ կնքել համապատասխան պայմանագրեր: Վարձատրությունը որոշվել է համախառն եկամտի համապատասխան. գերպլանային արտադրանքի 25 տոկոսը որպես պարգևատրություն տրվելու է կոլեկտիվի անդամներին:

Ձեռնարկված միջոցները ցանկալի արդյունք են տալիս. ոչ միայն ավելացել է անասունների մթերատվությունը, խնայողաբար են օգտագործվում կերերը, այլև բարձրացել է աշխատողների պատասխանատվության զգացումը, նկատվում է տիրոջ սըրտացավ վերաբերմունքը գործի ու հանրային բարիքի նկատմամբ: Այգեգործական չորս ստորաբաժանումներն էլ այգիների մշակության, խնամքի աշխատանքները սկսեցին ժամանակին, յուրաքանչյուր ագրոմիջոցառում կատարեցին բարձր որակով, կարճ ժամանակամիջոցում: Նրանք մեծ ուշադրություն նվիրեցին հատկապես ծառերի էտի, բուժման ճիշտ կազմակերպմանն ու անցկացմանը: Բուսաբուծական մեքենայացված օղակը, ուր ընդգրկված են 12 մեխանիզատորներ, իր ուժերով է կատարում 426 հեկտար գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի, մշակության և բերքահավաքի աշխատանքները:

Տնտեսությունում արվում է ամեն ինչ 1989 թվականից ինքնաֆինանսավորման անցնելու համար: «Սակայն,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— կան խանգարող հանգամանքներ. տնտեսության հնարավորությունները խիստ սահմանափակ են: Ունենք 480 հեկտար օգտագործելի հողատարածություն, որից ջրովի է միայն 40-ը: Այն հատկացված է պտղատու այգուն: Հետագայում տնտեսությունում արտադրությունը ընդլայնելու, անասունների գլխաքանակը ավելացնելու, ինչպես նաև մարդկանց աշխատանքով ապահովելու, աշխատանքի սեզոնայնությունը վերացնելու համար անհրաժեշտ է ավելացնել ջրովի հողատարածքները: Դա էլ հնարավոր է անել Հրազդան գետի վրա պոմպակայան տեղադրելու և խողովակաշարով ջուրը հողատարածությունները մղելու միջոցով միայն: Այդ հարցերի շուրջն էլ խորհում ենք դիրեկցիայի հետ



միասին: Չէ՞ որ խնդիրը սոսկ կապալի արմատավորումը չէ, հարկավոր է այդ եղանակով աշխատողների համար ստեղծել լավ պայմաններ»:

Հանրապետության կառավարության որոշմամբ Նաիրիի շրջանի Նոր-Գեղիի ակադեմիկոս Գ. Աղաջանյանի անվան սովխոզ-տեխնիկումի բազայի վրա ստեղծվեց «Նաիրի» ագրոֆիրման, որը հնարավորություն կտա նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի հիման վրա իրագործել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, մթերումն ու սպառումը՝ լրիվ ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման պայմաններում: «Իսկ դրա համար,— ասում է տնտեսության կուսբյուրոյի քարտուղար Գ. Խաչատրյանը,— մեզ մոտ կան ռեալ պայմաններ: Ունենք 450 հեկտար պտղատու այգի, 320 կով: Տարեկան արտադրում ենք շուրջ 2.500 տոննա պտուղ, 1.400 տոննա կաթ, 130—140 տոննա միս: Անցյալ տարի մեկ կովի կաթնատվությունը կազմեց 4615 կգ, պետությանը հանձնված անասունի միջին քաշը՝ 485 կգ, օգուտը՝ 700 հազար ռուբլի: Բարձրացել է շահութաբերությունը, բանվորի միջին աշխատավարձը հասել է 260—300 ռուբլու: Առաջնորդվելով կուսակցության նոր պահանջներով՝ մենք վերանայեցինք ու վճռեցինք կոլեկտիվի անելիքները: Խնդիրը կոնկրետ դրվեց՝ յուրաքանչյուր կոմունիստ, թե անկուսակցական իր տեղամասում պետք է աշխատի նորովի: Հարկ եղավ քաղաքական-բացատրական լայն աշխատանք տանել հողի նկատմամբ մարդկանց մեջ տասնյակ տարիներ արմատացած հոգեբանությունը փոխելու համար: Եվ, իրոք, մարդը դաշտում, այգում, ֆերմայում կատարում էր իր գործը, իր առաջադրանքը, իսկ նրան ամենևին էլ չէր հետաքրքրում տնտեսության վերջնական արդյունքը: ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո մարդկանց մոտ բարձրացավ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար պատասխանատվությունը, նրանք խորապես ըմբռնեցին վարձատրությունը վերջնական արդյունքից կախման մեջ դնելու կարևորությունը՝ ինչպես առանձին վերցրած յուրաքանչյուր աշխատողի, այնպես էլ տնտեսության ու պետության շահերի տեսակետից: Ահա այսպես առաջին պլան մղվեց մարդկային գործոնի դերը: Սակայն սա սոսկ խոսք չէ, մեզ մոտ այն կոնկրետ մարմնավորում է ստանում: Դրան հասանք ընտրելով միակ ռեալ ու հուսալի ճանապարհը՝ աշխատանքի կազմակերպման ու վարձատրման կապալային եղանակը լայնորեն կիրառելու ճանապարհը: Պայմանագրային կարգով երկրագործին ենք հատկացնում հողը, այգին, անասունը, տեխնիկան, արտադրական մյուս միջոցները, համատեղ որոշում առաջադրանքներն ու վերջնական արդյունքները, սահմանում փոխադարձ պարտավորություններն ու վարձաչափերը: Ընթացիկ տարվա հունվարի 13-ին կայացած կուսբյուրոյի նիստում որոշեցինք այս տարվանից անցնել աշխատանքի ղեկավարման արտադրամասային եղանակին: Այսպես, ստեղծվել են այգեգործական, անասնապահական մթերքների արտադրության, կերի կուտակման, մեքենայացման ու էլեկտրիֆիկացման ու այլ արտադրամասեր, որոնց անմիջապես ղեկավարում են գլխավոր գյուղատնտեսը, անասնաբույժը, գլխավոր ինժեները: Առաջին ամիսների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ ղեկավարման այսպիսի ձևը իրեն արդարացնում է»:

Տնտեսությունում կոլեկտիվ կապալը ներդրվել է 1983 թվականին: Փորձնական կարգով դրան անցավ այգեգործական № 5 բրիգադը, որը ղեկավարում է կոմունիստ Դերենիկ Հարությունյանը: Նրան հանձնվեց 72 հեկտար ոչ բերքատու ինտենսիվ այգի: Այնուհետև 1985 թ. այդ առաջավոր եղանակով սկսեցին աշխատել մյուս բրիգադները: Կապալային եղանակը արմատավորելու շնորհիվ բարձրացել է պտղատու այգիների բերքատվությունը, ավելացել բանվորների աշխատավարձը: Սակայն փորձը տնտեսության ղեկավարներին հանգեցրեց այն համոզման, որ առավել բարձր արդյունքներ են ապահովում հատկապես ընտանեկան կապալով աշխատող օղակները: Այսպես, Լիպարիտ Խաչատրյանն իր կնոջ հետ 1986 թ. ստանձնեց մեկ ամսական հորթերի խնամքը և դրանք հանձնեց բտման բրիգադին՝ յուրաքանչյուրը 220—240 կգ կենդանի քաշով: Հաշվարկները ցույց տվեցին, որ այդ արդյունքը ձեռք է բերվել համեմատաբար քիչ կեր ծախսելու և խնամքի ու պահպանության գործը բարձր մակարդակով կազմակերպելու շնորհիվ: Տնտեսությունը շահեց նրանով, որ մատղաշի անկում տեղի չունեցավ, ապահովվեց բարձր քաշաճ, տնտեսվեց զգալի քանակությամբ կեր, իսկ Խաչատրյանի ընտանիքը որպես վարձատրություն ստացավ 17 հազար ռուբլի կանխիկ դրամ: Այդ նույն հորթերը, մինչև 17—18 ամսական հասակը

բտվելով կապալով աշխատող մյուս անասնապահների մոտ, 500 կգ. միջին կենդանի
քաշով հանձնվեցին պետությանը:
Ակտիվության ու նախաձեռնության աճի, պատասխանատվության բարձրացման
լավ օրինակ կարող են տալ Սամվել Զարգարյան և Աստղիկ Մադյան ամուսինները:
Նրանք 1987 թ. ստանձնեցին 12 հեկտար պտղատու այգու մշակությունը: Ի դեպ,
երեք տարեկան այգին նոր էր պտղավորվել և այնքան էլ լավ վիճակում չէր, սակայն
առատ բերքը գերազանցեց բոլոր սպասելիքները. հավաքվեց 71 տոննա ընտիր
պտուղ: Պլանից ավելի ստացած պտղի 25 տոկոսը՝ յոթ տոննա, տրվեց նրանց որպես
պարգև, որից կեսը՝ բնամթերքով: Աշխատավարձի հետ այդ ընտանիքի տարեկան
վաստակը կազմեց 14 հազար ռուբլի: Անցյալ տարի բարձր արդյունքների հասան
Վաթյանների ընտանեկան օղակի անդամները, որոնք իրենց խնամած 50 կովերի
միջին կաթնատվությունը հասցրին 4.706 կգ-ի:
«Կապալային աշխատանքը,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— մեզ մոտ
ունի նաև մեկ այլ բնորոշ կողմ. պայմանագրերը կնքվում են ոչ թե մեկ, այլ հինգ
տարով: Նշանակում է՝ վստահված կոնկրետ տեղամասի համար օղակը պատասխան
է տալու հինգ տարի շարունակ: Այժմ բոլոր հիմքերը կան, որպեսզի տնտեսությունը
1989 թ.-ից անցնի ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման»:
Այո, աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ներդրման ու արմատավորման
հարցերը չեն վրիպում կուսբյուրոյի տեսադաշտից: Դրանք պարբերաբար քննարկվում
են նրա նիստերում և կուսժողովներում: Կուսկազմակերպությունն անդրադառնում է
նաև առանձին ստորաբաժանումների ֆինանսատնտեսական գործունեության, գյուղա-
տնտեսական արտադրության ինտենսիվացման, ինքնածախսածածկմանն ու ինքնա-
ֆինանսավորման անցնելու խնդիրներին: Լսվում են առանձին արտադրամասերի ղե-
կավարների, կոմունիստների, մասնագետների հաշվետվությունները:
Ամփոփենք. Նաիրիի շրջանում զգալի են կապալի ներդրման հաջողություններն
ու ձեռքբերումները, սակայն շատ են նաև անելիքները, պրոբլեմներն ու չլուծված
հարցերը: Կուսշրջկոմն ու սկզբնական կազմակերպությունները ձգտում են հաղթա-
հարել դժվարությունները և լուրջ բեկում ստեղծել այդ գործում, լուծել կուսակցության
առաջադրած վերակառուցման և արագացման կուրսից բխող խնդիրները, նպաստել
պարենային ծրագրի իրականացմանը:

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ

ՅՈՒ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՊՐԻԼՅԱՆ (1985 թ.) պլենումի, կուսակցության XXVII
համագումարի ընդունած որոշումներով խնդիր է դրվում սովետական
հասարակությունը մինչև դարավերջ հասցնել որակական նոր, նշանակալիորեն ավելի
բարձր մակարդակի: Իր այս ստրատեգիական կուրսի իրականացման գործում կու-
սակցությունն ըստ ամենայնի կարևորում է գիտության դերը: Խոսելով այս աստա-
րեզում տիրող իրավիճակի մասին, Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XIX համամիութենա-
կան կոնֆերանսում նշեց. «Գիտության ու տեխնիկայի զարգացման մեջ նկատվում
են դրական փոփոխություններ, մեծացել է պահանջկոտությունը արտադրանքի տեխ-
նիկական մակարդակի նկատմամբ, կրճատվել են գիտահետազոտական կազմակեր-
պությունների մշակումների յուրացման ժամկետները: Խոշոր միջոցներ են ձեռնարկ-
ված հետազոտությունների ու մշակումների պլանավորման, ֆինանսավորման և նյու-
թական ապահովման, պրակտիկայում գիտական նվաճումների ավելի արագ օգտա-
գործման, գիտական աշխատանքի խթանման համակարգի փոփոխման համար»:
Գիտության վերակառուցման համար անհրաժեշտ է նախ և առաջ պարզել, թե
ինչը մեզ չի գոհացնում նրա արդյունավետության բարձրացման մեջ, որոնք են այդ
բնագավառի թերությունները, վրիպումները, դրանց հաղթահարման ուղիները:
Մենք բոլորս սուր կերպով զգում ենք էկոնոմիկայի ինտենսիվացման անհրաժեշ-
տությունը, որն իր հերթին օրակարգում դրել է գիտության ինտենսիվացման հարցը:
Գիտությունը մինչև վերջին ժամանակներս զարգանում էր էքստենսիվորեն (բացվում
էին նոր գիտահետազոտական հիմնարկներ, մեծանում էր գիտական աշխատողների
քանակը և այլն): Եվ ամենուրեք զգացվում էր գիտական հիմնարկների աշխա-
տանքի արդյունավետության շեշտակի բարձրացման անհրաժեշտությունը: Այսօր էլ
յուրաքանչյուր գիտական աշխատողի հատույցը ընդհանուր առմամբ դեռ հեռու է ար-
դի պահանջներից:
Կյանքն առաջադրել է հսկայական կարևորության մի խնդիր՝ մշակել սկզբուն-
քորեն նոր տեխնիկա և տեխնոլոգիա, վաղվա օրվա տեխնոլոգիան: Առանց այդ
խնդիրը լուծելու մենք դատապարտված կլինենք աններելի տեխնիկական հետամնա-
ցության: Արդյո՞ք մենք այսօր ապահովված ենք արտադրության մեջ կարևորագույն
գիտական մշակումների արդյունքների արմատավորման երաշխիքներով: Անցյալում
և սովետական գիտությունը հաճախ մեծ հաջողությունների էր հասնում, սակայն
միշտ չէ, որ գիտահետազոտական աշխատանքների արդյունքները ներդրվում էին
ժողովրդական տնտեսության մեջ և դրանք այդպես էլ մնում էին չիրացված կամ
ներդրվում էին մեծ ձգձգումներով: Եթե գիտական նվաճումներն այս կամ այն պատ-
ճառով կյանքի ուղեգիր չեն ստանում, չեն արմատավորվում, ապա դա նշանակում է,
որ գիտնականները զբաղված են եղել սիզիփյան աշխատանքով: Մեծագույն վատնո-
ղություն չէ՞ արդյոք բարձր որակավորում ունեցող և կարող մասնագետներին ստի-
պել զբաղվելու այնպիսի գիտական հետազոտություններով, որոնց արդյունքները հա-
ճախ մնում են չօգտագործված: Ցավոք, այսօր էլ մենք երաշխիք չունենք, որ այն
արժեքավորը, ինչ գիտությունը կառաջարկի, կես ճանապարհին չի մնա: Կարծում
ենք, որ գիտական մշակումների արդյունքների ներդրման գործում հիմնական երաշ-

ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ՅՈՒՐԻ ԹԱԴԵՎՈՍԻ— ՀՍՍՀ առողջապահության մինիստրության Ա. Բ. Ալեք-
սանյանի անվան համաճարակաբանության, վիրուսաբանության և բժշկական մակաբուծաբանու-
թյան գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր, հանրապետության ԳԱ թղթակից-անդամ:

նավետ մշակումը անհնարին է առանց համապատասխան նյութատեխնիկական բազայի ստեղծման (սարքավորումներ, ռեակտիվներ, սննդարար միջավայրեր բջջային կուլտուրաների համար, փորձակենդանիներ և այլն):

Հատուկ ուշադրության է արժանի գիտության համար բարձրորակ կադրերի պատրաստման հարցը: Անհրաժեշտ է ընդունակ երիտասարդների հնարավորին չափ ավելի խնամքով ընտրություն կատարել դեռ դպրոցական նստարանից և նպատակամղված, այս կամ այն գիտության նկատմամբ նրանց ունեցած հակումներին համապատասխան պատրաստել բուհ ընդունվելու համար: Այնուհետև պետք է սերտ կապ հաստատել բուհ ընդունված ուսանողների և գիտնականների միջև: Ուսանողները արդեն բուհում սովորելու ժամանակ պետք է ձեռնամուխ լինեն գիտական լուրջ աշխատանքի: Բուհն ավարտելուց հետո նպատակահարմար է առավել ընդունակներին, առանց ժամանակ կորցնելու, ընդունել ասպիրանտուրա կամ աշխատանքի՝ գիտահետազոտական ինստիտուտում: Այսպիսով, պետք է հստակորեն գործի գիտական կադրերի պատրաստման եռօղակ համակարգը (դպրոց, բուհ, ասպիրանտուրա):

Խիստ կարևոր է գիտահետազոտական հիմնարկների, ուսումնական հաստատությունների և պրակտիկ առողջապահության միջև եղած կապերին մշտական, ավելի ու ավելի ընդլայնվող և խորացող բնույթ հաղորդելը՝ անընդհատ կատարելագործելով նրանց փոխգործակցության ձևերը:

Մեր հասարակության դեմոկրատացման պրոցեսի ընդլայնման ու խորացման պայմաններում պետք է ուժեղացնել յուրաքանչյուր ինստիտուտի գիտական խորհրդի դերը, խորհրդակցական մարմնից այն դարձնել յուրատեսակ օրենսդիր մարմին, որը ընդունի սկզբունքային կարևորության որոշումներ: Իսկ ադմինիստրացիան դարձնել գործադիր մարմին, որը իրականացնում է գիտական խորհրդի ընդունած կուրսը, գիտական քաղաքականությունը: Կարծում ենք, որ պետք է ճիշտ համարել արդեն իրականացվող այն պրակտիկան, երբ գիտական խորհրդի անդամները ոչ թե նշանակվում են, այլ ընտրվում ինստիտուտների գիտական կոլեկտիվների կողմից:

Վերջում կցանկանայինք շոշափել մի հարց ևս: Ինչպես հայտնի է, Հայաստանն ունի փոքր տարածք և հողային սահմանափակ ռեսուրսներ: Հանրապետության համար կենսականորեն կարևոր նշանակություն ունի էկոլոգիական պրոբլեմների ճիշտ լուծումը: Հաշվի առնելով այդ հանգամանքը, ինչպես նաև գիտական պոտենցիալի ուժեղացման նշանակալի հնարավորությունները, հավանաբար, նպատակահարմար կլիներ հիմնավորապես մշակել գիտատեխնիկական առաջադիմությունն ապահովող և գիտատեխնիկական հեղափոխության համար հիմք հանդիսացող գիտության ճյուղերի ինտենսիվ զարգացման հեռանկարային կոմպլեքսային ծրագիր: Այդ կապակցությամբ, մեզ թվում է, հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել հանրապետությունում ֆիզիկաքիմիական կենսաբանության և կենսատեխնոլոգիայի մի շարք բնագավառների զարգացմանը:

---



# ՍՄԿԿ ՇԱՐՔԵՐԻ ՀԱՄԱԼՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՁԳՏՄԱՄԲ

**Վ. ՍՈՂՈՄՈՆՅԱՆ**

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՆԵՐԿԱ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ, երբ հրապարակայնությունն ու հասարակական կյանքի դեմոկրատացումը դառնում են նորմ, երբ հասարակության զարգացման նկատմամբ ցուցաբերվող նոր մոտեցումները մտնում են մեր կենսագործունեության բոլոր ոլորտները, անհամեմատ բարձրանում է կուսակցական կազմակերպությունների դերը: Եվ այն բանից, թե ինչպիսի կազմ ունի այս կամ այն կուսկազմակերպությունը, ինչպես է նա բարձրացնում իր որակական տվյալները, ինչպես է կարողանում իր ներգործունությունը հաստատել կյանքի հեղափոխական վերափոխումների ընթացքի վրա, պայմանավորված է վերակառուցման ամբողջ գործի հաջողությունը: Նոր պայմաններում, բնականաբար, նորովի են դրվում նաև ՍՄԿԿ շարքերի համալրման, նրա անաղարտության պահպանման, յուրաքանչյուր կոմունիստի կողմից ՍՄԿԿ կանոնադրական պարտականությունների կատարման հարցերը: Ժամանակաշրջանի ոգով թելադրված այս խնդիրները խիստ անհրաժեշտություն են առաջացրել է՛լ ավելի սկզբունքայնությամբ ու պահանջկոտությամբ վերաբերվելու կուսակցության շարքերի համալրմանը:

Կուսակցության շարքերի որակական բարելավման ասպարեզում Լենինականի կուսակցական կազմակերպությունների գործունեության ելակետն են ՍՄԿԿ XXVII համագումարի բարձր պահանջները, կուսակցության մեջ ընդունելության և կուսշարքերի ամրապնդման գործում Տաշքենդի մարզային կուսկազմակերպության աշխատանքի լուրջ թերությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, ինչպես նաև ցուցումներն այն մասին, որ կուսակցական շարքերի աճը կարգավորելիս հաշվի առնըվեն ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության զարգացման ներկա խնդիրներն ու հեռանկարները, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի առանձնահատկությունները այն հաշվով, որպեսզի, առաջատար մասնագիտությունների տեր անձանց ՍՄԿԿ-ի մեջ ընդունելով, ուժեղացվի կուսակցության ազդեցությունը տվյալ տեղամասում:

Կոմունիստների կազմում բանվորների տեսակարար կշռի բարձրացումը կուսշարքերի համալրման աճեղ միտումն է, որը միաժամանակ արտացոլում է կուսակցական աճի հիմնական օրինաչափությունը, այն է՝ բանվոր դասակարգի վճռական ներգործությունը նրա կազմի ձևավորման վրա: Նկատի առնելով այս հանգամանքը, այնուամենայնիվ, ձգտում ենք ոչ թե կոմունիստների շարքում բանվորների թվի սոսկ ավելացման, այլ այն բանին, որպեսզի համալրումը տեղի ունենա բանվորների ամենաառաջավոր ներկայացուցիչների հաշվին, այն մարդկանց, ովքեր իրենց մեջ մարմնավորում են նրա լավագույն հատկանիշները և ընդունակ են նախաձեռնողությամբ ու բարձր պատասխանատվությամբ կրելու կոմունիստի պատվավոր կոչումը:

Եվ այժմ, երբ վերլուծում ենք այդ նպատակով Լենինականի քաղաքային և շըրջանային կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած գործու-

---

*ՍՈՂՈՄՈՆՅԱՆ ՎԱՐՈՒԺԱՆ ՀՈՒՆԱՆԻ — ՀԿԿ Լենինականի քաղկոմի կազմակերպական բաժնի վարիչ:*

նեությունը, կարող ենք նշել, որ այդ գործում հետևողական աշխատանքը տվել է որոշակի արդյունքներ: Վերջին երկու տարում քաղաքի կուսկազմակերպություններում տեղի ունեցած աճը զգալի չափով ձեռք է բերվել անմիջականորեն արտադրության ոլորտում աշխատող մարդկանց հաշվին: 1986—1987 թթ. ՍՄԿԿ շարքերը որպես թեկնածու ընդունվածների 70,8 տոկոսը բանվորներ են, և դա հնարավորություն է տվել ուժեղացնել կուսակցական կորիզը արտադրական բրիգադներում, նրանցում ստեղծել կուսակցական խմբեր:

Քաղաքի կուսակցական կազմակերպությունները մշտապես հոգում են այն մասին, որպեսզի ՍՄԿԿ շարքերը համալրվեն նաև մտավորականության առաջավոր ներկայացուցիչներով: Ի դեպ, այստեղ ևս ուշադրության կենտրոնում է արտադրության ոլորտը: 1986—1987 թթ. ծառայողական կատեգորիայից ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվածների մեջ շուրջ 74 տոկոսը ՀամԼԿԵՄ անդամներ են, ավելի քան 79 տոկոսը՝ մինչև 30 տարեկան երիտասարդներ, 40 տոկոսը՝ կանայք:

Կուսակցության շարքերի համալրումն իրականացնելիս կուսքաղկոմը, շրջկոմներն ու սկզբնական կազմակերպությունները լայնորեն հենվում են ժողովրդական վերահսկողության մարմինների, արհմիութենական, կոմերիտական և այլ կազմակերպությունների անկուսակցական ակտիվի այն մասի վրա, որոնք հասարակական աշխատանքում իրենց դրսևորել են դրական կողմերով և, իրավամբ, համարվում են կուսշարքերի աճի լավագույն ռեզերվ: Ի դեպ, ձգտում ենք լրիվ ձերբազատվել ընդունելության հարցում այս կամ այն անձի գնահատման գործում միայն աշխատանքային տվյալները հաշվի առնելու ոչ ճիշտ պրակտիկայից:

ՍՄԿԿ շարքերի նոր համալրման գործի կազմակերպման դրական օրինակ է տալիս Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպությունը: Այստեղ 1986—1987 թթ. ընթացքում կուսակցության մեջ որպես անդամության թեկնածու ընդունվածների 78 տոկոսը բանվորներ են, 73 տոկոսը՝ ՀամԼԿԵՄ անդամներ, 23 տոկոսը՝ այլ ազգությունների պատկանող մարդիկ, 66 տոկոսը՝ կանայք: Կուսակցության մեջ ընդունվողների դիմումները, որպես կանոն, նախապես քննարկվում են կուսակցական խմբերում և միայն նրանց երաշխավորություններով է դիմողի հարցը դրվում հետագա քննարկման:

Գործի նկատմամբ բարձր պատասխանատվության արդյունք է այն, որ ֆաբրիկայում կուսակցության նոր անդամներն աշխատում են կրկնապատկված եռանդով ու ակտիվությամբ: Այսպես, նրբասանրող արտադրամասի բանվորուհի, ՍՄԿԿ անդամության թեկնածու Արմենուհի Բաղդասարյանը, որը կուսակցության մեջ ընդունվելուց հետո վերանայել է իր արտադրական հնարավորությունները, համառ աշխատանքով հասել է սպասարկման գոտու ռեկորդային ցուցանիշների: Միութենական ճյուղային միջին նորմայի՝ 1940-ի փոխարեն, նա սպասարկում է 2088 իլիկ: Սպասարկման լայն ընդգրկմամբ են աշխատում նաև ՍՄԿԿ անդամության թեկնածուներ, մանող Գալինա Դուման, փաթաթող Անահիտ Պասկևիչյանը, նրբասանրող Էլիզա Առաքելյանը և ուրիշներ: Ֆաբրիկայի բոլոր երիտասարդ կոմունիստներն ու ՍՄԿԿ անդամության թեկնածուները հասարակական ակտիվ աշխատողներ են: Նրանցից 11-ը պրոպագանդիստներ են, 6-ը՝ բրիգադային կուսխմբակավարներ:

Կուսկազմակերպության աշխատանքում պրակտիկա են դարձել կուսակցության անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հաշվետվությունների քննարկումները: Կազմակերպության տարբեր օղակներում 1986—1987 թթ. քննարկվել են 16 թեկնածուների և 21 երիտասարդ կոմունիստների հաշվետվություններ:

ՍՄԿԿ շարքերի համալրման աշխատանքը նպատակային ձևով է կազմակերպում նաև գուլպա-նասկեղենի արտադրական միավորման կուսկոմիտեն: Նա այդ գործում կարևորագույն չափանիշը համարում է ընդունվողների վերաբերմունքը վերակառուցմանը, քննադատությանն ու ինքնաքննադատությանը, դեմոկրատական պրոցեսների խորացման նկատմամբ ցուցաբերվող ակտիվ մասնակցությունը:

Այսօր, երբ առաջին պլանում դրված են ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի հեղափոխական վերակառուցման հույժ կարևոր խնդիրը և դրա իրականացման գործում յուրաքանչյուր կոմունիստի ակտիվ աշխատանքի ապահովումն ու անձնական ներդրման մեծացումը, նոր ուժով է հնչում լենինյան պատվիրանն այն մասին, թե մենք պետք է ձգտենք ավելի ու ավելի բարձրացնել կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունը: Քաղկոմը, շրջանային կոմիտեներն ու սկզբնական կազմակերպություններն առաջնային գործն են համարում պարբերաբար և խո-



րությամբ վերլուծել իրենց շարքերում կատարվող տեղաշարժերը, ըստ ամենայնի ուժեղացնել կուսակցական ներգործությունը ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի զարգացման պրոցեսների վրա, հասնել այն բանին, որ կուսակցության մեջ մտնելու հենց առաջին օրվանից կոմունիստը քաղաքական ակտիվ կենսադիրք ունենա վերակառուցման գործում, ամենուրեք և ամեն ինչում հանդես գա որպես քաղաքական մարտիկ: Իսկ դրա համար մեր գործունեության դրական և բացասական կողմերի խոր վերլուծությամբ ու հետևողական աշխատանքով պարտավոր ենք հաղթահարել և վերացնել դեռևս առկա թերություններն ու բացթողումները:

Տաշքենդի մարզային կուսկազմակերպությունում ՍՄԿԿ շարքերի ընդունելության վերաբերյալ Կենտկոմի որոշումը մեր քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, Մոսկովյան և Շիրակի կուսշրջկոմների պլենումներում քննարկելիս բացահայտվեցին մի շարք մտահոգիչ թերություններ: Մասնավորապես դեռևս անբավարար է ՍՄԿԿ շարքերի ընդունելությունը այն անձանց հաշվին, ովքեր անմիջականորեն աշխատում են արտադրական բրիգադներում: Այդ պատճառով դրանցում թույլ է կուսակցական կորիզը: Այսպես, քաղաքի արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի ձեռնարկություններում ստեղծված են 1664 բրիգադներ, բայց կուսակցական խմբեր կան միայն 162-ում, շատ բրիգադներում ընդհանրապես չկան կոմունիստներ: Այս տեսակետից վիճակը բարվոք չէ բամբակագործվածքային արտադրամիավորումում, հղկող հաստոցների գործարանում, շինարարական կազմակերպություններում և այլ տեղերում: Երբեմն կուսակցության շարքերն են ընդունվել անհրաժեշտ կենսափորձ և բավականաչափ աշխատանքային կոփվածք չունեցող մարդիկ: Կատարված վերլուծություններից պարզվել է, որ, օրինակ, 1987 թ. ընթացքում ՍՄԿԿ շարքերն ընդունվածների շուրջ 68 տոկոսը 20—25 տարեկան անձինք են:

Մտահոգիչ է նաև այն, որ ծառայողական կատեգորիայից ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվածների մեջ դեռևս ցածր է ոչ հիմնական ազգային պատկանելության անձանց տեսակարար կշիռը: Ճիշտ է, այդ ցուցանիշը 1987 թ. նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն բարձրացել է, սակայն այն դեռևս գոհացուցիչ չէ: Չի կարելի բավարար համարել նաև դպրոցական կազմակերպություններից կուսակցության մեջ ընդունելության գործի կազմակերպումը, որի պատճառով մի շարք դպրոցներում առկա է կուսկազմակերպությունների «ծերացման» փաստը:

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ մենք դեռևս չենք հասել կուսակցական շարքերի համալրման գործի լայն հրապարակայնության: Ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում է արմատավորվել կուսխմբերում և արտադրամասային կուսկազմակերպություններում ընդունելության դիմումների քննարկման պրակտիկան: Երբեմն պակասում է սկզբնական կազմակերպությունների համարձակությունը՝ առանձին դիմողների հանդեպ ցուցաբերվող լուռ անհամաձայնությունը փոխարինելու սկզբունքային մերժմամբ: Այո՛, կան մարդիկ, ովքեր ցանկանում են իրենց կապել կուսակցության հետ, ձգտում օգուտներ քաղել կուսակցական տոմսից: Իսկ մենք միշտ չէ, որ սկզբունքային գնահատական ենք տալիս այդօրինակ փաստերին:

Ինչքան էլ փորձել ենք կուսշարքերի համալրման գործում խուսափել հապճեպությունից և մեխանիկական արագացումից, այդուհանդերձ, լրիվ բացառել այն դեռևս չի հաջողվել: Մարդուն բազմակողմանիորեն չճանաչելու, նրա գործնական ու բարոյական հատկանիշները ոչ խորությամբ ուսումնասիրելու հետևանք են, անշուշտ, որ ավտոբուսների նորոգման, «Միկրոէլեկտրաշարժիչ», որոշ այլ գործարանների սկզբնական կուսկազմակերպությունները կուսակցության մեջ են ընդունել այնպիսի անձանց, որոնք, չանցած մեկ տարի, կոմունիստին անվայել վարքագիծ դրսևորելու կամ կուսակցական կյանքից կտրված լինելու համար հեռացվել կամ դուրս են թողնվել կուսակցությունից: Ոչ մի կերպ չի կարելի արդարացնել «Միկրոէլեկտրաշարժիչ» գործարանի սկզբնական կուսկազմակերպությանը, որն ստիպված էր իր իսկ կողմից անդամության թեկնածու ընդունված բանվորուհի Ա. Սարգսյանին ՍՄԿԿ շարքերից դուրս թողնելու որոշում կայացնել՝ թեկնածուական ժամանակաշրջանում իրեն չարդարացնելու, կուսկազմակերպության կյանքից կտրվելու համար: Կամ ինչպե՞ս կարելի է չհիշատակել այն փաստը, որ ընդամենը 8—9 ամսվա կուսակցական ստաժ ունեցող Գ. Կրիտյանը միանգամայն արդարացիորեն հեռացվեց կուսակցությունից սպեկուլյացիայով զբաղվելու համար: Որքան էլ եզակի են նման փաստերը, դրանք զգաստացնում են մեզ և հուշում, որ, սկզբնական կուսկազմակերպություններին ցույց տրվող համակողմանի օգնության հետ մեկտեղ, հարկավոր է ըստ ամենայնի բարձրացնել

պահանջկոտությունը նրանց նկատմամբ, ավելի մոտիկից զբաղվել երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցերով:

Դաստիարակչական արդյունավետ աշխատանքի լավ օրինակ է տալիս բամբակագործվածքային արտադրամիավորման երիտասարդ կոմունիստների դպրոցը, ուր ընդգրկված է 37 մարդ: Նրանք ուսումնասիրում են «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը ՍՄԿԿ ստրատեգիական գիծն է» դասընթացը: Բացի ծրագրային թեմաներից, ուսումնական պրոցեսում նրանց տրվում են հանձնարարություններ՝ լենինյան աշխատությունների և ՍՄԿԿ XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների նյութերի խոր ուսումնասիրման նպատակով: Երիտասարդ կոմունիստների դպրոցի ունկնդիրներ Է. Բարսեղյանը, Ա. Հովհաննիսյանը, Հ. Խաչատրյանը, Տ. Կարապետյանը ուսումնասիրել են Վ. Ի. Լենինի երկերը և հանդես եկել ռեֆերատներով ու ելույթներով, իսկ Գ. Հարությունյանը և Ա. Խաչատրյանը «Վերակառուցումը շարունակվում է», «Հասարակության հետագա դեմոկրատացումը» թեմաներով: Երիտասարդ կոմունիստները ակտիվորեն մասնակցում են թեմաների քննարկմանը, ձեռք բերում որոշակի հմտություններ, նախապատրաստվում պրոպագանդիստական, դասախոսական և ագիտացիոն աշխատանքի համար:

Դպրոցի աշխատանքները նպատակաուղղված են նաև ունկնդիրների աշխատանքային ու արտադրական ակտիվության բարձրացմանը: Նրանցից ութը 1988 թ. առաջին եռամսյակում հանդես են եկել ռացիոնալիզատորական 12 առաջարկություններով, որոնցից 9-ը ներդրվել են արտադրության մեջ՝ 8.200 ռուբլու տնտեսական օգուտով: Այդ աշխատանքում հատկապես աչքի են ընկել երիտասարդ կոմունիստներ Լ. Գուգը, Վ. Պետրոսյանը, Գ. Պապիկյանը, Գ. Պետրոսյանը: Երիտասարդ կոմունիստների հասարակական-քաղաքական և աշխատանքային ակտիվությամբ է նաև բացատրվում այն, որ միավորումում մշտապես ծնվում և կյանքի են կոչվում հայրենասիրական նախաձեռնություններ: Հիշատակության է արժանի մանվածքային ֆաբրիկայի երիտասարդ կոմունիստներ, մանողներ Մ. Սարգսյանի, Լ. Կոռլկովսկայայի նախաձեռնությունը՝ «Համամիութենական կուսակցական XIX կոնֆերանսի բացման օրից՝ երեք օր աշխատել խնայված հումքի և էլեկտրաէներգիայի հաշվին»: Նախաձեռնությունը լայն արձագանք է գտել ֆաբրիկայում և արժանացել կոլեկտիվի հավանությանը:

Լենինականի կուսակցական կազմակերպություններում ևս կուսանդամության թեկնածուներն ու երիտասարդ կոմունիստները հիմնականում ունեն մշտական հանձնարարություններ, ակտիվ ու նախաձեռնող են աշխատանքում, կատարում և գերակատարում են արտադրական պլանները: Բայց մեզ անհանգստացնողը հարցի մյուս կողմն է: Դա վերաբերում է նրանց, մասնավորապես անդամության թեկնածուների հասարակական-քաղաքական ակտիվությանը: Վերջերս կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ մեր քաղաքի ՍՄԿԿ անդամության թեկնածուների 15—20 տոկոսը կուսակցական ժողովներում պասիվ է, հանդես չի գալիս ելույթներով ու հարցադրումներով: Այս երևույթը մենք պարտավոր ենք կարևորել և հետևողական անհատական աշխատանք տանել երիտասարդ կոմունիստների հետ, բարձրացնել թեկնածուական ստաժի դերն ու նշանակությունը՝ երիտասարդ կոմունիստի գաղափարական հասունության, ակտիվության ուժեղացման, վերակառուցման, արտադրական ու հասարակական կյանքի բարեփոխումների գործում նրանց ջանքերի ու անձնական ներդրման ըստ ամենայնի մեծացման համար:

Մենք դեռևս ցանկալի արդյունքներ չունենք թեկնածուական ստաժի նշանակության լիարժեք բարձրացման գործում, որովհետև պատշաճ խստապահանջություն չի ցուցաբերվում թեկնածությունից անդամ անցնելու հարցերի լուծման ժամանակ: Երբեմն ստացվում է այնպես, որ ՍՄԿԿ անդամ ընդունվելուց հետո մարդը քիչ է մտահոգվում իր գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացման, հասարակական ակտիվ կենսադիրք դրսևորելու հարցերով: Իսկ ինչպե՞ս է ստուգվում թեկնածուի պատրաստվածության աստիճանը կուսակցությանը անդամագրվելու հարցերի քննարկման ժամանակ: Աշխատանքային գործունեության համառոտ բնութագիր, մեկ-երկու հարց ՍՄԿԿ կանոնադրությունից, և գործը համարվում է ավարտված: Բայց չէ՞ որ կանոնադրության սերտումը դեռևս գաղափարական հասունության չափանիշ չէ: Նման պայմաններում, ցավոք, հաղթող է դառնում այն մտայնությունը, թե թեկնածությունից անդամ դառնալը այնքան էլ դժվար չէ: Խոսելով այս հարցերի մասին, իհարկե, չենք ընդգծում դրանց ընդհանուր լինելը, բայց գործի խիստ կարևորությունը ստիպում է խորհել նույնիսկ բացառությունների վերացման, աշխատանքում առկա ստերիոտիպերի հաղթահարման շուրջ:



Մեր ամենօրյա աշխատանքն ուղղված է նաև երաշխավորողների պատասխանատվության բարձրացմանը: Մեզ համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ կանոնադրության այն պահանջը, որ «Երաշխավորողները կուսակցական կազմակերպությունների առջև պատասխանատվություն են կրում երաշխավորյալների քաղաքական, գործարար և բարոյական հատկանիշների բնութագրման օբյեկտիվության համար, օգնում են նրանց գաղափարաքաղաքական աճին»: Եվ մենք սկզբնական կուսկազմակերպությունների առջև խնդիր ենք դնում ղեկավարվել այդ պահանջով, հետևել, որպեսզի երաշխավորողներն իրենց պատասխանատու զգան երաշխավորվածի գործունեության ու վարքագծի համար: Այս առումով աշխատանքի ուսանելի փորձ է կուտակվել մագնիսահաղորդիչների գործարանի կուսկազմակերպությունում: Կուսբյուրոյի քարտուղար Գ. Եղիազարյանի մոտ հաճախակի են հավաքվում երաշխավորողները, զրուցում իրենց անելիքների մասին, փոխադարձ տեղեկություններ ստանում երիտասարդ կոմունիստների, նրանց ակտիվության, վարքագծի վերաբերյալ: Կուսբյուրոյի հետևողական աշխատանքը քիչ դեր չի խաղացել երիտասարդ կոմունիստների դաստիարակության համար երաշխավորողների պատասխանատվության բարձրացման գործում: Այդ տեսակետից հատկանշական է աշխատանքի վետերան, 1955 թ. ՍՄԿԿ անդամ, գործարանի առաջին բաժնի պետ Ս. Անդրեասյանի գործունեությունը: Ձեռնարկությունում աշխատած տասը տարիների ընթացքում նրա երաշխավորությամբ ՍՄԿԿ շարքերն են ընդունվել գործիքաշինական տեղամասի հղկող բանվորներ Վ. Սոսյանը, Ս. Խաչատրյանը, գործիքագործ-փականագործ Ա. Սիմոնյանը, ջերմամշակող բանվորներ Ս. Հարությունյանը, Գ. Ամիրյանը, խառատ Վ. Թորոսյանը: Ս. Անդրեասյանի առաջարկով գործարանի կուսկազմակերպությունը Վ. Սոսյանին, Ս. Հարությունյանին, Ա. Խաչատրյանին, Գ. Ամիրյանին գործուղել է սովորելու մարքսիզմ-լենինիզմի համալսարան:

Երաշխավորողի իր պարտականությունները մեծ պատասխանատվությամբ է կատարում նաև տեխնիկական վերահսկիչ, ՀԿԿ Լենինականի քաղկոմի անդամ Ս. Հովհաննիսյանը, որը դարձել է երիտասարդ կոմունիստների իսկական բարեկամն ու խորհրդատուն: Նրա երաշխավորությամբ ՍՄԿԿ շարքերն անցած Օ. Քուրդյանը, Ս. Սաֆարյանը և ուրիշներ աշխատանքի նկատմամբ իրենց ունեցած վերաբերմունքով, հասարակական ակտիվ կենսադիրքով լավ օրինակ են գործարանի ողջ երիտասարդության համար:

Սակայն ինքնաքննադատաբար պետք է ասել, որ երաշխավորողների հետ տարվող աշխատանքը մի շարք կազմակերպություններում բավարար չէ: Վերցնենք նույն «Միկրոէլեկտրաշարժիչ» գործարանի սկզբնական կուսկազմակերպության օրինակը: ՍՄԿԿ կանոնադրության 8-րդ պարագրաֆի համաձայն կուսակցության շարքերից դուրս թողնելով ՍՄԿԿ անդամության թեկնածուին, այս կազմակերպությունը, սակայն, հարկ չի համարել որևէ խոսք ուղղել երաշխավորողների հասցեին: «1987 թվականին ՍՄԿԿ-ի մեջ ընդունելության արդյունքների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի՝ ընթացիկ տարվա ապրիլին ընդունած որոշման մեջ իրավացիորեն ասվում է. «Կուսակցական շատ կազմակերպություններ խիստ պահանջներ չեն ներկայացնում ՍՄԿԿ-ի այն անդամներին, ովքեր կուսակցության մեջ երաշխավորել են անարժան մարդկանց»: ՍՄԿԿ շարքերի համալրման գործում եղած թերությունների շտկման ուղիները հստակ կերպով տրված են ՍՄԿԿ Կենտկոմի կուսակցության մեջ ընդունելության և կուսշարքերի ամրապնդման գործում Տաշքենդի մարզային կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին որոշման մեջ, ՍՄԿԿ Կենտկոմի այլ փաստաթղթերում, որոնցով առաջադրված խնդիրների իրականացումը Լենինականի կուսակցական կազմակերպությունները համարում են իրենց պարտքը:

Այսօր կուսշարքերի համալրման և ամրապնդման նպատակով ծավալած աշխատանքում մեզ համար գործողության ուղեցույց են ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի նոր պահանջները:

---

# ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ՆՐԱ ՕՐԳԱՆԸ

**Շ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

Մեր ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ըստ արժանվույն գնահատելով այն ավանդը, որ մասսայական ինֆորմացիայի միջոցները ներդնում են վերակառուցման գործում, մշտապես հոգում է մամուլի հեղինակության, նրա կազմակերպող ու մոբիլիզացնող դերի հետագա բարձրացման մասին: Մամուլն այժմ օգտվում է կուսակցության Կենտկոմի այնպիսի ուշադրությունից, ինչպիսին չի եղել անցյալում: Եվ դա առանձնահատուկ ուժով երևաց ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում, որտեղ շահամետ և գործարար խոսակցություն ծավալվեց նաև մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության շուրջ: Նշվեց, որ, հանդես գալով որպես հասարակական կարծիքի հզոր ամբիոն, մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն քիչ բան չեն արել պատմական ճշմարտությունը և արդարությունը վերականգնելու, թերությունները ու վրիպումները քննադատելու, վերակառուցման փորձը տարածելու, մարդկանց մեջ նորովի, ստեղծագործաբար ու նպատակամետ կերպով մտածելու և գործելու կարողություն մշակելու համար: Միաժամանակ սկզբունքային դիրքերից բացահայտվեցին ինչպես կենտրոնական, այնպես էլ տեղական մամուլի աշխատանքում գոյություն ունեցող թերությունները ու բացթողումները, արվեցին առաջարկներ դրանց վերացման համար: Այժմ, երբ վերակառուցումը կյանքի առաջին գիծ է դուրս բերել հրապարակայնությունը և որն իրագործվում է ամենատարբեր ձևերով, մամուլի օրգաններից պահանջվում է, չիջեցնելով այն ամենի քննադատության մակարդակը, ինչը խանգարում է վերակառուցմանը, գնալ դեպի պրոցեսների խորքը, ցույց տալ նոր հասարակության ձևավորման հակասականությունը, վահանի վրա բարձրացնել վերակառուցման առաջամարտիկներին, ընդհանրացնել և տարածել նրա իսկական աշխողեկների ուսանելի փորձը: «Մեզ,— ասաց Մ. Ս. Գորբաչովը կոնֆերանսում,— հարկավոր են կուսակցական մամուլի նոր որակ, նրա քաղաքականապես լուսավորող և կազմակերպող դերի նոր որակ»:

Իրոք, ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո թերթերի ու հանդեսների էջերում, հեռուստատեսային ու ռադիոհաղորդումներում բարձրացել է քննադատության մակարդակը, տպագրվում և հաղորդվում են պրոբլեմատիկ և հետաքրքրություն շարժող այնպիսի հոդվածներ, որոնք նվաճում են ավելի մեծ ընթերցարան ու լսարան, ծավալվում է օգտակար, անկաշկանդ բանավեճ և իսկական երկխոսություն ընթերցողի հետ: Զգալի չափերով աճել է խմբագրությունների փոստը, որը դարձել է մեր կյանքի իսկական ու ճշմարիտ բարոմետրը, բազմապատկվել է նամակների տպագրությունը: Շատ կարևոր է և այն, որ փոխվել է նամակների բնույթը: Մարդիկ սկսել են գրել ու խոսել ցավոտ հարցերի մասին, խոսել աներկյուղ, համարձակ և առանց քաշվելու: Ներկայումս շատ հրապարակումների թեմաները հուշում են նամակագիրները, նամակների հետքերով գնալով սուր և կենսական պրոբլեմներ են բարձրացնում լրագրողները: Մամուլը դարձել է մտքերի ազատ արտահայտման և հրապարակայնության յուրահատուկ դպրոց: Մամուլի այդ դեմոկրատական գծերը ցայտունորեն դրսևորվեցին հատկապես համամիութենական XIX կուսակցական կոնֆերանսի նախապատրաստման, ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների քննարկման ժամանակ: Դա զգացվում է նաև այժմ, երբ ամենուրեք պայքար է ծավալվել կոնֆերանսի որոշումների կենսագործման, վերակառուցման արագացման համար: Յուրաքանչյուր թերթի ու հանդեսի գրեթե ամեն մի համարում, յուրաքանչյուր հեռուստատեսային ու ռադիոհաղորդման ժամանակ հրապարակվում էին և այժմ էլ հրապարակվում են աշխատավորների նամակներ ու առաջարկներ, խոհեր ու ցանկություններ:

ԱՎԵՏԻՍՅԱՆ ՇԱՎԱՐՇ ՄՈՎՍԵՍԻ — ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ:



Սովետական մամուլի կարևոր օղակ են շրջանային թերթերը, որոնք գտնվում են կուսակցության քաղաքականության իրականացման առաջին գծում: Հայտնի է, որ ամեն մի շրջանային թերթ հանդիսանում է կուսակցության տվյալ շրջկոմի օրգանը: Միշտ է ասված, որ թերթը շրջկոմի դեմքն է և, կարդալով այն, կարելի է որոշակի կարծիք կազմել տվյալ կոմիտեի աշխատանքի ոճի ու մեթոդների մասին:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կուսակցության մի շարք շրջկոմներ որոշակի քայլեր են անում իրենց օրգանների ղեկավարման գործում լճացման ժամանակաշրջանում արմատացած ստերեոտիպի հաղթահարման, թերթերը զանազան ժողովների ու հանդիսավոր արարողությունների մասին միօրինակ գրված, ընդարձակ ու ձանձրալի հաշվետվություններ ու տարբեր բնույթի աղյուսակներ հրապարակող յուրատեսակ բյուլետենների վերածելու պրակտիկան վերացնելու համար: Շրջկոմներն այժմ ավելի լրջորեն են վերաբերվում թերթերի հեռանկարային պլանների քննարկմանն ու հաստատմանը և դրանց կատարմանը: Շրջկոմների քարտուղարները պարբերաբար հանդիպում են խմբագրական կոլեկտիվների հետ, մասնակցում նրանց ժողովներին ու հավաքներին, լսում լրագրողների առաջարկությունները, հոգում նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման մասին: Փոխվում է նաև վերաբերմունքը թերթերի քննադատական ելույթների նկատմամբ: Այժմ արդեն նման հոդվածների մեծ մասը քննարկվում է կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպություններում ու մարմիններում, առանձին հրապարակումների վերաբերյալ ընդունվում են կուսակցական կոմիտեների որոշումներ: Թերթերում սկսել են ավելի հաճախ երևալ «Մեր նյութերի հետքերով», «Ստացվել են պատասխաններ», «Թերթը ելույթ է ունեցել... հետո՞», «Մեր անտիպ նյութերի հետքերով» և այլ խորագրեր: Հասկանալի է, երբ թերթի քննադատությունը արժանանում է կուսակցական կոմիտեի օբյեկտիվ գնահատականին ու պաշտպանությանը, երբ նրա բարձրացրած պրոբլեմների լուծման նպատակով ձեռնարկվում են իրոք գործնական միջոցներ, և քննադատված մարդիկ էլ ճիշտ հետևություններ են անում, խմբագրության կոլեկտիվն ավելի է գոտեպնդվում, դառնում ավելի համարձակ: Այո՛ թերթն ավելի մարտունակ է լինում և լրագրողներն էլ խիզախում են այն ժամանակ, երբ շրջկոմը վստահում ու կանգնում է նրանց թիկունքին:

«Ջերմուկ» թերթի (Ազիզբեկովի շրջան) 1986 թվականի հուլիսի 31-ի համարում տպագրված հոդվածում, որը կրում էր «80 հազար մնացորդ» վերնագիրը, լրջորեն քննադատված էր Երևանի «Պլաստիկ» արտադրամիավորման Ազիզբեկովի մասնաճյուղի աշխատանքը: Նշված էր, որ ձեռնարկությունում չի նորացվում արտադրանքի տեսականին, մանկական խաղալիքները սպառող չեն գտնում, վերակառուցումն այստեղ ընթանում է կրիայի քայլերով: Խմբագրությունը, իհարկե, ստացավ միավորման գլխավոր դիրեկտորի ստորագրությամբ պատասխան, որի մեջ ասվում էր այն միջոցառումների մասին, որոնք պետք է իրագործվեին հոդվածում բարձրացված հարցերը լուծելու համար: Անցավ ավելի քան մեկ տարի և թերթը գնաց իր հրապարակման հետքերով: Կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ վիճակը ոչ միայն չի լավացել, այլ որոշ տեղամասերում նույնիսկ վատացել է: Եվ ահա 1987 թ. նոյեմբերի 26-ի համարում «Անդրադառնալով տպագրվածին» խորագրի տակ թերթում հրապարակվեց «Երեխան խաղալիքը չի հավանում, մասնաճյուղը պլանը չի կատարում» ուշագրավ հոդվածը, որի մեջ ցույց էին տրված ձեռնարկության հետ մնալու պատճառները, բացահայտված էին գործարանի ղեկավարության և կուսկազմակերպության աշխատանքում գոյություն ունեցող թերությունները: Որոշակիորեն ասված էր և այն մասին, որ միավորումից ստացված պատասխանն, ըստ էության, խուսագրություն է, նրանում նշված միջոցառումները այնպիսի էլ մնացել էին թղթի վրա: Եվ ահա, թերթի երկրորդ ելույթն արժանացավ կուսակցության Ազիզբեկովի շրջկոմի ուշադրությանը: Հարցը նախապատրաստվեց և դրվեց շրջկոմի բյուրոյի քննարկմանը: Նշվեց, որ մասնաճյուղի դիրեկցիան և կուսակցական կազմակերպությունը անհրաժեշտ հետևություն չեն արել թերթի քննադատական ելույթներից, գործնական միջոցներ չեն ձեռնարկել արտադրության տեխնիկական վերազինման, արտադրանքի տեսականին նորացնելու և որակը բարձրացնելու, պետական առաջադրանքների կատարումն ապահովելու և սոցիալական հարցերը լուծելու նպատակով: Շրջկոմի բյուրոն կուսակցական տույժի ենթարկեց մասնաճյուղի դիրեկտոր Դ. Գալստյանին և գլխավոր ինժեներ Վ. Սարգսյանին, նշեց կուսկազմակերպության քարտուղար Թ. Նիկոլյանի անբավարար աշխատանքը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսկազմակերպության վերահսկողության ապահովման աս-

պարեզում: Մշակվեցին կոնկրետ միջոցառումներ ձեռնարկությունում գործերի վիճակը բարելավելու համար:

Թերթը հաճախակի է բարձրացնում բնակչության սպասարկման պրոբլեմները: «Ջերմուկի» էջերում քննադատական մի շարք նյութեր են տպագրվել առևտրի ցանցում տիրող անբարեհաջող վիճակի, սպասարկման ցածր կուլտուրայի, նեգատիվ երևույթների մասին: Ու թեև թերթի որոշ ելույթներ քննարկվել են շրջկոմի վարչության նիստերում, բայց դրանք մեծ մասամբ կրել են ձևական բնույթ, ճշմարիտ դիրքերից չեն գնահատվել փաստերը, վճռական քայլեր չեն արվել սպասարկումը բարելավելու, առևտրի ցանցում տիրող խորթ բարքերը վերացնելու, խանութներում ու հասարակական սննդի կետերում կարգ ու կանոն հաստատելու, ցանցը ազնիվ ու վստահելի կադրերով ամրապնդելու համար: Ստացվել է այնպես, որ շրջկոոպի ղեկավարությունը և կուսկազմակերպությունը փաստորեն անտեսել են թերթի քննադատությունը, իսկ խմբագրություն ուղարկած պատասխաններն էլ միայն նրա համար էին, որ չասեին, թե թերթի ելույթները մնացել են անարձագանք: Բայց չէ՞ որ նման մոտեցումը հատուկ էր լճացման շրջանին և վկայում է բյուրոկրատիզմի ձգած խոր արմատների մասին: Դա նաև ցույց է տալիս, որ շատ մարդկանց մոտ դեռևս իշխում է հին մտածելակերպը: Լավ է, որ թերթի հետևողականությունը, նրա դիպուկ ելույթները այս անգամ էլ աննկատ չմնացին: Շուտով շրջկոմի բյուրո մտավ «Շրջկոոպի վարչության և կուսկազմակերպության կողմից «Ջերմուկ» շրջանային թերթում տպագրված քննադատական ելույթներին ընթացք տալու մասին» հարցը: Բյուրոն սկզբունքային գնահատական տվեց շրջկոոպի ղեկավարության և կուսկազմակերպության սխալ դիրքորոշմանը, թերթի քննադատական ելույթներին ըստ էության չպատասխանելու համար դատապարտեց նրանց վերաբերմունքը և կուսակցական պատասխանատվության ենթարկեց շրջկոոպի վարչության նախագահին ու կուսկազմակերպության քարտուղարին: Հանձնարարվեց կուսակցական ժողովներում և վարչության նիստերում քննության առնել թերթում հրապարակված նյութերը և միջոցառումներ մշակել բացահայտված թերությունները վերացնելու համար: Շրջկոմի բյուրոն միաժամանակ պարտավորեցրեց շրջանի բոլոր ձեռնարկությունների, տնտեսությունների ու հիմնարկների ղեկավարներին և կուսկազմակերպություններին ժամանակին արձագանքել թերթի ելույթներին, քննարկել տպագրված քննադատական հոդվածները և պատասխանել խմբագրությանը: Խմբագրության առջև խնդիր դրվեց ընթերցողներին իրազեկ պահելու նպատակով ստացված պատասխանները տպագրել թերթում, հրապարակայնորեն հանդես գալ խուսագրության ամեն մի փաստի դեմ:

Իր օրգանի մարտունակության բարձրացման, ելույթների ներգործունեության ապահովման հարցերին լուրջ ուշադրություն է նվիրում նաև կուսակցության Հոկտեմբերյանի շրջկոմը: Նա հետևում է, որ «Կոմունիզմի համար» թերթի բարձրացրած պրոբլեմներին և ուշագրավ հարցերին, նրա քննադատական հոդվածներին ժամանակին արձագանքեն կուսակցական ու սովետական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները: Ինքը՝ շրջկոմը ևս, անդրադառնում է թերթի ելույթներին, պաշտպանում նրա սկզբունքային գիծը: Այդ առումով բնորոշ է հետևյալ օրինակը: Այս տարվա փետրվարի կեսերին հայկական ատոմակայանի բուժմասից խմբագրությունում ստացվեց մի նամակ, որի տակ ստորագրել էին կոլեկտիվի 17 անդամներ՝ մեծ մասամբ կոմունիստներ: Հեղինակները մտահոգությամբ ու տագնապով գրում էին այն մասին, որ իրենց մոտ չի զգացվում վերակառուցման շունչը, իսկ դեմոկրատացման ու հրապարակայնության մասին էլ միայն անպտուղ խոսակցություններ են լինում, այն էլ դեպքից-դեպք: Բուժմասի պետ Ա. Հակոբյանի մասնագիտական պատրաստականության մակարդակն ու ղեկավարման եղանակները չեն համապատասխանում նրա զբաղեցրած պաշտոնին: Լրագրող Գ. Հակոբյանը եղավ տեղում, հանգամանորեն ծանոթացավ տեղ․մասի գործերին, զրուցեց կոլեկտիվի անդամների հետ, հանդիպեց և խոսեց նաև պետի հետ: Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ նամակի հեղինակների անհանգստությունը տեղին է: Իրոք, բուժմասի պետն աշխատում է հրամայական-վարչարարական մեթոդներով, հաշվի չի նստում կոլեկտիվի անդամների հետ: Շատ հաճախ անտեսում է կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների որոշումները, հարցերը լուծում է միայնակ, սուբյեկտիվ մոտեցում է դրսևորում կադրերին գնահատելիս ու տեղաշարժելիս: Նման արատավոր աշխատաոճի հետևանքով կոլեկտիվում ստեղծվել է անառողջ մթնոլորտ, որը և բացասաբար է անդրադառնում բուժմասի գործերի վրա: Երկար ժամանակ ձգձգվում է հիվանդանոցի շենքի նորոգումը, որոշ կաբինետներ լավ չեն կահավորված, լուրջ թերություններ կան հիվանդների բուժման, նրանց սպասարկման գործում: Անցյալ տարվա վերջին կայացած սկզբնական կուսկազմակերպության հաշվետու ժողովն անբավարար գնահատեց կազմակերպության և բուժմասի ղեկավարության աշխատանքը վերակառուցման բնագավառում: Սպասվում էր, որ դրանից անհրաժեշտ հետևություններ կարվեին դրությունը շտկելու համար: Բայց, որքան էլ տարօրինակ է, դա տեղի չունեցավ և վիճակն ավելի վատացավ: Նշված և նման ուրիշ փաստեր էին շարադրված շրջանային թերթի այս տարվա փետրվարի 20-ի համարում տպագրված «Երբ մարդը տեղում չէ, կամ անառողջ մթնոլորտ առողջապահական հիմնարկում» վերնագրով հոդվածում: Նրանում տրված էր կոլեկտիվում տիրող իրավիճակի ճշմարիտ գնահատականը, բերված էին բուժմասի պետի աշխատանքում արմատացած կամայականության մի շարք փաստեր: Բուժմասի կոլեկտիվը բուժման լուրջ կարիք է զգում և այդ մասին պետք է մտածեն վերադաս կազմակերպությունները՝ այսպիսին էր թերթի հետևությունը:



Թերթի ելույթն, իհարկե, աննկատ չմնաց: Հոդվածը սկզբում քննարկվեց բուժսանմասի սկզբնական կուսկազմակերպության ժողովում, ապա ատոմակայանի կուսկոմիտեի նիստում: Նշվեց, որ նրանում բերված փաստերը համապատասխանում են իրականությանը, մշակվեցին միջոցառումներ եղած թերությունները վերացնելու համար: Միաժամանակ բարձրացվեց բուժմասի ղեկավարությունն ուժեղացնելու նպատակով զբաղեցրած պաշտոնում պետի թողնելու աննպատակահարմարության հարցը: Բնական է, որ նման իրադրության մեջ իր խոսքը պետք է ասեր կուսշրջկոմը: Եվ ահա շրջկոմի բյուրոն քննարկեց հոդվածի քննարկման արդյունքների վերաբերյալ հարցը: Բուժմասի աշխատանքներում տեղ գտած կոպիտ խախտումների ու բացթողումների, կոլեկտիվում աշխատանքային ու բարոյական անառողջ մթնոլորտ ստեղծելու համար բյուրոն Ա. Հակոբյանի հետագա աշխատանքը 130 բուժմասի պետի պաշտոնում գտավ ոչ նպատակահարմար: Միաժամանակ հանձնարարվեց սկզբնական կուսկազմակերպությանն ու կուսկոմիտեին գործնական միջոցներ ձեռնարկել բուժմասի գործունեությունը բարելավելու համար:

Հետաքրքրությամբ են ընթերցվում «Կոմունիզմի համար» թերթում սովետական բանակում ծառայող հոկտեմբերյանցի զինվորների մասին նյութերը, որոնք հրապարակվում են «Միրով բանակայինի մասին» խորագրի ներքո:

Հաճախ թերթի այս կամ այն կարևոր հոդվածը շրջկոմին հուշում է բարձրացված հարցը դիտել ավելի լայն ասպեկտով, կատարել ուսումնասիրություններ շրջանի մասշտաբով և ապա քննարկել այն: Այդ առումով որոշակի հետաքրքրություն է ներկայացնում Ղափանի կուսշրջկոմի պրակտիկայից վերցված հետևյալ օրինակը: «Ղափան» թերթի անցյալ տարվա հունիսի 9-ի համարում տպագրվել էր «Որոշումն ընդունվեց... հետո՞» վերնագրով հետաքրքրաշարժ հոդվածը, որը վերաբերում է ներկուսակցական կյանքի այնպիսի լուրջ բնագավառի, ինչպիսին որոշումների կենսագործումն է և կատարման ստուգումը: Այդ հարցը ավելի է կարևորվում վերակառուցման ներկա փուլում, երբ հետևողական պայքար է մղվում լճացման ժամանակաշրջանին բնորոշ որոշումներ ընդունելու և դրանց կատարման մասին չհոգալու արատավոր մեթոդների դեմ: Հոդվածում քննադատվում էր լուսատեխնիկական գործարանի կուսկազմակերպության անբավարար աշխատանքն այդ բնագավառում: Ասված էր, որ որոշումները հաճախ գրվում են կազմակերպության քարտուղարի կամ զեկուցողի կողմից, հաշվի չեն առնվում ելույթ ունեցող կոմունիստների առաջարկները: Դրանցում միշտ կարելի է հանդիպել այնպիսի հերթապահ նախադասությունների, որոնք սկսվում են «պարտավորեցնել», «պահանջել» կամ էլ «զգուշացնել» ու «նախազգուշացնել» մաշված բառերով, հանձնարարականները լինում են շատ ընդհանուր, զուրկ կոնկրետությունից, հաճախ նաև բոլորովին անդեմ: Ժողովների մի շարք որոշումներում նշումներն այն մասին, թե այս կամ այն որոշման կատարմանն անդրադառնալ այսքան ժամանակ հետո և դրա մասին ինֆորմացիա տալ կոմունիստներին, այդպես էլ մնում են թղթի վրա: Հոդվածը արժանացավ կուսշրջկոմի ղեկավարների ուշադրությանը, առիթ դարձավ այդ հարցը ուսումնասիրել շրջանի մասշտաբով: Շրջկոմը հանգամանալից ուսումնասիրություններ կատարեց «Էլեկտրոն», ավտոնորոգման գործարանների, ավտոձեռնարկության, «Քաջարանշին» տրեստի և ուրիշ կուսակցական կազմակերպություններում: Այնուհետև «Ղափան» թերթի «Որոշումն ընդունվեց... հե՞տո» հոդվածի մասին հարցը քննարկվեց շրջկոմի բյուրոյի նիստում: Նշվեց, որ շրջանի շատ սկզբնական կուսկազմակերպություններում դեռևս չի մշակվել ու չի իրագործվում ընդունված որոշումների կենսագործմանը վերահսկելու և կատարման ստուգման հստակ համակարգ: Կոմունիստներին ինֆորմացիա չի

տրվում նախորդ ժողովներում ընդունված որոշումների կատարման ընթացքի մասին: Շատ որոշումներում բացակայում է կոնկրետությունը, գործնականությունը և հիմնավորվածությունը, չեն նշվում հանձնարարված գործի համար պատասխանատու մարդկանց անուններն ու կատարման ժամկետները: Շրջկոմի բյուրոն այդ հարցի մասին ընդունեց որոշում: Հանձնարարվեց լուսատեխնիկական գործարանի կուսկազմակերպության բյուրոյին անհրաժեշտ հետևություններ անել թերթի քննադատական ելույթից, վճռականորեն բարելավել որոշումների կատարման ստուգման դրվածքը: Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների առջև խնդիր դրվեց արմատապես վերակառուցել ներկուսակցական աշխատանքը, ձգտել այն բանին, որ ընդունվող որոշումները լինեն կոնկրետ ու պարտավորեցնող, դրանցում հաշվի առնվեն կոմունիստների առաջարկներն ու դիտողությունները, գործնական վերահսկողություն սահմանվեն որոշումների կատարման նկատմամբ և կոմունիստներին ինֆորմացիա տրվի այդ մասին:

Հանրահայտ ճշմարտություն է, որ թերթի ուժը կուսակցական ղեկավարման մեջ է: Այդ ղեկավարման արդյունավետ ձևերից մեկն էլ կուսակցական կոմիտեներում խմբագրությունների հաշվետվությունների քննարկումն է, թերթերի գործունեության տարբեր բնագավառներին վերաբերող հարցերին անդրադառնալը: Այս պրակտիկան կիրառում են Թումանյանի, Արտաշատի, Սևանի, Ախուրյանի և մի շարք ուրիշ շրջկոմներ: Թումանյանի կուսշրջկոմի ղեկավար աշխատողները հաճախ են հանդիպում լրագրողների հետ, քաղսովետը հոգում է նրանց բնակարանային պայմանների բարելավման մասին: Խմբագրության կուսկազմակերպության ժողովներից մեկում ելույթ է ունեցել կուսշրջկոմի առաջին քարտուղար Ա. Ծահվերդյանը, որը կոլեկտիվին պատմել է վերակառուցման ներկա փուլում շրջանի առջև դրված խնդիրների և դրանց իրականացման գործում թերթի կոնկրետ անելիքների մասին: Անցյալ տարի շրջկոմի բյուրոն քննարկել է թերթի տպագրության որակի բարձրացման, տպարանի հնարավորությունների ընդլայնման հարցը, իսկ այս տարվա մայիսին շրջկոմի պլենումը լսել է շրջկոմի բյուրոյի անդամ, «Լոռի» թերթի խմբագիր Ա. Թամրազյանի հաշվետվությունը: Նշվել է, որ խմբագրության կոլեկտիվը որոշակի ջանքեր է գործադրում ժամանակի պահանջների ոգով իր աշխատանքը վերակառուցելու համար: Թերթը սկսել է ուշագրավ նյութեր հրապարակել տնտեսական ռեֆորմի կիրառման ու գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում առաջավոր կոլեկտիվների կուտակած փորձի, սոցիալական ոլորտի, աշխատավորների դաստիարակության տարբեր հարցերի մասին: Աշխուժացել է քննադատությունը, ավելի մեծ թվով նամակներ են տպագրվում, հաճախ են հրապարակվում պատասխաններ: Բայց դրանք առաջին քայլերն են, որոնք խորացման և ընդլայնման կարիք են զգում: Պլենումը խմբագրի և կոլեկտիվի առջև խնդիր դրեց համակողմանիորեն ու գործիմացությամբ լուսաբանել մեր կյանքում և շրջանում տեղի ունեցող վերափոխումները, օգնել նոր մտածողության ձևավորմանը, ցույց տալ վերակառուցման աշխղեկների փորձը, հյամարձակորեն քննադատել բյուրոկրատիզմի և անտարբերության դրսևորումները, սկզբունքային դիրքերից բացահայտել կյանքի տարբեր ոլորտներում գոյություն ունեցող թերություններն ու բացթողումները, պայքարի սլաքն ուղղել չարաշահումների ու հավելագրումների, բոլոր տեսակի բացասական այլ երևույթների դեմ, չրի երես հանել նրանց, ովքեր արգելակում են վերակառուցմանը:

Ինչպես հայտնի է, կուսակցության համամիութենական XIX կոնֆերանսը բանաձև ընդունեց նաև բյուրոկրատիզմի դեմ պայքարի մասին: Անհրաժեշտ համարվեց պետական ու հասարակական հիմնարկները մատչելի դարձնել աշխատավորների համար, վերացնել ամեն տեսակ ձգձգում, քաշքշուկ և ձևամոլություն, բացառել այն իրավիճակները, երբ մարդ իրեն անզոր է զգում բյուրոկրատի անտարբերության ու համառության հանդեպ: Մասսայական ինֆորմացիայի միջոցների պարտքն է բացահայտել բյուրոկրատիզմի ակունքներն ու դրսևորումները, ցույց տալ դրա դեմ պայքարի լավագույն օրինակներ: Շրջանային թերթերում կարելի է հանդիպել այնպիսի հրապարակումների, որոնց մեջ խստորեն քննադատվում են բյուրոկրատներն ու չինովնիկները, որոնք դեռևս շարունակում են գործել առանձին հիմնարկներում ու ձեռնարկություններում:

«Մեզանում շատ է խոսվում բյուրոկրատական քաշքշուկի վերացման մասին, իսկ մեր գործարանում ե՞րբ պետք է վերջ տրվի գլխավոր հաշվապահ Լ. Ղազարյանի աղայական վերաբերմունքին»: Այսպիսի տողերով էր սկսել «Սևան» թերթի խմբագրությանն ուղղած իր նամակը ապակեմեկուսիչների գործարանի տնտեսագետ



Գոհար Խաչատրյանը: Այնուհետև նա պատմել է իր նկատմամբ ցուցաբերված ոչ մարդկային վերաբերմունքի մասին: Նամակը շարժեց խմբագրության աշխատողների ուշադրությունը և լրագրող Յու. Խաչատրյանը գնաց ահազանգի հետքերով:

Ի՞նչ ցույց տվեց ստուգումը, ի՞նչն էր վրդովել երիտասարդ մասնագետին: Անցյալ տարվա աշնանը Գոհար Խաչատրյանը դիմել էր գործարանի դիրեկցիային իր՝ երիտասարդ ընտանիքի բնակարանային պայմանները բարելավելու նպատակով վարկ ստանալու խնդրանքով: Դիրեկցիան հարգել էր դիմումը և օրենքով սահմանված կարգով դուրս գրել համապատասխան գումար: Իր համաձայնությունն էր տվել նաև գործարանի արհմիութենական կոմիտեն: Եվ, երբ դիմումը համապատասխան մակագրությամբ հասել էր գլխավոր հաշվապահին, հենց այստեղ էլ, ինչպես գրել է թերթը «խոփը քարին դեմ առավ», քանի որ գլխավոր հաշվապահի մտքումը չկար բավարարելու նրա պահանջը: Եվ ահա չոր իշխանավորի կեցվածք ընդունած նա սկսեց պահանջել զանազան տեղեկանքներ: Երիտասարդ ամուսինները, շաբաթներ շարունակ, բախելով զանազան դռներ ձեռք բերեցին ու ներկայացրին պահանջվող բոլոր փաստաթղթերը: Անցան ամիսներ: Այս անգամ արդեն, երբ սպառվեցին տեղեկանքների պահանջի հնարավորությունները և պետք է, որ վերջնականապես լուծվեր հարցը, անուղղելի բյուրոկրատը իր այցելուին ցույց տվեց դուռը: Իսկ երբ Գ. Խաչատրյանն ասաց՝ չէ որ պետությունը որոշել է. նա պատասխանեց. «Պետությունը որոշել է, բայց ես չեմ որոշում, գնացեք, որտեղ ուզում եք բողոքեք»: Հենց գլխավոր հաշվապահի նման վերաբերմունքի մասին էր «Սևան» թերթի այս տարվա մարտի 26-ի համարում տպագրված հոդվածը, որը կրում էր «Պետությունը որոշել է՝ հաշվապահը՝ մերժել» վերնագիրը և որը հրապարակվել էր «Թղթակիցը գնում է նամակի հետքերով» խորագրի տակ: Այս խորագիրն, ի դեպ, վերջերս սկսել է ավելի հաճախ երևալ նաև ուրիշ թերթերում: Դա, իհարկե, խրախուսելի է: Լրագրողներն այդ ճանապարհով թերթ են բերում կյանքն ինչպես որ կա, խարազանում նրանց, ովքեր, կառչելով հնին, խոչընդոտներ են ստեղծում վերակառուցման ճանապարհին: «Սևան» թերթի ելույթն, իհարկե, իր ազդեցությունն ունեցավ: Մայիսի 19-ի համարում տպագրվել է ապակեմեկուսիչների գործարանի դիրեկտոր Է. Սահակյանի և կուսբյուրոյի քարտուղար Ա. Հայրապետյանի պատասխանը, որի մեջ ասված է. «Բնակարանային պայմանների բարելավման համար վարկ ստանալու խնդրանքով գործարանի երիտասարդ աշխատակցուհի Գոհար Խաչատրյանի ներկայացրած փաստաթղթերն օրինական են, պահանջը՝ հիմնավորված: Նրա խնդրանքը բավարարված է»: Այո՛, երիտասարդ մասնագետը ստացավ վարկը: Բայց չէ՞ որ հարցի լուծումն այդպես չէր բարդանա ու չէր ձգձգվի, եթե գլխավոր հաշվապահի աթոռին նստած չլիներ անուղղելի բյուրոկրատն ու մերկ իշխանավորը: Ցավոք, գործարանի ղեկավարների պատասխանից չի երևում՝ պատժվե՞լ է, արդյոք, նա, թե ոչ:

Ուսումնասիրությունները միաժամանակ ցույց են տալիս, որ շրջանային թերթերը դեռևս դանդաղ են վերակառուցվում, նրանց աշխատանքում նկատվում են էական թերություններ ու բացթողումներ: Միշտ չէ, որ հաջողվում է հիմնավոր ու տպավորիչ ներկայացնել վերակառուցման ավանգարդում ընթացողների փորձն ու ձեռք բերած նվաճումները: Շատ հրապարակումներում պակասում են խորությունն ու պրոբլեմների մասշտաբայնությունը, երբեմն քննադատությունը չի հասցեագրվում, որոշ նյութերում իշխում են գրելաձևի միօրինակությունն ու տրաֆարետը, երբեմն անտեսվում է այնպիսի կարևոր գործոնի դերը, ինչպիսին տպագրվող նյութերի ներգործունության ապահովումն է: Առանձին թերթերում քիչ են օգտակար բանավեճերն ու կարծիքները մեր կյանքի ամենատարբեր բնագավառների, մեզանում նկատվող բացասական երևույթների դեմ մղվող պայքարի հարցերի մասին: Այս և նման թերությունների հաղթահարումը պետք է լրջորեն զբաղեցնի կուսշրջկոմներին, մշտապես գտնվի նրանց տեսադաշտում:

Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի որոշումների կենսագործմանը: Կոնֆերանսը ուղենիշային փուլ էր վերակառուցման գործում, կարևոր իրադարձություն կուսակցության ու ժողովրդի կյանքում: Նրա ընդունած որոշումները հսկայական նշանակություն ունեն երկրի ճակատագրի համար, դրանք մեզանում կատարվող հեղափոխական վերափոխումների հզոր արագացուցիչն են: Մեծ և պատասխանատու են մասսայական ինֆորմացիայի միջոցների առջև դրված խնդիրները սովետական հասարակության նորացման ներկա ժամանակաշրջանում: Մամուլի խնդիրները որոշակիորեն շարադրված են հրապարակայնության մասին կոնֆերանսի բանաձևում, իսկ հրապարակայնությունը վերակառուցման սուր զենքն է: Թերթերը, հանդեսները, հեռուստատեսությունը և ռա-

դիոն կոչված են խորը և համակողմանիորեն արտացոլելու կուսակցական, պետական և հասարակական կազմակերպությունների բազմաբովանդակ գործունեությունը, ծառայելու սոցիալիստական հասարակության ամրապնդմանը, ակտիվորեն պրոպագանդելու վերակառուցման բնագավառում կուտակված փորձը, լինելու երկրի իրավիճակի համաժողովրդական վերահսկողության հուսալի գործիք: Հրապարակայնությունը լրագրողներից պահանջում է բարձր գաղափարայնություն, բանիմացություն, պրոֆեսիոնալ էթիկայի նորմերի խստիվ պահպանում, հրապարակումների պարտադիր հավաստիություն: Շրջանային թերթի յուրաքանչյուր ելույթ պետք է լինի ճշմարտացի, հիմնավորված ու փաստարկված: Այստեղ անթույլատրելի են հախուռնությունն ու մոտավորությունը, առավել ևս սենսացիաները: Թերթը, իհարկե, չպետք է սխալվի, իսկ եթե սխալվում է, անհարկի վիրավորանք պատճառում մարդուն կամ հրապարակում ոչ ճիշտ տվյալներ, ապա նա պետք է հրապարակորեն ընդունի իր սխալը: Ճիշտ է, դժվար է ուղղում տպելը, բայց եթե դրա անհրաժեշտությունը կա, չպետք է համառել: Հարկավոր է ելնել այն սկզբունքային դրույթից, որ քննադատության համար մամուլն ու լրագրողները ևս փակ գոտի չեն և հրապարակայնությունն էլ նրանց մենաշնորհը դառնալ չի կարող:

Շրջանային թերթերի էջերում պետք է հոդվածներով հանդես գան կուսակցական ու սովետական աշխատողները, արտադրության մարդիկ, մտավորականության ներկայացուցիչները: Թերթի հրապարակումներն առավել արդյունավետ կլինեն, եթե, ինչպես հարկն է, օգտագործվեն մամուլի ակտիվիստների, լրագրողների կամավոր օգնականների՝ հասարակական թղթակիցների ուժերը: Որքան լայն լինի խմբագրության հեղինակային ակտիվը, այնքան կմեծանա նրա ուժը: Կուսակցության շրջկոմները կոչված են նաև ղեկավարելու թղթակցական շարժումը, հետևելու, որ խմբագրությունները ակտիվիստներին ընդգրկեն ստուգայցերում ու հսկիչ պոստերում, կազմակերպական աշխատանքի այլ ձևերում:

Բանիմացորեն ղեկավարել և ճիշտ ուղղություն տալ իր օրգանի գործունեությանը, լրագրողների ջանքերը նպատակամղել կուսակցության XIX կոնֆերանսի առաջադրած մեծամասշտաբ խնդիրների վերակառուցման ծրագրերի հաջող իրականացմանը, իր օրգանը դարձնել մարտունակ՝ այս է կուսշրջկոմների կարևոր խնդիրներից մեկն այժմ:

---

Մարդկային գործոն. ակտիվացման ուղիները

# ԱՆՁՆԱԿԱՆ ՇԱՀԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Ջ. ՍԱՐԴԱՐՅԱՆ**

ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ վերակառուցումը խոր տեղաշարժեր է հարուցում սոցիալիստական արտադրական հարաբերությունների ողջ համակարգում: ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Նախատեսված խնդիրների հաջող լուծումը կուսակցությունը կապում է **մարդկային գործոնի դերի բարձրացման հետ...** Որքան մասշտաբային են պատմական նպատակները, այնքան կարևոր է տնտեսատիրոջ նման միլիոնավոր մարդկանց շահագրգռված, պատասխանատու, գիտակից ու ակտիվ մասնակցությունը դրանց իրագործմանը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 196):

Սոցիալիստական արտադրական հարաբերություններում մարդկային գործոնի գլխավոր արտահայտություններից մեկը անձնական շահն է, և սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի իրացումը կատարվում է հենց այդ շահի ակտիվացման միջոցով: Այժմ կասկած չի հարուցում այն հանգամանքը, որ մարդկային գործոնի ակտիվացումն անհնար է առանց աշխատավորների անձնական նյութական շահագրգռության: Աշխատանքի խթանման սկզբունքները դրսևորվում են մարդկանց պահանջմունքները բավարարող նյութական բարիքների արտադրությամբ ու բաշխմամբ պայմանավորված հարաբերությունների ոլորտում, որտեղ արտացոլվում են սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գլխավոր սկզբունքներն ու բովանդակությունը, ըստ աշխատանքի բաշխման օրենքի իմաստը:

Էկոնոմիկայի վերակառուցումը, արտադրության ինտենսիվացումը, արդյունավետության բարձրացմանն ուղղված տնտեսական նոր մեխանիզմի ստեղծումը կանխորոշում են բաշխման հարաբերությունների կատարելագործման բնույթն ու ուղիները, որոնք ակտիվ ներգործություն ունեն հասարակական արտադրության զարգացման, անհատական ու կոլեկտիվ շահագրգռության աճի, մարդկանց կենսամակարդակի ու ապրելակերպի վրա: Հասարակական արտադրության վերջին տարիների պրակտիկայից կարելի է բերել բազում օրինակներ, երբ մարդու անձնական նյութական շահագրգռությունը, նրա ստեղծագործական ակտիվությունը, տնտեսավարման սոցիալիստական սիստեմի մյուս առավելությունների ֆոնի վրա, ապահովում են հասարակական աշխատանքի արտադրողականության աննախադեպ վերելք: Եվ, հակառակը, նյութական շահագրգռության և այդ ուղղությամբ տրվող միջոցառումների անտեսումը հանգեցնում է արտադրության լճացման, սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերի դանդաղեցման: Քիչ չեն նաև փաստերը, որոնք վկայում են հակառակ երևույթի մասին, երբ անձնական շահերը ճնշվում են աշխատանքի վարձատրման համակարգում տեղ գտած թերությունների հետևանքով: Վերջին տասնամյակներում աշխատանքի վարձատրման հավասարեցման միտումները խարխլում էին աշխատավարձի խթանող դերը, արգելակում աշխատանքի արտադրողականության աճը: Եվ, ըստ

---

ՍԱՐԴԱՐՅԱՆ ՋԱՎԱՀԻՐ ԽԱՉԻԿԻ — Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի ասիստենտ:

էության, աշխատավարձի մակարդակը գործնականում կախված չէր արդյունավետությունից:

Անհրաժեշտ է նշել, որ վարձատրության հավասարեցումն ըստ աշխատանքի բաշխման՝ սոցիալիստական սկզբունքի խախտման արդյունք է և կատարում է էկոնոմիկայի վերակառուցումը արգելակող գործոնի դեր: Իրավամբ, հավասարեցում նշանակում է, որ բանվոր-ծառայողների մի մասը, որի աշխատանքային ներդրումը արտադրության մեջ առավել բարձր է, պարբերաբար լրիվ չի ստանում իր հասանելիքն այն ժամանակ, երբ աշխատավորների մյուս մասը, որի աշխատանքի արդյունավետությունը միջինից ցածր է կամ դրան հավասար, ստանում է անաշխատ եկամուտներ: Վերջիններս վարձատրության հավասարեցման պայմաններում ապրում են աշխատավորների առաջին մասի հաշվին և շահագրգռված չեն էկոնոմիկայի վերակառուցման մեջ:

Այսպիսով, հասարակական արտադրության մեջ անձնական տնտեսական շահերի և կամ նույնն է՝ նյութական շահագրգռության ուժեղացումը էական նշանակություն ունի սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման համար: Իհարկե, միայն սրանով չի պայմանավորված մեր էկոնոմիկայի առաջընթացը: Իրականացվում է անցումը տնտեսավարման առավելապես վարչական մեթոդներից տնտեսական մեթոդներին, կառավարման ամբողջական, արդյունավետ ու ճկուն համակարգի ստեղծումը: Սակայն իրավամբ կարելի է ասել, որ տնտեսավարման մեխանիզմի վերակառուցման միջոցառումների համակարգում աշխատավորների նյութական շահագրգռության հարցը կարևորներից մեկն է: Զուր չէ, որ Վ. Ի. Լենինը տնտեսական հաշվարկի հետ միասին մեծ նշանակություն էր տալիս աշխատավորների նյութական շահագրգռության սկզբունքին: Նա ընդգծում էր, որ տնտհաշվարկն ու նյութական շահագրգռությունը կազմում են օրգանական միասնություն: Տնտհաշվարկը հիմնված է նյութական շահագրգռության վրա և խթանում է դրա զարգացումը: Եվ այսօր էլ միանգամայն արդիական են հնչում լենինյան խոսքերը. միլիոնավոր մարդկանց կարելի է տանել դեպի կոմունիզմ «ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխությամբ ծնված խանդավառության օգնությամբ՝ հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռության, տնտեսական հաշվարկի վրա» (ԵԼԺ, հ. 44, էջ 181):

Սակայն ինչպե՞ս լուծել նյութական շահագրգռության հարցը գործնականում: Արդյոք այն կախվա՞ծ է միայն տվյալ ձեռնարկության վարձատրման համակարգի կատարելագործումից, թե՞ պետք է ավելի լայն ուսումնասիրություն կատարել՝ սկզբում ամբողջ հասարակական արտադրության, հետո ճյուղի և ապա՝ ձեռնարկության մասշտաբով: Անկասկած, պրոբլեմի լուծումն ի վերջո կապված է արտադրութան հիմնական օղակում վարձատրման համակարգի կատարելագործման հետ: Այս ուղղությամբ իրականացվում են լուրջ միջոցառումներ, մասնավորապես բարձրացվում են տարիֆային դրույքներն ու պաշտոնական ռոճիկները: Դրա համար անհրաժեշտ միջոցները ներկայումս ձեռք են բերվում արտադրողականության աճի, ներքին ռեզերվների մոբիլիզացման, աշխատանքի կազմակերպման ու նորմավորման բարելավման հաշվին: Միաժամանակ չպետք է մոռանալ նաև այն, որ աշխատավորների շահերի ակտիվացումը կոմպլեքսային պրոբլեմ է և ընդգրկում է կառավարման ամբողջ համակարգը՝ արտադրությունն ամբողջությամբ և ճյուղային մակարդակը: Այս պրոբլեմն առաջանում է սպառման հասարակական ֆոնդերի ու ըստ աշխատանքի որակի և քանակի բաշխված եկամուտների միջև հարաբերակցություն սահմանելիս: Մի կողմից՝ սոցիալիզմն իր զարգացման ընթացքում պետք է մոտենա բաշխման կոմունիստական ձևերին և դրա հիման վրա լուծի հասարակական և արտադրական հարաբերությունների առավել հրատապ հարցերը, մյուս կողմից էլ՝ մեր հասարակությունը դեռևս չի կարող սահմանափակել ըստ աշխատանքի բաշխման օրենքի գործողության ոլորտը, քանի որ այստեղ է աշխատավորների նյութական շահագրգռության բարձրացման հիմքը: Իսկ սա նշանակում է և՛ աշխատանքի արտադրողականության աճ, և՛ հասարակական արտադրության արդյունավետություն: Ըստ պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի՝ հասարակական արտադրության ճյուղերին և ձեռնարկություններին իրավունք է տրված ինքնուրույն լուծել կազմավորված եկամուտների բաշխման հարցը: Ձեռնարկությունները արտադրության վերջնական արդյունքների հիման վրա, ըստ սահմանված նորմատիվների, ստեղծում են աշխատանքի վարձատրման ֆոնդ: Ակնհայտ է, որ ըստ աշխատանքի բաշխման օրենքի լիարժեք գործողությունը յուրաքանչյուր կոլեկտիվում պայմանավորված է եկամուտների ժողովրդատնտեսական,



միջճյուղային և ներճյուղային բաշխմամբ: Այդ պատճառով էլ նպատակահարմար է հասարակական արտադրության վերոհիշյալ օղակներից յուրաքանչյուրը պայմանականորեն առանձնացնել և ուսումնասիրել առանձին: Սպառման հասարակական ֆոնդերի և ըստ աշխատանքի բաշխված եկամուտների միջև հարաբերակցության պրոբլեմի ուսումնասիրության հրատապությունը ներկայումս բացատրվում է վերջին տարիներին աշխատավարձի ֆոնդի նկատմամբ սպառման հասարակական ֆոնդերի առաջանցիկ աճով: Ինչպես ցույց է տալիս ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր-ծառայողների աշխատավարձի շարժընթացի վերլուծությունը, 1960—1986 թթ. նրանց աշխատավարձը, սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումների ու արտոնությունների հետ միասին, աճել է 2,6, իսկ զուտ աշխատավարձը՝ 2,4 անգամ: Միայն սպառման հասարակական ֆոնդերից վճարումների ու տրամադրված արտոնությունների արժեքը 1960—1986 թթ. ավելացել է 3 անգամ: Այս պրոցեսի հետևանքով երկրում միջին ամսական աշխատավարձի տեսակարար կշիռը կրճատվել է 81,5 տոկոսից մինչև 70,4 տոկոս: Սպառման հասարակական ֆոնդերի առաջանցիկ աճը 20—23 տոկոսով պահանջվում է նաև ընթացիկ՝ տասներկուերորդ հնգամյակում՝ միջին ամսական աշխատավարձի 13—15 տոկոս աճի դիմաց: Մի փոքր այլ է պատկերը մեր հանրապետությունում: Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ 1960—1985 թթ. ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր-ծառայողների միջին ամսական աշխատավարձի և սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումների ու արտոնությունների միջև հարաբերակցությունը ձևավորվել է հօգուտ միջին աշխատավարձի: Բանվոր-ծառայողների աշխատավարձը սպառման հասարակական ֆոնդերից տրվող վճարումների ու արտոնությունների հետ միասին աճել է 2,3 անգամ, իսկ զուտ աշխատավարձը՝ 2,4 անգամ: Միջին աշխատավարձի տեսակարար կշիռը 1960 թ. համեմատությամբ ոչ թե նվազել, այլ նույնիսկ բարձրացել է (71,7 տոկոսից մինչև 72,9 տոկոս): Նման իրավիճակը բացատրվում է ժողովրդագրական տեղաշարժերով, պլանավորման մեջ տեղ գտած թերություններով, սպառման հասարակական ֆոնդերում կատարված կառուցվածքային փոփոխություններով: Ընթացիկ հնգամյակում մեր հանրապետությունում ևս սահմանված է սպառման հասարակական ֆոնդերի առաջանցիկ աճ (16,1 տոկոս) միջին ամսական աշխատավարձի (10,8 տոկոս) աճի դիմաց:

Այսպիսով, մեր երկրում ժամանակի երկար հատվածում (50 տարի) իրականացվում է աշխատավարձի ֆոնդի դերի սահմանափակման և դրա հաշվին սպառման հասարակական ֆոնդերի կարևորման քաղաքականություն: Այսպիսի քաղաքականությունը նպաստում է մեր հասարակության մեջ խորը սոցիալական վերափոխումներին: Այն հնարավորություն է ընձեռում առավել լայն մասշտաբով իրականացնելու անվճար ժողովրդական կրթության, առողջապահության, սոցիալական ապահովության հետագա զարգացման, աշխատավորների հանգստի պայմանների բարելավման և մի շարք այլ սոցիալ-տնտեսական ծրագրեր: Սակայն հարց է ծագում. ՍՍՀՄ տնտեսական վերակառուցման ներկայիս պայմաններում աշխատավարձի ֆոնդի տեսակարար կշռի պարբերաբար սահմանափակումը արդյոք չի՞ թուլացնի անձնական տնտեսական շահերի գործողությունը, հետևաբար և մարդկային գործոնի դերը: Նշենք, որ այժմ սոցիալ-տնտեսական մի շարք խնդիրների իրականացման ասպարեզում սպառման հասարակական ֆոնդի աճը ուղեկցվում է ինչպես այդ ֆոնդերի ռացիոնալ օգտագործմամբ, այնպես էլ նրա բաշխման ձևերի կատարելագործմամբ: Ընդ որում հասարակական արտադրության արդյունավետության բնագավառում բարձր արդյունքների հասած աշխատավորական կոլեկտիվների համար առավել լայն հնարավորություններ են ստեղծվում բնակարանի, հանգստի պայմանների բարելավման, նախադպրոցական հիմնարկների և մյուս սոցիալական բարիքների նկատմամբ եղած պահանջմունքների բավարարման համար: Նման իրավիճակը լիովին համապատասխանում է վերակառուցման էությանը: Հասկանալի է դառնում, թե ինչու են պահպանվում սպառման հասարակական ֆոնդերի առաջանցիկ աճի միտումները տնտեսավարման մեխանիզմի արմատական վերափոխման պայմաններում: Ըստ էության, այդ ֆոնդերն այժմ առավելապես հանդես են գալիս որպես աշխատանքի վերջնական արդյունքը խթանող ռեսուրսներ, որպես ըստ աշխատանքի բաշխման գործոն: Այս իմաստով սպառման հասարակական ֆոնդերը չեն հակասում ըստ աշխատանքի վարձատրման մեխանիզմին, այլ վերածում են տվյալ մեխանիզմի դաշնակցի, դրա ոչ ձևական շարունակության, քանի որ խթանում են աշխատավորական կոլեկտիվների ձգտումը դեպի բարձր արդյունքներ, դեպի հասարակական արդյունավետության աճ:

Հաջորդ հարցը, որ ծագում է անձնական շահերի ակտիվացման պրոբլեմի ուսումնասիրության ժամանակ, աշխատավարձի ընդհանուր ֆոնդի բաշխումն է՝ ըստ հասարակական արտադրության ճյուղերի ու ձեռնարկությունների: Անհրաժեշտ է պարզել՝ միևնու՞յնն են, արդյոք, աշխատանքի վարձատրման սկզբունքները միջճյուղային և ներճյուղային մակարդակներում և ինչպե՞ս են դրանք համաձայնեցվում վարձատրման համահարթման միտումների դեմ մղվող պայքարի պայմաններում: Տարբեր ճյուղերի միջև աշխատավարձի ընդհանուր ֆոնդի բաշխման ժամանակ, մեր կարծիքով, անհրաժեշտ է նկատի ունենալ այն, որ միասնական ժողովրդատնտեսական համակարգում արտադրության բոլոր ճյուղերը փոխկապակցված են և լրացնում են միմյանց: Ուստի այդ ճյուղերը համարժեք են, այսինքն՝ ցանկացած ոլորտում կատարված աշխատանքային ծախսումները հավասարապես անհրաժեշտ են հասարակությանը: Հետևաբար, հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքային ժամանակի ծախսումները բոլոր ճյուղերում պետք է համընկնեն: Եվ քանի որ սոցիալիզմի պայմաններում աշխատանքի վարձատրությունը կատարվում է ըստ հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումների, կարելի է եզրակացնել, որ յուրաքանչյուր ճյուղի աշխատողի միջին վաստակը պետք է ձգտի միևնույն մեծությանը: Նշենք, որ այս երևույթը տանում է ոչ թե եկամուտների բաշխման մեջ հավասարեցման, այլ այդ համարժեք ճյուղերի հասկացողության ըմբռնման, որի դեմ, մեր կարծիքով, պետք է պայքարել աշխատավարձի ֆոնդի բաշխման ոչ թե միջճյուղային, այլ ներգործարանային մակարդակում:

Աշխատանքի վարձատրման համակարգի կատարելագործման ուղղությամբ առաջին քայլերը կատարվեցին արդյունաբերության մեջ իրականացված լայնածավալ տնտեսափորձի պայմաններում, երբ ընդունվեց աշխատավարձի նորմատիվը մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի նկատմամբ: Տնտեսավարման նոր մեթոդներին անցած ձեռնարկությունների համար մտցվեց աշխատավարձի աճի նորմատիվ՝ արտադրության ծավալի աճի նկատմամբ: Այժմ կարևորագույն նշանակություն է ստանում աշխատավարձի ֆոնդի և աշխատանքի արտադրողականության միջև համապատասխանության ապահովման հարցը: Աշխատավարձի ֆոնդի բաշխման մեջ տեղ գտած հավասարեցման միտումների դեմ պայքարում խիստ կարևոր է ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի խստիվ պահպանումը, աշխատավորական կոլեկտիվների նյութական շահագրգռության բարձրացումը: Այդ առումով կանգ առնենք հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության կարի ձեռնարկություններում աշխատավարձի ֆոնդի կազմակերպման ու բաշխման մի քանի հարցերի վրա, պարզենք, թե ինչպես է այն առնչվում աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ 1986—87 թթ. այդ ճյուղի առանձին միավորումներում ու ձեռնարկություններում խախտվում է միջին աշխատավարձի ու աշխատանքի արտադրողականության հարաբերակցությունը:

Այսպես, 1986 թ. Լենինականի կարի № 2 արտադրական միավորումում աշխատանքի արտադրողականությունը կազմել է մեկ աշխատողին 1.605 ռուբլի, Կամոյի կարի ֆաբրիկայում՝ 2.249 ռուբլի, Չարենցավանի կարի ֆաբրիկայում՝ 2.858 ռուբլի: Ելնելով միջին աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության միջև գոյություն ունեցող համապատասխանությունից՝ նշված երեք ձեռնարկություններից Չարենցավանի կարի ֆաբրիկայի բանվոր-ծառայողները պետք է ստանային ավելի բարձր աշխատավարձ: Իրականում հենց այդ ֆաբրիկայում է միջին աշխատավարձը ամենացածրը՝ 1.711 ռուբլի, այն ժամանակ, երբ Լենինականի կարի № 2 արտադրական միավորումում այն կազմում է 2.058 ռուբլի, Կամոյի կարի ֆաբրիկայում՝ 2.431 ռուբլի: Միջին աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության միջև գոյություն ունեցող համապատասխանության խախտման հետևանքով Չարենցավանի կարի ֆաբրիկայում աշխատավարձի ֆոնդի պակասը տարեկան կազմել է 443,5 հազար ռուբլի: Մեկ աշխատողը պակաս է ստացել տարեկան 554 ռուբլի, որը ամսական կազմելու է բավականին խոշոր գումար՝ 46 ռուբլի, այն դեպքում, երբ այստեղ միջին աշխատավարձը ընդամենը 140 ռուբլի է: Դրան հակառակ, Կամոյի կարի ֆաբրիկայի բանվոր-ծառայողները տարեկան «լրացուցիչ» չվաստակած աշխատավարձ են ստացել 428,8 հազար ռուբլի:

Միջին աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության հարաբերակցության խախտման նմանօրինակ փաստեր կան նաև 1987 թ.: Օրինակ, Ալավերդու կարի ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականությունը կազմել է 2.350 ռուբլի, տարեկան միջին աշխատավարձը՝ 1.896 ռուբլի, իսկ Ախուրյանի կարի ֆաբրիկայում համապատասխանաբար՝ 1.646 և 1.818 ռուբլի: Իրականում բարձր արդյունավետություն, աշխատանքի բարձր արտադրողականություն ապահովող ձեռնարկություններում բանվոր-ծառայողների միջին աշխատավարձը ավելի բարձր պետք է լինի, ըստ էության, վատ աշխատող, ցածր արտադրողականություն ունեցող ձեռնարկությունների աշխատավորական կոլեկտիվների աշխատավարձից: Մինչդեռ մեր ուսումնասիրությունները խոսում են հակառակ երևույթի մասին: Աշխատավարձի ֆոնդի և աշխատանքի արտադրողականության միջև ճիշտ հարաբերակցության սահմանման համար, ըստ մեզ, որոշակի հետաքրքրություն է ներկայացնում տնտեսագետների այն կարծիքը, որ նվազագույն արտադրողականություն ունեցող ձեռնարկությունների մեկ բանվորի աշխատավարձը ևս պետք է լինի նվազագույն, իսկ մյուս ձեռնարկություններում այն կլինի նույնքան բարձր, որքան բարձր է տվյալ ձեռնարկության աշխատանքի արտադրողականությունը՝ նախորդի մակարդակի նկատմամբ: Հետևաբար, կարելի է եզրակացնել, որ յուրաքանչյուր ձեռնարկության աշխատավարձի ֆոնդը պետք է կազմված լինի 2 մասից՝ արտադրողականության նվազագույն մակարդակ ունեցող ձեռնարկության աշխատողների միջին աշխատավարձից և լրացուցիչ աշխատավարձից, որը կտրվի աշխատանքի արտադրողականության յուրաքանչյուր տոկոս աճի դիմաց: Այս մեթոդով հաշվարկված աշխատավարձի ֆոնդի վերլուծությունը ցույց է տալիս, որ 1987 թ. թեթև արդյունաբերության կարի ճյուղի 13 ձեռնարկություններից 9-ում, միջին աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության հարաբերակցության խախտման հետևանքով, աշխատավարձի տարեկան ֆոնդը պակաս է սահմանվել: Այսպես, Երևանի Կ. Ցետկինի անվան կարի արտադրամիավորումում այն կազմել է 722 հազար ռուբլի: Բայց քանի որ այստեղ բանվոր-ծառայողների քանակը մեծ է, յուրաքանչյուր աշխատող համեմատաբար քիչ է տուժել: Առավել ծանր է իրավիճակը Չարենցավանի կարի ֆաբրիկայում, ուր աշխատավարձի ֆոնդի տարեկան թերստացումը կազմել է 404,7 հազար ռուբլի, իսկ մեկ աշխատողինը՝ 471 ռուբլի: Սպիտակի կարի արտադրամիավորումում, ուր աշխատանքի արտադրողականությունը ամենաբարձրն է ճյուղում, 1986 թ. աշխատանքի արտադրողականությունը կազմել է 4.156 ռուբլի և կոլեկտիվի անդամներն էլ իրավացիորեն բարձր վարձատրություն են ստացել: Բայց այստեղ թույլ է տրվել աշխատավարձի ֆոնդի գերածախս (902,1 հազար ռուբլի): 1987 թ. աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակը պահպանվել է (4219 ռուբլի), պահպանվել է նաև վարձատրության բարձր մակարդակը և լուծվել գերածախսի հարցը, նույնիսկ մի փոքր էլ աշխատավարձի ֆոնդի թերստացում է նկատվել:

«Արտոնյալ» պայմաններ են ստեղծվել Կամոյի կարի ֆաբրիկայում: Այստեղ աշխատանքի արտադրողականությունը մոտ երկու անգամ ցածր է Սպիտակի կարի արտադրամիավորման համապատասխան ցուցանիշից, բայց գոյություն ունի աշխատավարձի ֆոնդի գերածախս, որը մեկ աշխատողի համար կազմել է տարեկան 435 ռուբլի «լրացուցիչ» աշխատավարձ:

Այսպիսով, աշխատավարձի ֆոնդի կազմավորման վերոհիշյալ մեթոդը, որը հիմնվում է աշխատանքի արտադրողականության ձեռք բերված մակարդակի վրա, հնարավորություն է տալիս հաղթահարելու ոչ միայն վարձատրության բնագավառում արմատավորված հավասարեցման միտումները, այլև աշխատավարձի ֆոնդի գերածախսերը, ապահովում է աշխատանքի վարձատրման իրականացումը ըստ վերջնական արդյունքների: Դա է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում մարդկային գործոնի ակտիվացման հիմնական նախապայմանը:

---

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԻՏԱԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

Հ. ՀԱՐՈՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀՈԳԵՎՈՐ ՈԼՈՐՏՈՒՄ ունեցած պատմական նվաճումներից մեկը գիտամատերիալիստական աշխարհայացքի տիրապետող աշխարհայացք դառնալն է, որի տարածումն ու հաստատումը ընթացել և ընթանում է հակագիտական, մասնավորապես, կրոնական պատկերացումների դեմ մղվող անզիջում պայքարում: Գաղտնիք չէ, որ մեզանում դեռևս կան զգալի թվով մարդիկ, ովքեր գտնվում են կրոնի ու կրոնական գաղափարախոսության ազդեցության տակ: Սոցիալիզմը, վերացնելով կրոնի սոցիալ-դասակարգային հիմքը՝ մասնավոր սեփականատիրական հարաբերությունները, դասակարգային ճնշումն ու շահագործումը, դրանով իսկ խարխլեց նաև նրա սոցիալական արմատը և օբյեկտիվ պայմաններ ստեղծեց կրոնական գիտակցության հաղթահարման համար: Սակայն վերջին տասնամյակներում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերի դանդաղեցումը (որը սոցիալիստական արտադրական-տնտեսական հարաբերությունների ժամանակին չկատարելագործվելու հետևանք էր) կյանքի տարբեր ոլորտներում առաջ բերեց լճացում, հակասություններ, որոնք բացասաբար ազդեցին նաև գիտական աշխարհայացքի ձևավորման պրոցեսի վրա: Ավելին, աճեց աշխարհայացքային անտարբերություն ունեցող մարդկանց թիվը, իսկ ինչ-որ տեղ էլ նկատվեց եկեղեցու դիրքերի հարաբերական կայունացման ու կրոնամիստիկական պաշտամունքների աշխուժացման երևույթ:

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է՝ հետևանքից գնալ պատճառը, ճանաչել կրոնական պատրանքներ ծնող ու պահպանող պատճառները և գիտակցական, կազմակերպված պայքար ծավալել դրանց վերացման համար: Ահա թե ինչու մեզանում վերջին տարիներին որոշ մարդկանց կողմից կրոնին ու կրոնական ծեսերին դիմելու, առանձին երիտասարդների միստիկայով տարվելու, կրոնական համայնքներում հավաքագրվելու և եկեղեցական պսակադրությամբ ամուսնանալու փաստերը բացատրել միայն որպես անցյալի մնացուկներ, վերապրուկներ կամ թե միայն դաստիարակչական թույլ աշխատանքի, ազգային, բարոյական և կրոնական արժեքների շփոթի արտահայտություն, առնվազն կլինի միակողմանի:

Գիտականորեն վերլուծելով երկրի սոցիալ-տնտեսական ու հոգևոր գաղափարական ոլորտներում ստեղծված ծայրահեղ բարդ և հակասական իրավիճակը, կուսակցության XXVII համագումարը շեշտեց, որ գոյություն ունեցող աննպաստ միտումները ամենևին չեն բխում սոցիալիզմի՝ որպես հասարակարգի, էությունից, այլ ամենից առաջ սուբյեկտիվ բնույթի են և արդյունք սոցիալ-տնտեսական, գաղափարաքաղաքական գործունեության մեջ տեղ գտած լուրջ վրիպումների ու բացթողումների:

Դա լիովին վերաբերում է նաև դաստիարակչական աշխատանքի կազմակերպման ու իրականացման պրոցեսին: Պրոպագանդայի դերի ուռճացումը, վազքը քանակական ցուցանիշների հետևից, երբ պրոպագանդիստական աշխատանքի չափանիշը դարձել էր դասախոսությունների և համապատասխան միջոցառումների թիվը, հաճախ դրանց թղթային արձանագրումը, կենդանի ու ճշմարիտ խոսքի բացակայությունը, իրերի դրության անտեղի գունազարդումը, երբ ձևը սպանում էր բովանդակությունը, քանակը՝ որակը, առաջ բերեց անտարբերություն սոցիալիստական գաղափարախոսության հանդեպ, թուլացրեց նրա ներգործության ուժը:

Ընդհանուր առմամբ սոցիալիստական հասարակարգի առաջընթացի չափանիշ-

---

ՀԱՐՈՅԱՆ ՀԱՅԿ ԱԼԵՔՍԱՆԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Լենինականի Մ. Նալբանդյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտի փիլիսոփայության և քաղաքատնտեսության ամբիոնի դոցենտի պաշտոնակատար:



ներից մեկը, նրա հոգևոր աճի հայելին սոցիալական արդարության զարգացման աստիճանն է, այն է՝ հասարակական արդար հարաբերությունների, իրական մարդկային փոխհարաբերությունների մարմնավորումը կյանքի բոլոր՝ տնտեսական, սոցիալական, բարոյական, իրավական, ազգային և այլ ոլորտներում: Ուրեմն ակնհայտ է սոցիալական, առավել ևս, սոցիալիստական արդարության զարգացման աթեիստական աշխարհայացքային արժեքն ու նշանակությունը: Այդ առումով մեծ հնարավորություններ է պարունակում սոցիալական արդարությունը հետևողականորեն հաստատելու կուսակցության ներկայիս քաղաքական գիծը: «Սոցիալական արդարության սկզբունքի խստիվ կիրառումը ժողովրդի միասնության, հասարակության քաղաքական կայունության, զարգացման դինամիզմի կարևոր պայմանն է» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 62).

Կոմունիստական դաստիարակության արդյունավետությունն անմիջականորեն պայմանավորված է մեր իդեալների, սոցիալիստական սկզբունքների ու արժեքների եռանդագին հաստատումով: Պահանջվում է հասարակական կյանքն այնպես կազմակերպել, որ յուրաքանչյուր սովետական մարդ անսասան հավատ ունենա սոցիալիստական իդեալների ու արժեքների նկատմամբ: Առաջադրված նպատակին հասնելու անհրաժեշտ պայմանը սոցիալիստական հասարակարգի սոցիալ-տնտեսական վերակառուցումն է, բարոյահոգեբանական ընդհանուր մթնոլորտի առողջացումը, հասարակական կյանքի դեմոկրատացումը, մարդասիրական հասարակական հարաբերությունների հաստատումը, սոցիալիստական ապրելակերպի ու դրական արժեքների զարգացումը: Իսկ այդ ամենը, վերջին հաշվով, ենթադրում է հասարակական արդարացի հարաբերությունների գոյություն, այն է՝ սոցիալիզմը գործնականում, իրականում և ոչ թե տեսության մեջ: Ահա թե ինչու արագացման կուրսը չի հանգեցվում սոսկ սոցիալ-տնտեսական վերափոխումների, այլ պահանջում է սոցիալական ակտիվ քաղաքականության իրականացում, սոցիալիստական արդարության սկզբունքի հետևողական հաստատում:

Անմիջական օրգանական կապ գոյություն ունի գիտամատերիալիստական համոզմունքների, աթեիստական մտածելակերպի ձևավորման և հասարակական արդարացի, դեմոկրատական հարաբերությունների գոյության, սոցիալիստական կենցաղավարության և օրինականության նորմերի խստագույնս պահպանման ու արմատավորման միջև: Հասարակական կյանքի կազմակերպման սոցիալիստական սկզբունքներից, ամենագլխավորը արդարության սկզբունքի պահպանումն ու զարգացումն է: Սոցիալիզմն իր էությամբ ու կոչումով արդարություն հաստատող հասարակարգ է: Այն, ոչնչացնելով սոցիալական անարդարության բարձրագույն դրսևորումը՝ մարդու կողմից մարդու շահագործումը, դասակարգային և ազգային ճնշումը, լայն ասպարեզ է բացում անհատի սոցիալ-բարոյական զարգացման, նրա հոգևոր պահանջմունքների լիովին բավարարման համար: Ոռհասարակ, գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, կայուն գիտական աշխարհայացքի ձևավորման պայմանը կայուն սոցիալ-տնտեսական քաղաքականությունն է: Այն գաղափարախոսությունը, որը գործնականորեն չի հաստատվում և ամրապնդվում սոցիալական կյանքում, ոչ միայն համոզմունքներ և իդեալներ չի դաստիարակում, այլև, ընդհակառակը, կարող է հանգեցնել վնասակար դրսևորումների՝ առաջ բերելով անտարբերություն բարոզվածի հանդեպ, արժեզրկել գաղափարը, ուսմունքը:

Իրոք, որպեսզի սոցիալիզմի գաղափարները վերածվեն համոզմունքի, բավական չէ դրանց լայն պրոպագանդումը, անհրաժեշտ է ստեղծել դրանց կենսունակությունն ու ճշմարտացիությունը գործնականորեն հաստատող համապատասխան սոցիալական պայմաններ, քանզի «գաղափարները, որքան էլ հրապուրիչ լինեն, ինքնին ավտոմատ կերպով ամբողջական ու ակտիվ աշխարհայացք դեռևս չեն ձևավորում, եթե շաղկապված չեն մասսաների սոցիալ-քաղաքական փորձի հետ» (Նույն տեղը, էջ 120):

Դիալեկտիկամատերիալիստական աշխարհայացքի ձևավորման արդյունավետության բարձրացման նախապայմանը գիտաաթեիստական դաստիարակության համակարգի վերակառուցումն է, այդ ոլորտում առկա լուրջ թերությունների վերացումը: Մասնավորապես պահանջվում է արմատապես հաղթահարել կրոնի և աթեիզմի հարցերին ցուցաբերվող ձևական, հախուռն, մակերեսային մոտեցումը, ձերբազատվել դոգմատիկ մտածողության կաղապարներից, այսինքն՝ աթեիստական աշխատանքը կազմակերպելիս ելնել բնակչության շրջանում կրոնականության վիճակի ու մակարդակի, կրոնատածության աստիճանի, սոցիալիզմի օրոք կրոնի գոյության օբյեկտիվ պատճառների և դրսևորման յուրահատկությունների, վերջապես նաև կրոնապաշտ-

ծաբանական ուսմունքներում կատարվող փոփոխությունների ու տեղաշարժերի գիտական վերլուծությունից:

Աթեիստական աշխատանքում տեղ գտած լուրջ թերություններից մեկը եղել է այն, որ հաճախ կրոնի քննադատությունը վերածվել է ինքնանպատակի: Այսպես, միշտ չէ, որ կրոնի փիլիսոփայական, բարոյական, բնագիտական քննադատությունը, կրոնական գաղափարախոսության հետադիմական բնույթի բացահայտումը ուղեկցվել է կրոնի՝ որպես աշխարհայացքային ուսմունքի, յուրահատկության վերլուծությամբ: Նման միակողմանի մոտեցումը հանգեցրել է ինչպես կրոնի, այնպես էլ աթեիզմի՝ որպես աշխարհայացքային ուսմունքի, ոչ ճիշտ, մակերեսային, լուսավորչական ըմբռնմանը:

Մարդու՝ որպես բանական, սոցիալ-բարոյական էակի, գիտակցական ողջ գործունեությունը պատճառաբանված է աշխարհայացքային որոշակի կողմնորոշիչներով՝ սկզբունքներով, արժեքներով, գաղափարներով, որոնց ձևավորման մեջ, վերջին հաշվով, որոշիչը ապրելակերպն է, կյանքի պայմանները, մարդկանց սոցիալական խմբերի գործունեության բնույթը, ինչպես նաև աշխարհի մահացության մակարդակը, որոնք էլ, իրենց հերթին, պայմանավորված են տիրապետող հասարակական հարաբերություններով և հասարակական պրակտիկայի զարգացման աստիճանով: Հետևաբար, աշխարհայացքային ուսմունքին բնորոշ է ապրելակերպի, գործունեության և մտածելակերպի միասնությունը:

Հետաքրքրությունն աշխարհայացքային հարցերի նկատմամբ խիստ աճում է հասարակական կյանքի խոր վերափոխումների շրջանում: Պատմության շրջադարձային փուլերում դրանք մղվում են առաջին պլան, դառնում գաղափարախոսական սուր և անզիջում բանավեճերի առարկա: Ահա համանման պատմական իրադրություն է գոյացել համաշխարհային զարգացման ներկա փուլում, երբ պահանջվում է արժեքների, չափանիշների և մոտեցումների արմատական վերանայում: Իսկ պայքարը մարդկանց աշխարհայացքային համոզմունքների համար, ըստ էության, պայքար է հանուն այս կամ այն սոցիալ-բարոյական և քաղաքական իդեալի հաստատման ու իրականացման: Այս առումով, սոցիալիզմը ճշմարտության ու արդարության սկզբունքներին համապատասխան կառուցելու՝ կուսակցության ներկայումս ծավալած սոցիալական քաղաքականությունը աշխարհայացքային դաստիարակության պրոցեսի գիտական կազմակերպման օբյեկտիվ պայմանն է:

Կրոնի գոյատևման սոցիալ-հոգեբանական հիմքերից մեկը մարդկային կեցության հիմնական հակասության՝ գոյության և էության փոխհարաբերության պրոբլեմի, լուծման ձևի մեջ է: Այն որակապես տարբեր ու հակադիր լուծումներ է ստանում կրոնական և գիտական աշխարհայացքում: Կրոնական աշխարհայացքում այդ հարցը լուծվում է հօգուտ մարդու վերացական, բացարձակ հոգևոր էության: Այսինքն՝ մարդու գոյությունը, նրա իրական կեցությունը մերժվում է որպես էությանն անարժան, գնահատվում որպես անիմաստ և զոհաբերվում նրան: Կրոնական գիտակցության մեջ տեղի է ունենում էության և գոյության անջատում ու հակադրում միմյանց, որտեղ մարդու սեռային էությունն անջատվում է նրա ռեալ գոյությունից (շնորհիվ մարդու վերացարկման ընդունակության) և վերածվում երևակայական գոյության: Կրոնը մարդու ինքնաբացասումն է ու ինքնամերժումը, որտեղ կոնկրետ մարդը զոհաբերվում է իր վերացական էությանը:

Կրոնի էությունը, Հեգելի բնութագրմամբ, վերացական դրականն է: Կրոնի ոլորտին են պատկանում բացարձակ բովանդակությունը և նպատակը,— գրել է նա,— բայց միայն վերացական դրական որակի մեջ: «Կրոնի մեջ մենք ձերբազատվում ենք ամեն մի ժամանակավորից: Կրոնը գիտակցության այն ոլորտն է, որտեղ լուծված են աշխարհաշենքի բոլոր առեղծվածները, վերացված են խոր մտքի բոլոր հակասությունները, մարած է զգացմունքի ամբողջ ցավը: Կրոնը հավերժ ճշմարտության, հավերժ հանգստի, հավերժ աշխարհի ոլորտն է» (Гегель. Философия религии. М., 1975, т. 1, стр. 205):

Կրոնը հոգեկան աշխարհի այն բնագավառն է, որտեղ մարդը թվում է թե պատրանքային անկախություն է ստանում արտաքին այն ուժերից, որոնք հակադրում են նրան ապրել անմարդկային կյանքով: Կրոնական այդ «ազատությունը» հոգու ազատությունն է, որտեղ կա ոչ թե իրական, կենսագործող մարդը, այլ մարդը որպես էություն, վերացական մարդը, երբ կոնկրետ մարդը կախման մեջ է դրվում իր իսկ գերբնականացված էությունից: Այսպիսով, մերժելով իրական գոյությունը հանուն էության և վերջինս վերածելով ինքնաբավ գոյության, կրոնը ստեղծում է իր աշխարհը, որտեղ մարդը հասնում է վերացական բավարարվածության և ազատության պատրանքի:



Ըստ կրոնի էության գիտական ըմբռնման, այն սոցիալ-իմացաբանական, հոգևոր-մշակութային բարդ երևույթ է, հասարակական գիտակցության յուրահատուկ ձև, որի արմատները թաքնված են իրական կյանքում, մարդկանց դեպի բնությունը և միմյանց նկատմամբ ունեցած սահմանափակ հարաբերությունների մեջ: Մարքսիզմ-լենինիզմը կրոնը դիտում է որպես աշխարհիմացության, աշխարհզգացության և աշխարհըմբռնման յուրահատուկ մի միջոց, օբյեկտիվ իրականության մեջ կողմնորոշվելու, նրանում կատարվող պրոցեսների ու իրադարձությունների նկատմամբ մի հատուկ վերաբերմունքի ու բացատրության ձև: Լինելով մարդու «ինքնագիտակցությունն ու ինքնազգացումը» (Կ. Մարքս), շրջապատող աշխարհի հուզազգացմունքային արտացոլումը, կրոնը իրականության հոգևոր-պրակտիկ յուրացման այն ձևն է, որը կերպավորում է որոշակի կենսադիրքորոշում, կողմնորոշիչներ, սկզբունքներ և իդեալ: Այն յուրատեսակ աշխարհայացք է, համընդգրկող ուսմունք աշխարհի և մարդու մասին: Սակայն կրոնը, Կ. Մարքսի բնութագրությամբ, «կեղծ աշխարհի» «կեղծ աշխարհայացքն է», նրա «ընդհանուր տեսությունն է, նրա հանրագիտարանային համառոտությունը, նրա տրամաբանությունը հանրամատչելի ձևով, նրա սպիրիտուալիստական point d' honneur-ը (պատվի հարցը— խմբ.), նրա խանդավառությունը, նրա բարոյական սանկցիան, նրա հանդիսավոր լրացումը, նրա համընդհանուր հիմքը մխիթարության և արդարացման համար» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, **Կրոնի մասին,** «Հայաստան» հրատ., 1977, էջ 13—14):

Իրականության կրոնական լրացման կարիք մարդն զգում է միայն այնտեղ, որտեղ բացակայում են նրա նորմալ կենսագործունեության, իր մարդկային ճշմարիտ էության դրսևորման ու զարգացման համար անհրաժեշտ գոյության պայմաններ, ավելին, անտեղ, որտեղ մարդկային հասարակական բարոյական հարաբերությունները աղավաղվում և ձևախախտվում են, և սոցիալական աղքատ կյանքը հնարավորություն չի տալիս բավարարելու մարդու մարդկայնության պահանջը: Դրա համար էլ որքան աղքատ է իրական կյանքը, այնքան մեծ է կրոնական պատրանքային արժեքների ձգողական ուժը, որով լրացվում կամ չեզոքացվում է հավատացյալի բովանդակազուրկ իրական կյանքը: Ուստի և ուղիղ համեմատական կապ կա սոցիալական անարդար հարաբերությունների գոյության, հասարակական ուժերից մարդու կախվածության խորացման և պատրանքային գաղափարներին դիմելու, առհասարակ կրոնատածության աստիճանի միջև: «**Կրոնական** աղքատությունը,— գրել է Կ. Մարքսը,— միևնույն ժամանակ իրական աղքատության **արտահայտությունն** է և **բողոք** ընդդեմ այդ իրական աղքատության» (նույն տեղը, էջ 14):

Իրականության կրոնական յուրացման առանձնահատկությունն այն է, որ մարդու հոգևոր պահանջմունքներին ու զգացումներին (ճանաչողական, բարոյական, գեղագիտական և այլն) բավարարություն է տրվում ոչ թե իրական, այլ իլյուզիոնալ, երևակայական միջոցներով ու եղանակներով: Իրական կյանքը չի բավարարում մարդուն, և նա երևակայության ուժով ստեղծում է կրոնի աշխարհը, որտեղ զետեղելով զուտ մարդկային հատկանիշներ, սկսում է բավարարություն որոնել իր իսկ օտարված էության մեջ: Կրոնը «**երևակայական իրականություն** է դարձնում **մարդկային** էությունը, քանի որ **մարդկային էությունը** չի օժտված իսկական իրականությամբ» (նույն տեղը): Սոցիալ-հոգեբանական, ճանաչողական այդ փոփոխությունը հավատացյալի առօրեական գիտակցության համար մնում է անմատչելի գաղտնիք, որը և կրոնի հիմնական գաղտնիքն է:

Մարդկային կեցության հարցերի իրական լուծումները կրոնը փոխարինում է պատրանքային լուծումներով, ինչում և դրսևորվում է նրա վերացական, հակամարդասիրական էությունը: Կեղծ պատրանքային լուծում տալով կեցության հակասությանը՝ աշխարհայացքային հիմնական հարցին, կրոնն, ըստ էության, մերժում է իրական կյանքը, մարդուն: Բայց իրականում այդ հակասությունն օբյեկտիվ բնույթ ունի, որը և, վերջին հաշվով, մարդու կենսագործունեության աղբյուրն է, առաջընթացի շարժիչ ուժը:

Կրոնական աշխարհայացքում իրականության յուրացումն ու վերափոխումը կատարվում է աշխարհի, նրանում գոյություն ունեցող օբյեկտիվ հակասություններից հրաժարվելու միջոցով: Անկարող լինելով առաջադրելու իրական կյանքի հակասությունները, ամենից առաջ, գոյության և էության միջև առկա հակասությունը լուծելու

ճշմարիտ ուղի, կրոնը միստիֆիկացնում է ինչպես այդ հակասությունը, այնպես էլ օբյեկտիվ իրականությունը: Բնության, մարդկային գործունեության և բանականության էությունը կտրելով իր կոնկրետ կրողներից՝ կրոնական մտածողությունը վերացարկում և օտարում է գերբնական էության ձևով ու հակադրում իրական մարդկային կեցությանը:

Ասվածից հետևում է, որ անհատի, հասարակության հոգևոր զարգացման օրինաչափություններից մեկը (որն այսօր պետք է խստագույնս հաշվի առնվի դաստիարակչական աշխատանքի ընթացքում) այն է, որ եթե մարդու հոգևոր օբյեկտիվ պահանջմունքները իրական բավարարվածություն չեն ստանում և մարդու էության զարգացումը չի դրվում ճշմարիտ, մարդասիրական, բնական հունի մեջ, ապա այդ իրական պահանջմունքների անբավարարվածությունը միշտ էլ ծնում է իր սուռոգատները՝ ի դեմս կրոնի:

Աշխարհայացքային հիմնական հարցը սկզբունքային ճիշտ, մարդասիրական լուծում է ստանում գիտական աշխարհայացքում: Մարքսիստական աթեիզմը ելնում է մարդու կեցության ամբողջականության, էության և գոյության դիալեկտիկական միասնության դրույթից և պրոբլեմը վճռում է հօգուտ մարդու **էական գոյության:** Իրականում մարդու կեցությունը նրա գոյության և էության, նյութական և հոգևոր կողմերի ներքին միասնությունն է, հետևապես դրանց անջատումը մեկը մյուսից ոչ թե լուծում է կեցության հակասությունը, այլ ավելի է խորացնում այն՝ հանգեցնելով կողմերից մեկի բացառմանը: Ի հակադրություն կրոնի, աշխարհի գիտական բացատրությունն ու յուրացումը կատարվում է նրանում գոյություն ունեցող հակասությունների, օրենքների ճանաչման և այդ հիմքի վրա կյանքի իրական իդեալների ու նպատակների հաստատման միջոցով: Գիտական աշխարհայացքը տալիս է կյանքի իմաստի իրական ըմբռնումը՝ պահանջելով մարդուց որոնել այն բուն կյանքի, աշխատանքային գործունեության, նյութական և հոգևոր արժեքներ ստեղծելու, իր էական մարդկային ձգտումների իրական բավարարման համար մղվող գիտակցական պայքարի մեջ: Գիտաաթեիստական աշխարհայացքի սոցիալ-բարոյական արժեքն այն է, որ օգնում է մարդուն գիտակցելու իր սոցիալական էությունը, իր էական շահերը և գործելու դրանց համապատասխան:

Որքան հարուստ և բազմակողմանի է մարդու իրական կեցությունը, նրա կյանքը, որքան ավելի բազմակողմանիորեն է նա օբյեկտիվացնում, առարկայացնում իր ներքին էներգիան՝ հոգևոր ու մարմնական ուժերը, այնքան ավելի իմաստավորված ու բովանդակալից է մարդու կյանքը: Մարքսիզմի դասականները նշել են. «Որքան մարդը շատ է ներդնում աստծո մեջ, այնքան քիչ է մնում իրեն» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 42, стр. 88):

Ուրեմն, որքան մարդը շատ է ներդնում կյանքի մեջ, այնքան շատ է մնում իրեն, որքան ակտիվորեն է մասնակցում նա հասարակական կյանքին, վեհ ու ազնիվ իդեալների համար մղվող պայքարին, այնքան քիչ տեղ է մնում աստծո համար:

Մարքսիստական աթեիզմի իդեալը, որը և սոցիալիզմի ու կոմունիզմի իդեալն է, մարմնապես և հոգեպես ներդաշնակորեն զարգացած, ինքնաճանաչման հասած կոնկրետ մարդն է, նրա մարդկային էությանը համապատասխանող հասարակական պայմանների ստեղծումը: Ահա թե ինչ է գրում Ֆ. Էնգելսը. «Մարդը պետք է լոկ ճանաչի ինքն իրեն, իրեն դարձնի բոլոր կենսական հարաբերությունների չափանիշ, դրանց գնահատական տա իր էության համեմատ, աշխարհը կառուցի իսկական մարդկայնորեն՝ իր բնության պահանջների համաձայն, և այդ ժամանակ նա կլուծի մեր ժամանակի առեղծվածը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, **Կրոնի մասին,** էջ 435): Բարձրագույն մարդասիրական այդ խնդրի իրականացման համար անհրաժեշտ նախադրյալները ձեռք են բերվում հեղափոխական պայքարի, հասարակական կյանքի հեղափոխական վերափոխման, հասարակական հարաբերությունների արդարության և հավասարության սկզբունքների վրա կառուցելու միջոցով: Այդ պայմաններում սոցիալական կյանքի կազմակերպումն ամբողջապես նպատակամղվում է անհատի բանական պահանջմունքների բավարարմանը, նրա ընդունակությունների և հնարավորությունների առավել բացահայտմանը:

Գիտական աշխարհայացքի, այդ թվում և աթեիստական մտածելակերպի, ձևավորման պրոցեսը նույնպես բարդ է և հակասական, որը զուտ գիտական գիտելիքի (բնագիտության) կամ փիլիսոփայության զարգացմանը հանգեցնելը կնշանակի ընկնել միակողմանիության մեջ, չհասկանալ նրա էությունն ու զարգացման յուրահատկությունը: Աշխարհի կրոնական պատկերը նրա գիտական ըմբռնումով փոխարինելու



համար բավարար չէ բնագիտության ինքնին զարգացումը: Գիտական գիտելիքի զարգացումը, կտրված մարդու ինքնաճանաչման և ինքնահաստատման մյուս՝ փիլիսոփայական, բարոյական, գեղագիտական ձևերից, կորցնում է իր աշխարհայացքային դրական արժեքն ու ուղղվածությունը: Եվ միայն դրանց դիալեկտիկական միասնությունն է տալիս ինչպես մարդկային գոյության, այնպես էլ աշխարհայացքի ամբողջության գիտակցությունը:

Բնության իմացության խորացումը, մարդու իշխանության աճը բնության վրա համապատասխանաբար պետք է ուղեկցվի սոցիալական շարժման գիտական կառավարումով, հասարակական երևույթների իմացության խորացումով և ձեռքբերված գիտելիքների մարդասիրական կիրառումով: Այլապես անհնար է կրոնական աշխարհըմբռնման հաղթահարումը: Անշուշտ, առայժմ չվերահսկվող, ամբողջովին գիտական կառավարման չենթարկված սոցիալական կյանքը տեղ է թողնում տարերայնության, պատմական անհրաժեշտության կուրորեն գործելու, մարդու վրա սոցիալական ուժերի բացասական ազդեցության համար:

Անարդար հասարակական հարաբերությունների գոյության պայմաններում արդի գիտության արագընթաց զարգացումը, բանականության նվաճումները և բնության յուրացումը կարող է, մի կողմից, խորացնել մարդու օտարումը, խորթացումը տիրապետող հասարակական հարաբերություններից, մյուս կողմից, անհեռատես, կարճամիտ էկոլոգիական քաղաքականության հետևանքով հանգեցնել մարդ-բնություն հակադրության խորացմանը՝ մարդու և հասարակության համար կործանարար հետևանքներով հանդերձ: Այդ ամենին, բնականաբար, աշխարհայացքային արժեքավորում է տրվում մարդու կողմից և անպայմանորեն բացասաբար ազդում գիտական աշխարհայացքի ձևավորման ընթացքի վրա և ինչ-որ տեղ էլ սնունդ տալիս կրոնական պատրանքներին՝ իրենց ժամանակակից դրսևորումներով: Բանն այն է, որ բնագիտական տեսությունները, բացահայտելով բնության այս կամ այն ոլորտներում գործող օրենքներն ու օրինաչափությունները, իրենց մատերիալիստական-աթեիստական նշանակությամբ հանդերձ, անմիջականորեն արժեքների համակարգի մեջ չեն մտնում, քանի դեռ սոցիալ-բարոյական վավերացում չեն ստացել:

Գիտական գիտելիքը, գաղափարը այն ժամանակ են վերածվում աշխարհայացքային համոզմունքի, դառնում կենսագործունեության շարժառիթ, երբ, բեկվելով մարդու կենսափորձի միջով, դրականորեն են ներգործում անհատի, հասարակության, մարդկության կենսագործունեության վրա: Իսկ եթե բացասական է այդ ազդեցությունը, ապա բարոյական վավերացում չի ստանում, մերժվում է, որը հանգեցնում է գիտության սոցիալ-բարոյական արժեզրկմանը և արգելակում, դանդաղեցնում աշխարհի գիտական պատկերի զարգացումը: Այսպիսով, գիտաաթեիստական աշխարհայացքը ձևավորվում է ոչ միայն և ոչ այնքան զուտ գիտական տվյալների, որքան հասարակական հարաբերությունների, սոցիալ-բարոյական արժեքների զարգացման շնորհիվ:

Կրոնական գիտակցությունը մի յուրահատկություն ևս ունի: Կրոնի՝ որպես աշխարհայացքային համակարգի, էությունը չի հանգում միայն աստծո նկատմամբ հավատին: Իրականում կրոնական աշխարհայացքն ավելին է, քան կույր հավատը գերբնականի հանդեպ: Վերջինս կրոնի հիմնական հատկանիշն է, որը կրոնական կոմպլեքսում բացարձակ իռացիոնալն է, գերբնականը: Կրոնական կոմպլեքսը բովանդակում է նաև այլ կարևոր տարրեր՝ բարոյական, ճանաչողական, գեղագիտական, փիլիսոփայական և այլն: Կրոնական աշխարհայացքում առկա է փորձնական գիտելիքի որոշակի տարր, օբյեկտիվ ճշմարտության մասնիկ, բայց սահմանափակ, աղավաղված, խեղաթյուրված, բացարձակացված, դոգմայի վերածված ձևով, որը և ծառայեցվում է կրոնական հավատի հիմնավորմանն ու արդարացմանը: Ուստի ճիշտ չէ հավասարության նշան դնել կրոնական կույր հավատի և կրոնական աշխարհայացքի միջև, նույնացնել դրանք: Մյուս կողմից, կրոնը իրականության, մարդու միջնորդավորված ճանաչումն է, դեպի ինքնաճանաչում և ինքնագիտակցում ընթացող բարդ պրոցեսի պատրանքային օղակ: Կ. Մարքսի բնորոշմամբ, կրոնը «հենց մարդու ճանաչումն է զարտուղի ճանապարհով, ճանաչում **միջնորդի միջոցով»** (նույն տեղը, էջ 18): Այս առումով կրոնական պատկերացումներում կատարվող փոփոխություններով, հասարակական-քաղաքական կյանքում կրոնի խաղացած դերով նույնպես կարելի է պատկերացում կազմել ինչպես դարաշրջանի, գոյություն ունեցող հա-

սարակության սոցիալ-քաղաքական կառուցվածքի, նրանում գոյացող կամ ընթացող հոգևոր միտումների մասին:

Եթե հասարակական գիտակցության և հոգեբանության մեջ սկսվում է նկատվել կրոնամիստիկական տրամադրությունների աճ, ուժեղանում է հետաքրքրությունը կրոնական արժեքների հանդեպ, ապա դրանք, վերջին հաշվով, սոցիալ-տնտեսական, բարոյական ոլորտներում ընթացող բացասական, անցանկալի միտումների յուրովի պատրանքային արձագանքն են, այն փաստի ամրակայումը, որ տեղի է ունենում հասարակական հարաբերությունների ապամարդկայնացման, օտարման, արժեքների արժեզրկման պրոցես, բարոյահոգեբանական մթնոլորտի վատթարացում:

Ինչպես հասարակական զարգացման, այնպես էլ բուն կրոնի պատմության ուսումնասիրությունը (թե՛ անցյալում, թե՛ այժմ) հաստատում է հետևյալ օրինաչափությունը. ինչպես ամենակոպիտ նախնական, այնպես էլ ժամանակակից ամենանրբին կրոնական նախապաշարումներն ու պատկերացումները ունեն մարդկային ծագում, որովհետև իրենց հիմքում թեև աղճատված ձևով, հասարակական կեցության, մարդկային էության հավիտենական հատկությունների (Ֆ. Էնգելս) արտացոլումն են:

Այսպիսով, սովետական մարդկանց մարքս-լենինյան գիտական աշխարհայացքի գաղափարներով զինելու բարդ և հակասական պրոցեսը անպայմանորեն պետք է խարսխվի սոցիալիզմի կենդանի, իրական զարգացման՝ որպես գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորման, օբյեկտիվ հիմքի վրա: Փոխադարձ կապ կա սոցիալիզմի փաստական զարգացման, նրա նվաճումների, աշխատավորության սոցիալ-քաղաքական, աշխատանքային ակտիվության և գիտամատերիալիստական աթեիստական աշխարհայացքին անցնելու միջև: Վերջինիս ձևավորման օբյեկտիվ հիմքը, նախադրյալը սոցիալիզմի հասարակական պրակտիկայի զարգացումն է և աթեիստական դաստիարակության նպատակասլաց կազմակերպումը: **«Կրոնը անհետանալու է** այն չափով, որ չափով զարգանալու է սոցիալիզմը... որի մեջ կարևոր դեր է պատկանում դաստիարակությանը»,— գրել է Կ. Մարքսը (նույն տեղը, էջ 25):

Մյուս կողմից, մարքս-լենինյան հեղափոխական ուսմունքի դիալեկտիկամատերիալիստական մտածելակերպի յուրացման ու գործադրման աստիճանով է պայմանավորված մարդկային գործոնի ակտիվացումը և վերջինիս վերակառուցման հիմնական շարժիչ ուժ դառնալը: Որովհետև որքան մեծ է սովետական մարդկանց սոցիալ-քաղաքական ակտիվությունը, բարձր նրանց գիտակցական վերաբերմունքը աշխատանքային գործունեության նկատմամբ, այնքան ավելի արդյունավետ կերպով են լուծվում սոցիալիստական հասարակարգի առջև ծառացած սոցիալ-տնտեսական և հոգևոր-մշակութային բարդ խնդիրները, ամրապնդվում ու բազմապատկվում նրա պատմական նվաճումները: Ինչպես նշվեց ՍՄԿԿ համամիութենական XIX կոնֆերանսում, վերակառուցումը, սոցիալիզմի նորացումը աներևակայելի են առանց հասարակության մտավոր, հոգևոր պոտենցիալի ըստ ամենայնի ակտիվացման:

---

# ՄԱՐԴՈՒ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՆՐԱ ՇԱՐԺԻՉ ՊՈՏԵՆՑԻԱԼԸ

**Ֆ. ՂԱԶԱՐՅԱՆ**

*Համաշխարհային գիտության մեջ մարդու պրոբլեմն այսօր դարձել է առաջատարներից մեկը: Այն ուսումնասիրվում է բազմաթիվ գիտությունների կողմից, համընդհանուր ուշադրության է արժանանում: Պատահական չէ, որ 1986 թվականին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությանը կից ստեղծվեց մարդու կոմպլեքսային ուսումնասիրման գիտական խորհուրդ, իսկ 1988 թվականի փետրվարին Մոսկվայում կայացավ համամիութենական կոնֆերանս՝ «Մարդու կոմպլեքսային ուսումնասիրման պրոբլեմները» ընդհանուր թեմայով:*

*Վերջին տարիներին զարգացած երկրներում առաջացել է գիտության նոր ճյուղ, գիտագործնական մի կոմպլեքս, որը կոչվում է «Մարդկային գործոնի կազմակերպում»: ԱՄՆ-ում, օրինակ, այն կոչվում է «կենսատեխնոլոգիա», Անգլիայում՝ «էրգոնոմիա», ՍՍՀՄ-ում՝ «էրգոնոմիկա»: էրգոնոմիկան ուղղված է նախ և առաջ մարդու աշխատանքային գործունեությանը, բացահայտում է նրա ռեզերվները և ստեղծագործական հնարավորությունների պոտենցիալը: 1961 թվականից Կալիֆորնիայում գործում է մարդու գիտահետազոտական ինստիտուտ (ԷՄԱԼԾՆ), որը զբաղվում է մարդու գերնորմատիվային հնարավորությունների ուսումնասիրմամբ:*

*Բացի այդ, սպորտային գիտության մեջ արագ տեմպերով զարգանում է մի նոր ուղղություն, որը մշակվել է ֆիզիկական կուլտուրայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում: Այն կոչվում է անտրոպոմաքսիմոլոգիա (ԱՄԼ): Այսօր անտրոպոմաքսիմոլոգիան, որպես մարդու ուսումնասիրման բնագավառում ոչ ավանդական գիտական ուղղություն, ճանաչված է և՛ մեր երկրում, և՛ արտասահմանում: ՅՈՒՆԵՍԿՕ-ի նախաձեռնությամբ արդեն անցկացվել են միջազգային կոնֆերանսներ և մի շարք սիմպոզիումներ գենետիկայի, հոգեբանության, բժշկագիտության. ֆիզիոլոգիայի, բիոտեխնիկայի, փիլիսոփայության, սոցիոլոգիայի բնագավառների առաջատար գիտնականների մասնակցությամբ: Անտրոպոմաքսիմոլոգիան ուսումնասիրում է մարդու հնարավորությունները, դրանց օպտիմալ ձևավորումն ու իրացումը պրոֆեսիոնալ գործունեության մեջ և առօրյա կյանքում՝ ձևաչափական տվյալների (հասակ, քաշ, մարմնի առանձին մասերի հարաբերակցություն) հիման վրա բացահայտում օրգանիզմի հիմնական համակարգերի ֆունկցիոնալ հնարավորությունները և օրինաչափությունները:*

*Այսպես օրինակ՝ օլիմպիական խաղերը հնարավորություն են տալիս ԱՄԼ-ի օգնությամբ յուրովի հաշվարկել ապագայի մարդուն: Օլիմպիադաներում գլխավորն այն է, որ այսօրվա օլիմպիականի հնարավորությունները դառնում են ապագայի մարդու շարժիչ պոտենցիալի յուրատեսակ նախատիպը: Դրա հետ մեկտեղ, որպես անտրոպոմաքսիմոլոգիական հետազոտությունների օբյեկտներ կարող են ծառայել ոչ միայն ժամանակակից և ապագա սպորտի բարձրագույն նվաճումների ռեկորդակիրները, այլև գործունեության այն ոլորտների ներկայացուցիչները, որտեղ կան պրոֆեսիոնալ խիստ վերահսկողություն և զանազան ընդունակությունների, այդ թվում՝ ուժի, շարժումների կոորդինացման, ստեղծագործության, արիության առավելագույն դրսևորման պահանջ և այլն:*

*ԱՄԼ-ն ունի ամեն ինչ, որպեսզի առողջ մարդու բժշկության բնագավառում դառնա հիմնարար հետազոտությունների հիմք: Վերջին տարիների հետազոտությունները ցույց են տալիս, որ իրական ուղիներ են բացվում ուսումնառության արագացման, աշխատունակության բարձրացման և ստեղծագործական երկարակեցության մեծացման բնագավառներում մարդու հնարավորությունները վերանայելու համար: «Ճանաչի՛ր ինքդ քեզ» հայտնի բանաձևում, գիտական լեզվով ասած, կոչ է արվում ճանաչել մարդկային գենոտիպում կոդավորված և նրա գործունեության մեջ դրսևորվող բնական հատկությունները, ընդունակություններն ու հնարավորությունները: Ճանաչելով ինքներս մեզ՝ մենք պետք է հասնենք մեր գոյության մինչև «արմատները», իսկ «մարդու համար արմատը,— ինչպես գրել են*

ՂԱԶԱՐՅԱՆ ՖՐՈՒՆԶԻԿ ԳԱԲՐԻԵԼԻ— Հայկական պետական ֆիզիկական կուլտուրայի ինստիտուտի պրոռեկտոր, մանկավարժական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը,— հենց ինքը մարդն է» (Երկեր, հ. 1, էջ 464)։

Մեր հեռավոր նախնիները ապրել են բարձրագույն կենդանիների ուրիշ տեսակների հետ անողոք մրցակցության պայմաններում, ուստի ծառերի վրա անցկացրած կյանքից անցումը անտառազուրկ հարթավայրերի էկոլոգիական նոր իրադրության՝ ստիպեց նրանց մոբիլիզացնել իրենց բոլոր հնարավորությունները, ինչը հասցրեց, նախ և առաջ, նրանց առջևի վերջավորությունների կիսաֆունկցիոնալության ուժեղացման։ Դրա շնորհիվ ընդլայնվեց շարժումների, շարժիչ գործունեության, օրգանիզմի գործողության ոլորտը։ Միլիոնավոր տարիներ մարդը հարմարվում էր տարածությանն ու ժամանակին։ Նման ադապտացիայի հիմքում ընկած էին շարժումներն ու շարժիչ ակտիվությունը՝ դրա ամենաբազմապիսի դրսևորումներով։ Ուժի և տոկունության, արագության և ժամանակի զգացումի, մարմնի ճկունության ու շարժունակության դրսևորումները դարձան մարդկության առաջադիմության նոր միջոցներ։

Անցյալի մեծ հայտնագործություններից մեկը եղավ նախնադարյան մարդու այն «հայտնությունը», որ իր շարժիչ հնարավորությունների օգտագործմամբ նա կարող է ոչ միայն հասնել զգալի արդյունքների, այլև բազմապատկել սեփական ուժերը, սովորել այդ բանն անել համապատասխան վարժություններ կատարելու միջոցով։ Վերջինս առաջընթաց խոշոր քայլ եղավ ֆիզիկական կուլտուրայի ձևավորման գործում և ունեցավ էական գործնական նշանակություն։ Հետևաբար, ֆիզիկական կուլտուրան որպես երևույթ հանդես է եկել վաղուց, այն մեր պատմության հասակակիցն է և ձևավորվել է շարժողական պատրաստության, առողջության ամրապնդման, ֆիզիկական զարգացման ապահովման և մարդու հնարավորությունների խթանման մարզում նրա գործնական պահանջմունքների ազդեցության տակ։

Հասարակության զարգացման պրոցեսում մարդկային օրգանիզմի մասին հազարամյակներ շարունակ գիտելիքներ են կուտակվել, որոնք ձևավորվել են, նախ և առաջ մարդկանց պրակտիկ փորձից։ Բնական է, որ հիվանդությունների և տառապանքների ըմբռնման՝ այդ եղանակով ձեռք բերված օրինաչափությունները մղել են որոնելու բուժման միջոցներ։ Իսկ այն ժամանակվա բժշկությունը լոկ բացատրել է հիվանդագին վիճակները՝ համարյա չզբաղվելով առողջ մարդկանց կացությամբ։

Ատոմային էներգիայի, գենետիկայի և տիեզերական թռիչքների, շարժիչ կուլտուրայի ծավալման մեր դարում գիտությունն սկսել է զբաղվել նաև առողջ, սոցիալականորեն ակտիվ, հուզաշխարհով հարուստ մարդու հնարավորություններով, գործունեության տարբեր ոլորտներում նրա ռեզերվային ընդունակությունների ուսումնասիրմամբ։ Մասնագետների կատարած դիտարկումները թույլ են տալիս պնդելու, որ այսօր ևս ամենևին ոչ բոլորն են կարողանում աշխատանքի պրոցեսում ճիշտ օգտագործել իրենց բնական հակումներն ու հնարավորությունները, լրիվ չափով իրացնել իրենց օրգանիզմի ռեզերվները։

Երբեմն ոչ ռացիոնալ կերպով է ծախսվում կամ բացահայտվում ֆիզիկական, մտավոր, հոգեկան և այլ հնարավորությունների պոտենցիալը։ Վերջին հաշվով հասարակությունն անդառնալի կորուստներ է կրում։ Դրանք դրսևորվում են տարբեր կերպ. որոշ մարդիկ ունենում են աշխատանքային երկարակեցության չափազանց կարճ ժամանակաշրջան, ոմանց մոտ երկար է տևում պրոֆեսիոնալ հասունացումը, ոմանք էլ պարզապես չեն բացահայտում իրենց ընդունակությունները։ Դա հավասարապես վերաբերում է նաև մարդկանց մարզական գործունեությանը։

Մարդու բնական հնարավորությունները համակողմանիորեն ու ժամանակին օգտագործելու պահանջմունքն առանձնապես սուր կերպով է դրսևորվել վերջին տասնամյակներում։ Ասենք, որ գիտատեխնիկական հեղափոխության բուռն զարգացումը հանգեցրել է նյութական բարիքների ստեղծման պրոցեսում, հոգևոր ստեղծագործության և սպորտի ոլորտում մարդու դերի նկատմամբ ձևավորված շատ հայացքների հեղաբեկման։ Հետևաբար, առողջ մարդու հնարավորությունների նկատմամբ պատմականորեն ստեղծված հայացքները ճշգրտումների են ենթարկվում կյանքի բուռն տրամաբանությամբ ու թելադրանքով։ Այսօր արդեն որոշակի հակասություններ կարելի է նկատել գիտատեխնիկական հեղափոխության պահանջների և մարդկային գործունեության նկատմամբ ավանդական մոտեցման միջև։

Մեր ժամանակներում, երբ խոսում են մարդկային գործոնի մասին, սովորաբար նկատի ունեն մարդու սոցիալական, կենսաբանական, հոգեբանական, շարժիչ հատկությունների ամբողջությունը, որոնք այս կամ այն կերպ դրսևորվում են նրա գործողությունների մեջ և դրանով իսկ ազդում սոցիալական պրոցեսների վրա։ Ուստի անհրաժեշտ է ստեղծել լավագույն պայմաններ անձի արդյունավետ զարգացման համար, կյանքի փոփոխվող պայմանների համեմատ մարդկանց բնական ընդունակությունների ռացիոնալ օգտագործման մակարդակը բարձրացնելու համար։ Ժամանակը թելադրում է մարդու մասին որքան կարելի է ավելի շատ բան իմանալու անհրաժեշտությունը, նա դառնում է բազմաթիվ գիտությունների՝ անատոմիայի, հնագիտության, բժշկագիտության, ժողովրդագրության, մարդաբանության, հիգիենայի, հոգեբանության, գերոնտոլոգիայի, էրգոնոմիկայի, գենետիկայի, սեռա-



բանության, էվրիստիկայի, ֆուտուրոլոգիայի ուսումնասիրության առարկա։

Այսպես, մարզական մանկավարժությունը զբաղվում է մարդու առողջության ամրապնդման, նրա ֆիզիկական զարգացման և ֆիզիկական պատրաստվածության, անհատի շարժումների կուլտուրայի, շարժիչ ակտիվության և շարժիչ հնարավորությունների ձևավորման հարցերով։ Այդ գործում մարզական մանկավարժներին օգնության են գալիս բժիշկները, հոգեբանները, կենսաքիմիկոսները և նույնիսկ գենետիկները։ Նման մոտեցումն ապահովում է մարդու շարժիչ հնարավորությունների կոմպլեքսային ուսումնասիրումը։

Ըստ ժամանակակից տվյալների, ներկա փուլում մարդու ճանաչողության հիմնական գիտական բնագավառներն են էվոլյուցիոն-պատմական, պոպուլյացիոն-ժողովրդագրական, օնտոգենետիկ-անձնային, բժշկական, տիեզերական և, իհարկե, ֆիզկուլտուրային-մարզական բնագավառները։

Գիտության մի շարք բնագավառներում (աշխատանքի հոգեբանություն, աշխատանքի ֆիզիոլոգիա և հիգիենա, տիեզերական կենսաբանություն, մարզական մանկավարժություն, ավիացիոն բժշկություն և այլն), լրջորեն ուսումնասիրվում է մարդու ռեզերվային հնարավորությունների պրոբլեմը։

Մարդու ընդունակությունները կարելի է բաժանել երեք խմբի. ուտիլիտար (կիրառական), ռեզերվային և պոտենցիալ (թաքնված)։ Իր ուտիլիտար հնարավորությունները մարդն օգտագործում է առօրյա կյանքում, կենցաղում, աշխատանքում՝ ընդ որում ծախսելով նվազագույն ջանքեր ու շարժումներ, պրոֆեսիոնալ վարպետություն։ Ռեզերվային հնարավորությունների իրացման համար պետք է գործադրել ավելի շատ ջանք, կամք, ցուցաբերել ավելի շատ շարժիչ և այլ ընդունակություններ։ Իսկ պոտենցիալ են համարվում այն հնարավորությունները, որ մենք մեր մեջ դեռ չենք բացահայտել։ Դրանք կարող են ընդհանրապես չբացահայտվել կամ դրսևորվել շատ ու շատ հազվադեպ։ Իսկ բացահայտվելու դեպքում տեղի է ունենում որակապես նոր տեղաշարժ՝ լինի դա գիտական հայտնագործություն, թե բանաստեղծական խոյանք, աշխատանքային սխրանք, թե աչքի ընկնող մարզական նվաճում։

Այն կարծիքը կա, թե սովորական մարդն օգտագործում է իր ֆիզիկական և մտավոր ընդունակությունների ու հնարավորությունների 10 տոկոսը միայն։ Որքան էլ տարօրինակ է, գիտնականները պնդում են, որ համաշխարհային ռեկորդների համար անգամ մարզիկները ծախսում են օրգանիզմի էներգետիկ ռեզերվների կեսից էլ պակասը։ Կա նաև այն կարծիքը, որ նույնիսկ ֆիզիկական առավելագույն ծանրաբեռնվածությունների ժամանակ մարդը ծախսում է իր էներգիայի 80 տոկոսը, իսկ 20 տոկոսը բնությունը կարծես պահում է որպես պաշար՝ ծայրահեղ դիստրեսի և կյանքի համար վտանգավոր իրավիճակների համար։

Մարդու ռեզերվային հնարավորությունները կարող են մեծանալ ֆիզիկական մարզման շնորհիվ, որն ունի երկարատև ու հարուստ պատմություն։ Ֆիզիկական մարզման՝ որպես մարդու օրգանիզմի շարժիչ հնարավորությունների նորմայի ընդլայնման միջոցի չափազանց բարձր արդյունավետությունը երևան է գալիս կենդանիների մարզման հետ համեմատելիս։ Այսպես, օրինակ, որոշ տվյալներով, հասունության շրջանին հասնելուց հետո, մարզման պրոցեսում շան ուժի ցուցանիշները աճում են 3—4 անգամ, ձիունը՝ 6—8, մարդունը՝ 10—12 անգամ, իսկ տոկունության ցուցանիշները՝ համապատասխանաբար 6—10, 10—15 և 15—20 անգամ։

Մարդու օրգանիզմի ռեզերվային հնարավորությունները աճում են մարզիկի՝ վարպետության աստիճաններով բարձրանալուն զուգընթաց, ուստի սպորտը մի հազվագյուտ բնագավառ է, որտեղ բացահայտվում են մարդու առավելագույն հնարավորությունները, որոնց իմանալը շատ անհրաժեշտ է։ Դա, նախ, շարժական գործողությունների թվի ավելացումն է և դրանց բարդացումը։ Սկզբունքորեն մարդը կարող է կատարել վիթխարի թվով շարժումներ. դրանք անհամեմատ ավելի շատ են, քան երաժշտական այն մեղեդիները, որ կարելի է ստեղծել յոթ նոտաներով։ Արտադրության ավտոմատացումը, բնակարանային և տրանսպորտային պայմանների բարելավումը ժամանակակից աշխարհում աստիճանաբար պարզեցնում են մարդկային շարժումների կառուցվածքը։ Իսկ սպորտում, ընդհակառակն, շարժումների թիվը զգալիորեն ընդլայնվում է, հարստանում, իսկ բուն շարժումները՝ բարդանում։ Դրանով էլ որոշվում է սպորտային վարպետությունը, տեխնիկայի կատարելությունը։ Այսօր մարմնամարզիկները, ակրոբատները, ջրացատկորդները, սինխրոնականները, ձևավոր չմշկասահորդները ցուցադրում են առանձին շարժումներ և դրանց կոմբինացիաները հսկայական կոորդինացիոն բարդություն ունեն, որոնց կատարումը սրանից մոտ 10 տարի առաջ բոլորովին անհնարին ու անհավանական էր թվում։

Երկրորդ, մարդու հնարավորությունները որոշվում են առանձին ֆունկցիոնալ համակարգերի հզորությամբ։ Այսպես, երիտասարդ, առողջ, բայց չմարզված տղամարդու սիրտը հանգիստ վիճակում մեկ րոպեում մղում է 4,5—6 լիտր արյուն։ Մկանային ծանր բեռնվածության ժամանակ արյան շրջանառությունը մեծանում է, նրա առավելագույն մակարդակը մեկ րոպեում հասնում է 20—23 լիտրի։ Սակայն երկրորդ կարգի դահուկորդների մոտ այն կազմում է արդեն 28—30, իսկ ռեկորդակիրների ու չեմպիոնների մոտ՝ մինչև 40—43 լիտրի։ Այնպես որ,

մարդկային օրգանիզմի ռեզերվային հնարավորությունը ընդհանրապես ապշեցուցիչ է։

Յուրաքանչյուր օրգանիզմ նորմալ պայմաններում իր մեջ կրում է ուժերի հսկայական պաշար։ Հարցն այն է, թե ինչպես հնարավորին չափ ավելի լրիվ օգտագործել ուժերի այն հարուստ պաշարը, որ թաքնված է օրգանիզմի մեջ։ Եվ ֆիզիոլոգների, կենսաքիմիկոսների, կենսամեխանիկների, մարզիչների մի ամբողջ բանակ համայն աշխարհում ուղիներ է որոնում՝ ավելի լրիվ օգտագործելու մարդու պոտենցիալ հնարավորությունները աշխատանքային գործունեության շատ բնագավառներում և, իհարկե, նաև սպորտում։

Այժմ արդեն գաղտնիք չէ, որ միջազգային կարգի մարզիկները, որոնք ներկայացնում են աշխարհի մարզական տարբեր տերություններ, ունեն ֆիզիկական, հոգեբանական, տակտիկական, կամային, տեխնիկական պատրաստության մոտավորապես միատեսակ մակարդակ, բայց մրցումների ժամանակ առավելապես հաղթում են նրանք, ովքեր ավելի լավ են օգտագործում օրգանիզմի անհատական էներգետիկ փոխանակության օրինաչափությունները։

Ակնհայտ է, որ մարզական ռեկորդների նորացման ձգտումը պայմանավորված է իր հնարավորություններն ընդլայնելու, ինքն իրեն ճանաչելու մարդու ներքին պահանջմունքով։ Հասկանալի է, որ նման ձգտումը դրսևորվում է ոչ միայն ինտելեկտուալ, այլև հոգեբանական ու մտավոր, ֆիզիկական և շարժողական ընդունակությունների կատարելագործման ոլորտում։

Մեր օրերում նկատելի մտավոր զարգացմամբ հրապուրվելը, ի վնաս ֆիզիկականի, հակաբնական է։ Չնայած դրան, հաճախ դպրոցում մանկավարժների ավելի մեծ ուշադրությունն են վայելում այն երեխաները, որոնց տաղանդը երևան է գալիս մտավոր զարգացման բնագավառում, և անարդարացիորեն պակաս նրանք, որոնց ձիրքը դրսևորվում է մոտորիկայի, այսինքն՝ բազմապիսի շարժումներ կատարելու կարողության ոլորտում, ովքեր օժտված են շարժման բարձր կուլտուրայով, դրսևորում են ավելի մեծ շարժողական ակտիվություն սպորտում։

Աստիճանաբար մարդիկ գալիս են այն համընդհանուր գիտակցության, որ պարզապես չի կարելի արհամարհել ֆիզիկական կատարելությունը։ Եվ այդ տեսակետից ֆիզիկական կուլտուրան ու սպորտը այն ռեզերվուարն են, որտեղ պահվում է շատ արժեքավոր պարունակություն։ Այժմ արդեն ավելի ու ավելի շատ մարդիկ են դիմում քաղաքակրթության անբարենպաստ ազդեցությունը փոխհատուցող միջոցին՝ շարժիչ ակտիվությանը։ Այդ տեսակետից ֆիզիկական կուլտուրան կոչված է բարձրացնելու ուտիլիտար շարժիչ հնարավորությունների մակարդակը և ավելի լրիվ օգտագործելու ռեզերվային հնարավորությունները։ Վերջինս կնպաստի նաև պոտենցիալ ընդունակությունների դրսևորմանը, որը բնորոշ է, իհարկե, սպորտային և այլ տեսակի գործունեությանը։ Այստեղ հիմնական սկզբունք են սիստեմատիկությունը և բեռնվածության աստիճանական բարձրացումը։ Դա անհրաժեշտ է այն պատճառով, որ մշտական և անփոփոխ բեռնվածության դեպքում օրգանիզմը հարմարվում է դրան, և հետագայում ռեզերվային հնարավորությունները կբարձրանան ավելի դանդաղ։

Այսօր մարզման օգնությամբ անհամեմատ ավելի հեշտ կարելի է ձեռք բերել մարդու ֆիզիկական հնարավորությունների դրսևորման այնպիսի արդյունքներ, որոնք դեռ բոլորովին վերջերս համարվում էին բացառիկ։ Այսպես, տակավին 1913 թվականին ֆրանսիացի գիտնական Գ. էբերի կողմից մշակված «ուժի կոդեքսի» համաձայն, բացառիկ և ատլետիկ էին համարվում 100 մետր վազքի մոտավորապես 12—13 վայրկյան և ազատ ոճի լողի՝ 1.45 րոպե արդյունքները։ Ներկայումս այդպիսի արդյունքներ ցույց են տալիս միլիոնավոր մարդիկ, որոնք նույնիսկ հատուկ կերպով չեն էլ զբաղվում այդ մարզաձևերով։ Կամ 1928 թվականի՝ ՍՍՀՄ ժողովուրդների առաջին սպարտակիադայի տարվա, համամիութենական ռեկորդներն այսօր համապատասխանում են մարզական երկրորդ կարգին, և դրանք ցույց են տալիս հարյուր հազարավոր մարզիկներ... Այլ կերպ ասած, այն արդյունքները, որոնք դարասկզբին համարվում էին բացառիկ, այսօր տիպական են, սովորական։

Մանկավարժական և սոցիոլոգիական հետազոտությունների արդյունքների ընդհանրացումը ցույց է տալիս, որ շարժիչ ռեզերվային հնարավորությունների բարելավման համար շարժումների ռացիոնալ պահանջմունքի մեծությունները գտնվում են հետևյալ մոտավոր սահմաններում (շաբաթական ժամերի թիվը). դպրոցականներ՝ 7—12, ՊՏՈՒ-ների և տեխնիկումների սովորողներ՝ 8—10, բանվորներ և ծառայողներ՝ 6—10, մարզիկներ՝ 12 և ավելի։ Այժմ առաջարկվում է շարժողական ակտիվության նորմավորման երեք մակարդակ. ֆիզկուլտուրային-հիգիենիկ մինիմում (ամենօրյա առավոտյան մարմնամարզություն, կոփող պրոցեդուրաներ, զբոսանքներ). ֆիզկուլտուրային-ընդհանուր նախապատրաստական մինիմում՝ վերոհիշյալից բացի, (բաց օդում 30—40 րոպե պարապմունքներ ֆիզիկական վարժություններով) և ֆիզկուլտուրային-մարզական օպտիմում (շաբաթական 3—6 ժամյա պարապմունքներ ֆիզիկական վարժություններով)։ Առաջին մակարդակը առողջության հասունացման պարտադիր պայմանն է, երկրորդը նպաստում է ներդաշնակ ֆիզիկական զարգացմանը, իսկ երրորդը ծառայում է որպես շարժողական բարձր պատրաստվածության գրավական։

Այսօր հայտնի է, որ շարժողական ակտիվությունը պահպանելու, նրա մակարդակը չափելու և ռեզերվային հնարավորությունները խթանելու համար կարելի է օգտագործել միջոցների ամենաբազմապիսի տարբերակներ։ Իբրև դրանցից մեկը կարելի է խորհուրդ տալ հետևյալը. օրական կատարել 10 հազար քայլ, ամեն օր վազել 15—20 րոպե, շաբաթական ունենալ 6—10 ֆիզիկական ակտիվության ժամ, ցանկացած շարժումը մեկ րոպեում զարկերակի 120—130 հարվածի հաճախականության դեպքում, օրական ծախսել 2 հազար կիլոկալորիա։

Որպես շարժողական պոտենցիալը բարձրացնող միջոցներ՝ պետք է օգտագործել քայլքը, մարմնամարզությունը, լողը, աէրոբիկան։ Ֆիզիկական վարժությունների այս կամ այն տեսակի օգտագործումը պայմանավորված է մարդու շարժողական հնարավորությունների մակարդակով։ Ցածր հնարավորություններ ունեցող մարդիկ պարապմունքների ժամանակի ընդհանուր ծավալի 60 տոկոսը պետք է հատկացնեն տոկունության վարժություններին, իսկ 40 տոկոսը՝ ճկունության, շարժումների կոորդինացման, ցատկունակության բարձրացմանը։ Միջակ հնարավորություններ ունեցող մարդկանց մոտ այդ հարաբերակցությունը կազմում է 50-ը 50 տոկոս։ Եվ, վերջապես, շարժողական բարձր հնարավորություններ ունեցող մարդկանց մոտ այն կազմում է 40-ը 60 տոկոսի չափով, այսինքն՝ պետք է գերակշռեն ներգործության լայն ընդգրկում ունեցող վարժությունները։

Ինչպես հայտնի է ֆուտուրոլոգիան գիտություն է մարդու և մարդկային հասարակության ապագայի մասին։ Ֆուտուրոլոգիան այսօր չի կարող իր խնդիրները լուծել՝ առանց մարդու ֆիզիկական շարժողական, հոգեկան, կենսաբանական և այլ հնարավորությունները պարզելու, ուստի այն շատ մոտ է կանգնած նաև մարզական գործունեությանը։

Գիտնականները հակված են մտածելու, որ մարդու էվոլյուցիոն զարգացումը ոչ միայն չի դադարել, այլև շարունակվելու է ապագայում։ Եվ դա, առաջին հերթին, վերաբերում է օրգանիզմի ֆունկցիոնալ և շարժողական հնարավորություններին։ Այդ մասին են վկայում ռեկորդային արդյունքները սպորտում, որոնք արտացոլում են մարզիկների հարաճուն հնարավորությունները տարբեր մարզաձևերում։ Իր ժամանակ Կ. Մարքսը մարդու բնության վերաբերյալ գիտությունը հարստացրել է մարդկային հնարավորությունների հարաճուն պոտենցիալի, պատմական առումով նրա դինամիկ զարգացման մասին դրույթով։ Դա հավասարապես վերաբերում է նաև շարժողական հնարավորություններին, շարժողական պոտենցիալին։

Այսօր կարելի է ենթադրել, որ մարդու էվոլյուցիան կշարունակվի նրա շարժողական կարողությունների ավելի ու ավելի մեծ առաջընթացի ուղղությամբ։

XXI դարի շեմին մարդն ակտիվորեն յուրացնում է տիեզերքը, համաշխարհային օվկիանոսը, մոլորակի բևեռային տարածքները, անապատները, լեռները, տունդրան։ Պայմաններն այնտեղ արտասովոր են։ Շեշտակիորեն աճում է օրգանիզմի շարժողական բեռնվածությունը, բարձրանում են պահանջները նրա ֆիզիոլոգիական և հոգեբանական ոլորտների նկատմամբ։ Օրինակ, բաց տիեզերք դուրս եկող տիեզերագնացի երակազարկը մեկ րոպեում կազմում է մոտ 200։ Նույնպիսի երակազարկ ունեն նաև էՀՄ-ների օպերատորները, հեռուստատեսության ռեժիսորները, դերասանները, մարզիկները։

Անցյալում, այսօր և ապագայում մարդու շարժողական ակտիվության գնահատման տեսակետից կարելի է նշել, որ մեր նախորդների նման, ապագայի մարդը ևս շարժվելու է ավելի շատ, քան այսօր։ Այսպես, եթե անցյալում մարդն իր գոյության համար անչափ շատ էր շարժվում, ամենաբազմապիսի շարժումներ կատարում (վազք, որս և այլն), ապա այժմ, գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում, ավտոմատացման, ռոբոտացման և կոմպյուտերացման ժամանակաշրջանում նա ավելի շատ նստած է լինում։ Ապագայում մարդը ստիպված պետք է լինի մեծացնել շարժողական ակտիվության տեսակարար կշիռը, իր շարժումների ծավալը։ Հետևաբար, ապագան դարձյալ պատկանում է շարժվող մարդուն։

Հետաքրքրական է, որ 1986 թվականի վերջին կանադական Վանկուվեր քաղաքում, «էՔՍՊՈ—86» միջազգային ցուցահանդեսում մի հատուկ բաժին կոչվում էր «Մարդը շարժման մեջ»։ Այդ բաժինն իրենից ներկայացնում էր անցյալի, ներկայի և ապագայի մարդու փոխադրամիջոցների եռմիասնական պատկերը։ Այստեղ կարելի էր տեսնել բեռնակիր ուղտեր և փղեր, առաջին տրամվայներն ու օդապարիկները, շոգեքարշեր և կառքեր և այլ շատ բաներ։ Եվ դրանց թվում պարտադիր կերպով հին դահուկներ ու հեծանիվներ։

Վերջին տարիներին կանխատեսումներ են անում մարդկային բնության, շարժումների կուլտուրայի և ընդհանրապես նրա հնարավորությունների վրա նպատակամղված ներգործություն իրականացնելու մասին։ Գտնում են, որ այդպիսի գործոններից են մարդու առողջության պահպանման նոր մեթոդների որոնումները, նրա ֆիզիկական հնարավորությունների կատարելագործումը։ Ապագայի մարդու մեջ գիտնա-

չկա։ Այսինքն՝ եթե արտադրվում է, կնշանակի, երաշխավորվում է նաև նրա վաճառքը։ Զգալի չափով խստացվել են խմիչքի վաճառքի կանոնները։ Սահմանափակվել է այն մթերային խանութների թիվը, որտեղ թույլատրվում է խմիչքի առևտուրը։

Ընդհանուր առմամբ՝ ոգելից խմիչքների չարաշահման դեմ պայքարի հաջողությունը կախված է մի շարք հանգամանքներից։ Նախ և առաջ անհրաժեշտ է գիտականորեն հիմնավորված օրենսդրություն՝ հիմնված վարչական, հասարակական և դաստիարակչական ներգործության միջոցառումների կոմպլեքսային համակարգի վրա, երաշխիք ունենալ, որ հակաալկոհոլային օրենսդրության բոլոր պահանջները կիրականացվեն կյանքում։ Դրա համար հարկավոր են հետևյալ պայմանները. բնակչության առողջության պահպանությունը, որպես կարևոր սոցիալական պրոբլեմ, պիտի գտնվի պետության քաղաքականության կենտրոնում։ Հարկ է ոգելից խմիչքների արտադրությունն ու սպառումը կենտրոնացնել պետության ձեռքում, լրիվ բացառել տնային ինքնաթորումը, մասնավոր ու կոոպերատիվ գործարքները։ Ի վերջո, խիստ կարևոր են ոգելից խմիչքների արտադրության և իրացման աստիճանական կրճատումը. բնակչության մեջ հակաալկոհոլային գիտակցության դաստիարակության ուժեղացումը։

Ոգելից խմիչքների արտադրությունը և սպառումը, ինչպես նաև վարչական ու քրեական իրավունքի սահմանումը պիտի իրականացվեն բնակչության հակաալկոհոլային գիտակցության դաստիարակության մակարդակի հետ համընթաց։ Քանի որ վերջինիս համար պահանջվում է գիտակցության վերակառուցում, ուստի վարչական միջոցառումները պիտի իրականացվեն աստիճանաբար՝ հաշվի առնելով յուրաքանչյուր հանրապետության ազգային ու տնտեսական առանձնահատկությունները, կենցաղային սովորությունները և կուլտուրական մակարդակը։

Դարի պրոբլեմը կարող է վերջնական լուծում ստանալ համոզմունքի դաստիարակման ճանապարհով, իսկ դրա համար բնակչությունը պետք է զինված լինի անհրաժեշտ ինֆորմացիայով։ Չունենալով ճիշտ պատկերացում ոգելից խմիչքների ազդեցության մասին՝ մարդիկ հաճախ սխալ հետևությունների են հանգում։ Այդ տեսակետից էլ հակաալկոհոլային պրոպագանդան ձեռք է բերում բացառիկ կարևոր նշանակություն։

Անկասկած, սոցիալիստական հասարակարգում ստեղծվել են բոլոր պայմանները այս կարևոր սոցիալ-առողջապահական պրոբլեմի լուծման համար։ Սովետական պետությունն ունի գիտականորեն հիմնավորված օրենսդրություն, ալկոհոլի օգտագործումը կարգավորվում է պետական. սկզբունքով, կա հակաալկոհոլային պրոպագանդայի լայն համակարգ։

Մենք քաջ գիտակցում ենք,— ասել է Մ. Ս. Գորբաչովը,— որ մեր հասարակության մեջ սթափությունը որպես կյանքի նորմ արմատավորելու գործում սպասվում է տևական, համառ աշխատանք։ Մենք համբերություն ունենք։ Առավել ևս, որ այդ գիծն անցկացնելիս ՍՄԿԿ Կենտկոմը հենվում է ամբողջ ժողովրդի աջակցության, հասարակական կարծիքի հասունության և ուժի վրա։

# ԱԼԿՈՀՈԼԸ ՆԱՀԱՆՋՈՒՄ Է

## Տ. ԱՍՄԱՆԳՈՒԼՅԱՆ

ՄԱՐԴԻԿ ՍՈՎՈՐԱԲԱՐ խուսափում են հիվանդածին գործոնների հետ շփվելուց՝ գիտակցելով, որ դրանք սպառնում են առողջությանն ու կյանքին (իհարկե, ոչ բոլոր դեպքերում է հնարավոր խուսափել բացասական գործոնի ազդեցությունից, քանի որ նրա մուտքը օրգանիզմ կարող է լինել աննկատելի)։ Ալկոհոլի հարցում վիճակը միանգամայն այլ է։ Այն չի կարող օրգանիզմ մուտք գործել գաղտագողի, մեր կամքից անկախ։ Ընդհակառակը, այստեղ «զոհն» ինքն է ձեռք մեկնում «չարիքին»։ Իսկ ի՞նչն է ստիպում մարդուն անելու այն, ինչը, կարծես թե, հակասում է առողջ տրամաբանությանը։ Այս պարադոքսի հիմնական պատճառներից մեկն այն է, որ շատերը չգիտեն ճշմարտությունը ալկոհոլի մասին։

Ոգելից խմիչք «ճաշակում են» ամենուրեք, սակայն նրա նկատմամբ անզուսպ պահանջ առաջանում է ոչ բոլորի մեջ։ Մի շարք պետությունների տվյալներով, ալկոհոլամոլությամբ տառապում է բնակչության 3—10 տոկոսը։ Ոգելից խմիչքի առանձնահատկությունը կայանում է նրանում, որ նրա հաճախակի գործածումից մարդու մեջ առաջանում է հակում դեպի ալկոհոլը, այսպես կոչված՝ ալկոհոլային կախվածություն։ Բացի այդ ձևավորվում են յուրահատուկ հոգեկան վիճակ, «բարեկեցության» զգացողություն, ուժերի հորդում, դուրեկան ինքնազգացում, որն, անկասկած, ուժեղացնում է պահանջը ալկոհոլի նկատմամբ։

Բնակչության որոշ շրջաններում տարածված է այն սխալ կարծիքը, թե, իբր, ալկոհոլը վտանգավոր է միայն այն դեպքում, երբ բացակայում են խմելու կուլտուրան և չափավորության զգացումը։ Իսկ ոմանք էլ պնդում են, թե «նորմալ» չափերը նույնիսկ օգտակար են։ Ալկոհոլ գործածողներն իրենց մխիթարում են, որ այն, իբր, բարձրացնում է մարդու կենսական ուժերը, աշխատունակությունը և օրգանիզմի համար էներգիայի աղբյուր է, նույնիսկ՝ դեղամիջոց որոշ հիվանդությունների դեմ։ Եվ նման սխալ պատկերացումները երբեմն այնքան ամուր են նստած մարդկանց հոգու մեջ, որ ճշմարիտ խոսքը հաճախ չի ընկալվում նրանց կողմից, եթե նույնիսկ այն հիմնավորվում է գիտականորեն, հավաստի տվյալներով։

Խոսելով ալկոհոլի ազդեցության մասին՝ նպատակահարմար ենք համարում սկզբում կանգ առնել հիվանդությունների տարածվածության և մահացության պատճառների վրա։ Վիճակագրությունը հավաստում է, որ ներկայումս բնակչության մահացության 70 տոկոսը կազմում են երկու խումբ հիվանդություններ. սիրտ-անոթային համակարգի հիվանդություններ և չարորակ ուռուցքներ։ Մարդկանցից 3-ից 2-ը մահանում է այնպիսի հիվանդություններից, որոնց ամենալուրջ պատճառներից մեկը, առողջապահության համաշխարհային կազմակերպության տվյալներով, վնասակար սովորություններն են, այդ թվում՝ ալկոհոլի գործածումը։ Ընդ որում ալկոհոլային խմիչքների գործածման չափի և նշված հիվանդություններով պայմանավորված մահացության մակարդակի բարձրացման միջև նկատվում է զուգահեռություն։

Անհրաժեշտ է մարդկանց համոզել, որ նրանք ալկոհոլ գործածում են ոչ այնքան ուրախ տրամադրություն, բարի զգացմունքներ արթնացնելու նպատակով, որոնք բնական են խնջույքների, տոների և զանազան այլ հանդեսների ժամանակ, որքան՝ այդ առիթներն օգտագործում են արդարացնելու և օրինականացնելու իրենց ոչ չափավոր վարքագիծը։

Առողջապահության համաշխարհային կազմակերպությունը ալկոհոլը համարել է թույն։ Գինու սպիրտը (էթանոլը) ունի հեռավոր նմանություն սննդանյութերին, սակայն նա սննդանյութ չէ։ Թույների ազդեցության քանակական առանձնահատկությունների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ներազդման ուժը ուղիղ համեմատական է դոզայի մեծությանը. որքան մեծ է դոզան, այնքան ուժեղ է ներգործությունը և, ընդհակառակը, որքան փոքրանում է այն, պակասում է նաև ազդեցության ուժը։ Հետևու՞մ է, արդյոք, դրանից, որ ալկոհոլի փոքր քանակը անվնաս է օրգանիզմի համար։ Անկասկած, գոյություն ունի ուղղակի կապ չափի մեծության և ազդեցության աստիճանի միջև։ Ելնելով այս սկզբունքից՝ արդյոք չի՞ կարելի պնդել, որ ալ-

ԱՍՄԱՆԳՈՒԼՅԱՆ ՏԻԳՐԱՆ ԱՐՄԵՆԱԿԻ— Երևանի պետական բժշկական ինստիտուտի ընդհանուր հիգիենայի ամբիոնի վարիչ, բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:

կոհոլի չափավոր գործածումը անվնաս է կամ նույնիսկ օգտակար։

Անկասկած, ալկոհոլի փոքր քանակով գործածումը (մինչև 50 գրամ օղու հաշվով) հազվադեպ, առողջ օրգանիզմի համար լուրջ հետևանքներ կարող է չթողնել։ Սակայն եթե որևէ մեկն ունի ալկոհոլային տրամադրվածություն, ապա դա նրա համար դառնում է դժբախտություն։ Եվ մենք նախօրոք չգիտենք, թե ո՞վ է այն անձնավորությունը և ե՞րբ, ու՞մ մեջ առաջին անգամ համտես արած աննշան քանակով օղին հետագայում կարող է հանգեցնել ողբերգական վախճանի։ Իհարկե, բոլորի մոտ չէ, որ այն հետագայում դառնում է կյանքի նորմ, դա լինում է ընդամենը մի քանի տոկոսի մոտ։ Սակայն, եթե հաշվի առնենք, որ խմիչք գործածում են բոլորը, ապա նրա 3—10 տոկոսը պետության մասշտաբով հսկայական է, որը չի կարող մտահոգության առարկա չլինել։ Հիշենք, որ յուրաքանչյուր հարբեցողի հետևում գտնվում են մի ամբողջ ընտանիք և նրա ապագա սերունդների ճակատագիրը։ Անկասկած, վիճակը կարող է լինել բարվոք, եթե ընդհանրապես խմիչքի գործածում չլինի։

Ինչպիսի՞ն է ալկոհոլամոլության բնույթը. կենսաբանակա՞ն, թե՞ սոցիալական։ Այս հարցի պարզաբանումը մեծապես կարող է օգնել ճիշտ տակտիկական գծի մշակմանը, միջոցառումների գիտականորեն հիմնավորված ձևով կազմակերպմանը։ Նախ և առաջ անհրաժեշտ է նշել, որ սոցիալական հանգամանքների դերն անժխտելի է, թեև բազմաթիվ պետություններում ալկոհոլամոլությունը հավասարապես տարածված է բնակչության բոլոր խավերի շրջանում՝ ինչպես աղքատների, այնպես էլ հարուստների։ Ալկոհոլամոլության սոցիալական պայմանավորվածության հիմքում ընկած են հոգեբանական հանգամանքներ։ Ոգելից խմիչքների նկատմամբ որոշ մարդկանց ձգտումը նպատակ ունի բուժել, ավելի ճիշտ՝ ժամանակավորապես մոռացության մատնել սոցիալական վերքերը, հասարակական անբավարարվածությունը։ Դա ավելի հաճախ նկատվում է տնտեսապես չապահովված խավերի շրջանում, որոնք իրենց սփոփանքը գտնում են հարբեցողության մեջ։ Սակայն սխալ կլինի կարծել, թե կենցաղային ու տնտեսական պայմանների բարելավումն առանց հատուկ միջոցառումների կարող է վերացնել այս սոցիալական չարիքը։ Անցյալ հարյուրամյակում ալկոհոլամոլությունը առաջին հերթին տարածված էր բանվոր դասակարգի և մյուս չքավորական խավերի մեջ, որի մասին բազմիցս նշել են մարքսիզմի դասականները։

Ժամանակակից պայմաններում վիճակը փոխվել է։ 1980-ական թվականների սկզբներին առողջապահության համաշխարհային կազմակերպության ուսումնասիրությունները՝ նվիրված սկանդինավյան երկրներում հակաալկոհոլային միջոցառումների արդյունավետությանը, հնարավորություն չընձեռեցին պարզելու չարիքը ծնող պատճառները։ Առանձին վերցրած ոչ մի գործոն կամ նույնիսկ գործոնների մի ամբողջ խումբ, որ առաջարկվել էր բացահայտելու անբարենպաստ վիճակը (կենցաղային պայմանների ճգնաժամ, սոցիալական աղքատություն, ուրբանիզացիա, ազատ ժամանակի մեծացում, գնողունակության բարձրացում), որպես հարբեցողության պատճառ ճանաչվել է անբավարար։

Ալկոհոլի ազդեցությունը մեծ է ինքնազգացման, տրամադրության և հույզերի վրա։ Մարդը, որպես մտածող կենսաբանական օբյեկտ, իր գործունեության ընթացքում ձգտում է ստեղծել բարեկեցության վիճակ իր բարձրագույն նյարդային գործունեության համար։ Այդ տեսակետից նրա ուշադրությանն են արժանանում այնպիսի նյութերը, որոնք ընդունակ են ազդեցություն գործել հոգեկան ոլորտի վրա, առաջացնել, այսպես կոչված, կայֆ։ Սակայն եթե ալկոհոլային կախվածության հիմքում ընկած լիներ միայն այդ շարժառիթը, ապա կենդանիների մեջ ալկոհոլամոլության մոդելը չէր ստացվի։

Ալկոհոլի նկատմամբ մարդու վարքագծի ձևավորման մեջ առաջնակարգ նշանակություն ունեն կամքի ուժի դաստիարակությունը, հասարակական պարտքի զգացողությունը։ Լ. Ն. Տոլստոյը նշել է, որ սթափ վիճակում գտնվող մարդու համար անհարմար է այն, ինչ անհարմար չէ հարբածի համար։ Այս խոսքերի մեջ արտահայտված է ամենաէական և հիմնական պատճառը, թե ինչու են մարդիկ դիմում հարբեցնող նյութերին։ Մեծ գրողը պարզաբանում է, որ նրանք դիմում են թմրանյութերին, որպեսզի անհարմար չլինի կատարելու այն քայլը, որ հակառակ է խղճին, կամ նրա համար, որպեսզի իրենց հասցնեն այնպիսի վիճակի, երբ կարելի է կատարել մի արարք, որը խղճի դեմ է։ Հարբածին ոչինչ անհարմար չէ և դրա համար, եթե մարդը ցանկանում է կատարել այնպիսի արարք, որը նրան արգելում է խիղճը, նա դիմում է հարբեցողության։ Ավազակությունը, գողությունը, անբարոյականությունը գոյություն չունեն առանց խմիչքի։

Ալկոհոլը կենտրոնական նյարդային համակարգի թույն է։ Սակայն որքան էլ թույնի ազդեցությունը ընտրողական բնույթ ունենա, այն չի կարող սահմանափակվել միայն մի որևէ օրգանի շրջանակներում։ Դեռ ավելին, չկա մի օրգան, որը չենթարկվի ալկոհոլի ազդեցությանը։ Իհարկե, ուղեղի վրա ազդեցությունն արտահայտվում է նախնական շրջանում, երբ դեռ չեն նկատվում փոփոխություններ մյուս օրգանների կողմից։ Բազմաթիվ տվյալները վկայում են, որ մի շարք երկրներում մահվան պատճառների մեջ ալկոհոլամոլությունը գրավում է երրորդ տեղը՝ սրտանոթային հիվանդություններից և չարորակ ուռուցքներից հետո։ Տուժում են ոչ



միայն նրանք, ովքեր խմում են «չափից ավելի», այլև նրանք, ովքեր խմում են «չափավոր», որն իր վրա չի հրավիրում հասարակության ուշադրությունը։ Բնակչության մեջ տարածված է այն սխալ կարծիքը, որ եթե փողոցներում չենք հանդիպում այնպիսի հարբեցողների, որոնց վարքագիծն անմիջապես գրավում է շրջապատի ուշադրությունը, ուրեմն ամեն ինչ բարեհաջող է։ Հաստատված է, որ «չափավոր» հարբեցողությունից առաջանում են լյարդի, ստամոքսի, ենթաստամոքսային գեղձի ախտահարում, նյութափոխանակության խանգարման հիվանդություններ։ Անկասկած, մեծ է հարբեցողության դերը այն հիվանդությունների առաջացման մեջ, որոնք կյանքի տևողության կրճատման և հաշմանդամության հիմնական պատճառն են։ Առանց չափազանցման կարելի է ասել, որ մեր ժամանակներում վնասակար սովորությունները դարձել են կյանքը և առողջությունը լիմիտավորող գործոն։

Թվում է, թե ավելորդ է խոսել այն մասին, որ խմիչքը կարող է նպաստել ստեղծագործական վերելքին և աշխատունակության բարձրացմանը։ Ճշմարտությունը պահանջում է ասել, որ, իրոք, ալկոհոլը բազմաթիվ թմրանյութերի նման օժտված է երկֆազանի ազդեցությամբ։ Փոքր դոզաներից (20—50 գրամ օղի) առաջանում է, այսպես կոչված, «սրճի էֆեկտ», որից բարձրանում է աշխատունակությունը, սակայն այդ դրդման շրջանը երկար չի տևում, շուտով հաջորդում է հաջորդ փուլը՝ արգելակման շրջանը։ Անտարակույս, ալկոհոլից վնասված ուղեղն ի վիճակի չէ ճշտորեն ղեկավարելու աշխատանքային պրոցեսը։

Մեր օրերում սոցիալական այդ չարիքի դեմ մղվող պայքարը նոր թափ ու բովանդակություն է ստացել։ Հստակ խնդիր է դրվել՝ ալկոհոլը խսպառ վերացնել հասարակության կյանքից։ Սթափ ապրելակերպի հաստատման ճանապարհին շրջադարձային նշանակություն ունեցավ «Հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը (1985 թ. մայիս)։ Անցած ժամանակաշրջանում զգալիորեն պակասել են ոգելից խմիչքների արտադրությունը և սպառումը։ Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՀ-ում 1987 թվականին, 1986 թվականի համեմատությամբ, օղու և լիկյորի արտադրությունը կրճատվել է 10, իսկ խաղողի գինունը՝ 14 տոկոսով։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է նշել, որ պակասել է խաղողի արտադրությունը։ Այդ բուսաբուծական մթերքի գնումները 1986 թ. կազմել են 233 հազար տոննա, իսկ 1987 թ.՝ 139,7 հազար տոննա, այսինքն՝ նվազել են 40 տոկոսով։

Իրենց գործունեությունն են ծավալել ՍՍՀՄ հանրապետություններում ստեղծված սթափության համար պայքարի կամավոր ընկերությունները։ Սկզբնական կազմակերպություններ են ստեղծվել աշխատավորական բազմաբնույթ կոլեկտիվներում, ուսումնական հաստատություններում։

Երևանի բժշկական ինստիտուտի սթափության համար պայքարի ընկերության գործունեությունը ընդգրկում է շուրջ երկու տարի։ Մեզ մոտ ալկոհոլային ախտաբանության հարցերը մտցված են տեսական և կլինիկական առարկաների ուսումնական ծրագրերի և քննական հարցատոմսերի մեջ։ Ուսանողների համար հանրակացարանում կազմակերպվել է սթափության համալսարան։ Սիստեմատիկաբար հրավիրվում են գիտապրակտիկ կոնֆերանսներ։ Արտադրական պրակտիկայի ընթացքում ուսանողները կարդացել են 600-ից ավելի դասախոսություն հարբեցողության վնասակար ազդեցության վերաբերյալ։ Ինստիտուտի պրոֆեսորադասախոսական անձնակազմը մասնակցում է Երևանում և հանրապետության բոլոր շրջաններում տարվող դասախոսական պրոպագանդային։ Զգալի ուշադրություն է նվիրվում այնպիսի միջոցառումներին, որոնք կոչված են ուսանող երիտասարդությանը զերծ պահելու վնասակար սովորություններից (սպորտային միջոցառումներ, գեղարվեստական ինքնագործունեության ծավալում և այլն)։

Իրականացվող միջոցառումների շնորհիվ երկրում մեկ երրորդով կրճատվել են գործալքումները։ Բացի դրանից, ակնհայտ են հաջողությունները բնակչության առողջության պահպանման բնագավառում։ Ընդամենը մեկ տարվա ընթացքում (1986 թ.) զգալի չափով բարելավվեցին ժողովրդագրական ցուցանիշները։ Շարունակվեց բարձրանալ ծնելիությունը. 1986 թ. 1000 բնակչի հաշվով ծնվածների թիվը կազմեց 19,9՝ 1985 թ. 19,4-ի դիմաց։ Նկատվեց մահացության զգալի նվազում՝ մինչև 9,7՝ 10,5-ի դիմաց, 1986 թ. աշխատունակ բնակչության մահացությունը, 1984-ի համեմատությամբ, կրճատվեց 15 տոկոսով, այդ թվում՝ դժբախտ դեպքերից, թունավորումներից և վնասվածքներից՝ 33 տոկոսով։ Վերջին տասը տարիների ընթացքում առաջին անգամ նկատվեց կյանքի միջին տևողության բարձրացում՝ մինչև 69 տարի։ Մեկ տարվա ընթացքում բնակչությունն աճեց 2,9 մլն մարդով։

Պատմական փաստաթղթերը վկայում են, որ ալկոհոլային խմիչքները մարդկությանը հայտ-

նի են ավելի քան վեց հազար տարի։ Որքան հին պատմություն ունի ալկոհոլը, այնքան երկար ուղի է անցել նրա դեմ մղվող պայքարը։ Միջոցներ ձեռնարկվել են տակավին անտիկ աշխարհում՝ Հին Հունաստանում, Հռոմում, Հնդկաստանում և մի շարք այլ երկրներում։ Բուդդայի պատվիրաններից մեկում ասվում է. «Մի՛ խմիր ու մի հարբեցնող խմիչք»։ Հայտնի է նաև, որ Ղուրանը արգելում է գինու գործածումը։

ԱՄՆ-ում և եվրոպական պետություններում ալկոհոլիզմի դեմ պայքարը լայն մասշտաբով սկսել է ծավալվել XIX—XX դարերում։ Թեև հարբեցողության համար հին ժամանակներում սահմանվել են խիստ պատիժներ՝ ընդհուպ մինչև մահվան դատապարտում, սակայն դրանք կյանքում լայն կիրառում չեն ստացել։ Եվ այսպես՝ դարեր շարունակ ալկոհոլի դեմ պայքարը եղել է ապարդյուն։ Հազարամյակների ընթացքում մարդիկ «գլուխ են կոտրել» սթափ ապրելակերպի համար մղվող պայքարում, և մինչև այսօր էլ այդ պրոբլեմն իր վերջնական լուծումը չի ստացել։

Պատմությունը մեզ սովորեցնում է, որ միայն վարչական միջոցներով հնարավոր չէ վերացնել հարբեցողությունը և ալկոհոլամոլությունը, որքան էլ դրանք խիստ լինեն։

Կոմունիստական կուսակցությունը մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո ցուցաբերեց խիստ վերաբերմունք այդ սոցիալական չարիքի նկատմամբ։ Պայքարը սթափ ապրելակերպի համար իր արտացոլումը գտավ ՌԿ(բ)Կ VIII համագումարում ընդունված ծրագրում (1919 թ.), որտեղ, որպես կուսակցության մոտակա խնդիր, նախատեսվեց լայն պայքար ծավալել սոցիալական հիվանդությունների՝ տուբերկուլյոզի, վեներական հիվանդությունների և ալկոհոլամոլության դեմ։ Այդ ժամանակ Վ. Ի. Լենինը բազմիցս, ամենավճռական ձևով արտահայտվել է հարբեցողության դեմ։ «Պրոլետարիատը կարիք չի զգում հարբեցման»,— նկատել է նա Կլարա Ցետկինի հետ զրույցի ժամանակ։ Իսկ 1921 թ. մայիսին ՌԿ(բ)Կ համառուսաստանյան X կոնֆերանսում նա ասել է. «Ես կարծում եմ, որ ի տարբերություն կապիտալիստական երկրների, որոնք շրջանառության են հանում այնպիսի բաներ, ինչպես օղին կամ այլ թմրեցնող նյութեր, այդ բաները մենք թույլ չենք տա, որովհետև որքան էլ դրանք ձեռնտու լինեն առևտրի համար, դրանք սակայն մեզ ոչ թե կտանեն դեպի առաջ, դեպի կոմունիզմ, այլ՝ դեպի հետ, դեպի կապիտալիզմ» (ԵԼԺ, հ. 43, էջ 393—394)։

Հետագա տարիներին ընդունվել են բազմաթիվ որոշումներ, որոնք, սակայն, իրագործվել են ոչ բավարար չափով։ Տասնամյակներ շարունակ սոցիալական այդ վտանգավոր չարիքի դեմ մղվող պայքարը ժամանակավոր բնույթ էր կրում, այն անց էր կացվում առանց անհրաժեշտ կազմակերպվածության և հետևողականության, առանց պետական ու տնտեսական մարմինների, կուսակցական և հասարակական կազմակերպությունների փոխհամաձայնության։ Թեև կարճ ժամանակ է անցել ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման հրապարակումից, և դեռ հիմնական պայքարն առջևում է, սակայն այսօր էլ դրական արդյունքները շոշափելի են։ 1984 թ. արտադրվել է 14 մլրդ լիտր ոգելից խմիչք, իսկ 1986 թ.՝ 8,1 մլրդ լիտր, այսինքն՝ 42 տոկոսով պակաս։ Մեկ բնակչի կողմից գործածվող խմիչքի քանակությունը (մաքուր ալկոհոլի հաշվով) պակասել է 8,4-ից մինչև 4,4, այսինքն՝ շուրջ երկու անգամ։ Այս տվյալները վերաբերում են խմիչքի պետական արտադրությանը։ Ցավոք, պետական առևտրի օբյեկտներում գինու և ալկոհոլային խմիչքների վաճառքի կրճատման ֆոնի վրա, աշխուժացել է տնային պայմաններում ինքնաթորման եղանակով դրանց ստացումը, որի արգելումը տակավին շատ դեպքերում դուրս է մնում վարչական հսկողությունից և դժվարացնում պայքարը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և Գերագույն սովետի 1985 թ. որոշումներով նախատեսվել է միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս՝ ուղղված հարբեցողության և ալկոհոլամոլության հաղթահարմանը։ Որոշվել են կոնկրետ միջոցառումներ՝ արմատախիլ անելու ինքնաթորման միջոցով ստացված խմիչքների արտադրությունն ու առևտուրը։ Չափազանց կարևոր նշանակություն ունի այն հանգամանքը, որ սկսած 1986 թ. իրականացվում է ոգելից խմիչքների արտադրության կրճատում, իսկ 1988 թ. լիովին դադարեցվելու է գինու արտադրությունը պտուղներից։ Այս միջոցառումը, որը հավասարազոր է միլիարդ ռուբլիներ կազմող եկամուտից հրաժարվելու, վճռական նշանակություն ունի սթափ ապրելակերպի հասնելու ճանապարհին։ Կյանքը հաստատում է, որ անմիջական կապ գոյություն ունի գինու և օղու արտադրության մակարդակի և դրանց սպառման միջև։ Բնակչության մեջ տարածված է մի այսպիսի կարծիք. եթե պետության կողմից համապատասխան որոշման հրապարակումից հետո շարունակվում է խմիչքի արտադրությունը նախկին մակարդակով, ուրեմն ոգելից խմիչքների չարաշահման դեմ պայքարելու լուրջ մտադրություն



կանները տեսնում են իր աշխատանքի ու կենցաղի, ընդհանուր հիգիենայի ռացիոնալացման, կարգավորման ձգտում, նրա ֆիզիկական և հոգեկան խառնվածքի հետագա զարգացում։

Ժամանակի ընթացքում մարդը կսովորի ավելի շատ մոբիլիզացնել ոչ միայն ռեզերվային, այլև պոտենցիալ հնարավորությունները։ Եվ դա, անկասկած, կնպաստի օրգանիզմի ոչ միայն շարժողական, այլև մտավոր, ինտելեկտուալ, ֆունկցիոնալ և այլ հնարավորությունների կատարելագործմանը։

Դա հավասարապես վերաբերում է նաև մարդկանց մարզական գործունեությանը։

Գիտության և պրակտիկայի տվյալները վկայում են, որ մոտակա տասնամյակներում կարելի է սպասել ռեկորդային արդյունքների նշանակալի աճ՝ օլիմպիական գրեթե բոլոր մարզաձևերի գծով։ Յուրաքանչյուր օլիմպիական խաղերից առաջ մասնագետները կանխատեսումներ են անում հաղթողների հնարավոր նվաճումների մասին։ Հիրավի տեղին է ասված՝ հենց որ դադարի ռեկորդների աճը, կսկսվի մարդկային ցեղի մայրամուտը։

Մարդու հնարավորությունների հետագա ուսումնասիրումը շատ բան է խոստանում։ Մարդու օրգանիզմի ռեզերվների մասին որոշակի տվյալներ արդեն կուտակել են բժշկությունն ու կենսաբանությունը, հոգեբանությունն ու մանկավարժությունը, տիեզերագնացությունը, բայց դրանք դեռ քիչ են։ Այսուհետև մարդուն հարկավոր է ուսումնասիրել լայն պրոյեկցիայով, կոմպլեքսայնորեն, ամբողջ կենսական ուղու ընթացքում։ Առավել ևս կարևոր է ճշգրիտ իմանալ և ըստ ամենայնի զարգացնել մարդու ռեզերվային հնարավորությունները։ Նման մոտեցումը կարող է արդարացվել մեթոդաբանորեն։ Գիտության ու պրակտիկայի խնդիրն է օգնել մարդկությանը՝ ձեռք բերելու մեր ժամանակի համակողմանիորեն առողջ ու ներդաշնակորեն զարգացած անհատի համապարփակ մոդելի գծերը։ Այդ իդեալի մեջ մարմնավորվում են մարդկության բարձրագույն հումանիզմը և բարձրագույն բանականությունը։

Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարում խնդիր դրվեց աշխատավորության շրջանում խրախուսել ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական զարգացումը, վերջինս դիտելով որպես անհատի ակտիվ դրսևորման նախապայման, որպես բարձր արտադրողական աշխատանքի կարևոր գործոն։

---

Միջազգային թեմաներ

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ԴՐՍԵՎՈՐՄԱՆ ՁԵՎԵՐՆ ՈՒ ՅՈՒՐԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ԱՐԵՎԵԼՔԻ ՇԱՏ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ, այդ թվում և արաբական երկրներում, ժամանակակից հասկացողությամբ հեղափոխական պրոցեսը (նկատի ունենալով նրա սոցիալ-քաղաքական ուղղվածությունը, մեթոդները, ձևերը և վերջնական նպատակները) սկիզբ է առնում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո: Հասկանալի է, որ այն դատարկ տեղում, առավել ևս հանկարծակի չառաջացավ և չէր էլ կարող առաջանալ: Նա ունի իր և՛ նախապատմությունը, և՛ համապատասխան նախադրյալները: Խոսքն այստեղ այն մասին է, որ 1917 թ. մեծ Հոկտեմբերից հետո համաշխարհային մասշտաբով սկսվեց հեղափոխական պայթյունների դարաշրջանը, որն ընդգրկեց ինչպես եվրոպական մայրցամաքը, այնպես էլ Արևելքի գաղութային ու կախյալ երկրները, ուր բռնության, ճնշման և անարդարության հիմքի վրա կուտակված հսկայական պայթուցիկ նյութը ելք էր փնտրում՝ հարցականի տակ դնելով հին սոցիալ-տնտեսական կառուցվածքները և նախորդ ժամանակներից եկող քաղաքական հարաբերությունները:

Ուսումնասիրելով Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից հետո Եվրոպայում և Արևելքում ծավալված հեղափոխական պրոցեսը և գիտականորեն վերլուծելով այդ պրոցեսի առաջին արդյունքները, Վ. Ի. Լենինը կատարեց իր տեսական կարևոր ընդհանրացումներից մեկը և ձևակերպեց սոցիալական հեղափոխության իր սահմանումը, որն ավելի կատարյալ ու ամբողջական է և, ըստ էության, նորություն մարքսիստական տեսության մեջ: «Սոցիալական հեղափոխությունը,— նշում է Վ. Ի. Լենինը,— չի կարող այլ կերպ տեղի ունենալ, քան իբրև մի ժամանակաշրջան, որը միավորում է առաջավոր երկրներում բուրժուազիայի դեմ պրոլետարիատի քաղաքացիական պատերազմը անզարգացած, հետամնաց ու ճնշված ազգերի **մի ամբողջ շարք** դեմոկրատական և հեղափոխական, այդ թվում ազգային-ազատագրական շարժումները» (**ԵԼԺ**, հ. 30, էջ 139): Առաջին անգամ «սոցիալական հեղափոխություն» հասկացության մեջ մտցվեցին ազգային-ազատագրական շարժումները: Լենինյան սահմանումից ակնհայտ է, որ սոցիալական հեղափոխությունն իր բնույթով միասեռ չէ: Նրա բաղադրամասերն են, մի կողմից պրոլետարիատի պայքարը բուրժուազիայի դեմ զարգացած կապիտալիստական երկրներում, այսինքն՝ պայքար անմիջականորեն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, նոր հասարակական ֆորմացիայի հաստատման համար, իսկ մյուս կողմից՝ գաղութային երկրներում ծավալված դեմոկրատական, ազգային-ազատագրական շարժումները, որոնք անմիջականորեն ֆորմացիոն բնույթի նպատակներ չեն հետապնդում և չեն լուծում: Եվ, այդուհանդերձ, պայքարի այդ երկու ձևերի, հեղափոխական պրոցեսի դրսևորման այդ երկու տեսակների միասնությունն է տալիս մեր դարաշրջանի «սոցիալական հեղափոխություն» հասկացության ճիշտ ու ամբողջական պատկերը, քանի որ այդ երկու հոսանքներն էլ նպատակամղված են մարդկությանը քաղաքական, սոցիալ-տնտեսական և ազգային ճնշումից ազատագրելուն: Այս առումով կարելի է ասել, որ դրանք միասնական հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասերն են:

Վ. Ի. Լենինի սահմանումը ելակետային է արաբական երկրներում ծավալված սոցիալական հեղափոխության էությունը հասկանալու և պարզաբանելու համար:

Այդ պրոբլեմի ուսումնասիրությունն այսօր ունի շատ կարևոր և՛ գիտական, և՛ քաղաքական նշանակություն: Դա վերստին հավաստվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, որտեղ Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Մեծ Հոկտեմբերի սկսած ազատագրական հեղափոխություններն որոշում են XX դարի դեմքը: Որքան էլ նշանակալից լինեն գիտության ու տեխնիկայի նվաճումները, հասարակության կյանքի վրա գիտատեխնիկական բուռն առաջադիմության ազդեցությունը, մարդու միայն սոցիալական և հոգևոր ազատագրումն է նրան դարձնում իրոք ազատ» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 10): Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այդ պրոբլեմի լուծման գործում համագումարը մեծ նշանակություն տվեց ազգային-ազատագրական շարժումներին և հակագաղութային հեղափոխություններին. «Սոցիալական առաջադիմության ընթացքը սերտորեն կապված է **հակագաղութային** հեղափոխությունների, ազգային-ազատագրական շարժման, շատ պետությունների վերածնման և տասնյակ նորերի առաջացման հետ» (նույն տեղը, էջ 12):

Սոցիալական հեղափոխությունն իր զարգացման ընթացքում արաբական երկրներում անցել է երկու փուլ:

Առաջին փուլն սկսվեց 1918 թվականից՝ օսմանյան կայսրության կործանումից և արաբական երկրների վրա Անգլիայի ու Ֆրանսիայի տիրապետության հաստատումից հետո: Արաբական մի շարք երկրներ՝ Եգիպտոսը, Սուդանը, Իրաքը, Հորդանանը և Պաղեստինն ընկան Անգլիայի տիրապետության տակ: Այս կամ այն ձևով նա իր տիրապետությունը հաստատեց նաև Քուվեյթի, Հարավային Եմենի (Ադեն), Օմանի, Բահրեյնի, Կատարի և այլ երկրների վրա: Սիրիան և Լիբանանը դարձան Ֆրանսիայի ենթամանդատային տերիտորիաներ, որը մինչ այդ իր տիրապետությունն էր հաստատել նաև Ալժիրի, Մարոկկոյի և Թունիսի վրա: Լիբիայում տիրապետող էր Իտալիան: Ահա այսպիսին էր արաբական աշխարհի քաղաքական պատկերը:

Սոցիալական հեղափոխության առաջին փուլը տևեց մոտ կես դար՝ մինչև արաբական երկրների կողմից քաղաքական անկախության նվաճումը: Արաբական երկրների անհամաչափ զարգացման, ներքին և արտաքին մի շարք գործոնների ազդեցության հետևանքով նրանք քաղաքական անկախությունը չկարողացան նվաճել միաժամանակ: Դա իրականացվեց աստիճանաբար, հիմնականում 40—60-ական թվականներին:

Առաջին փուլում սոցիալական հեղափոխությունն արաբական երկրներում դրսևորվել է ազգային-ազատագրական շարժումների ձևով: Սոցիալական հեղափոխության բովանդակությունը կազմել են օտարերկրյա, տվյալ դեպքում՝ անգլիական և ֆրանսիական տիրապետության տապալումը, քաղաքական անկախության նվաճումը և ազգային անկախ պետության ստեղծումը: Սա իսկական հեղափոխական պրոցես է, քանի որ այն կոչված էր վերացնելու արաբների ազգային, քաղաքական և սոցիալական ճնշումը (որին նրանք ենթարկվում էին Անգլիայի և Ֆրանսիայի կողմից), ստեղծելու ազգային անկախ պետություն (որը յուրաքանչյուր ազգի քաղաքական, սոցիալ-տնտեսական և մտավոր զարգացման կարևոր նախապայմանն է), և, առավել նպաստավոր պայմաններ ստեղծելու արաբների առջև ծառացած սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրները հետագայում լուծելու համար:

Դժվար չէ նկատել, որ այս փուլում ֆորմացիոն բնույթի, այսինքն հասարակական մեկ ֆորմացիայից մյուսին անցնելու հարցը չէր դրվում: Սոցիալական հեղափոխության առաջին փուլում սկզբնապես լուծվում էր օտարերկրյա տիրապետության և քաղաքական անկախության նվաճման հարցը: Մինչև որ արաբները չհասնեին անգլիական և ֆրանսիական գաղութարարների տիրապետության վերացմանը և քաղաքական անկախության նվաճմանը, նրանք (ի նկատի ունենալով կոնկրետ պատմական իրադրությունը, ուժերի փոխհարաբերակցությունը, սոցիալ-դասակարգային շերտավորման աստիճանը և քաղաքական ինքնագիտակցության զարգացման մակարդակը) չէին կարող դնել սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման և հասարակական ֆորմացիայի փոփոխման հարցը:

Այդ պատճառով էլ սոցիալական հեղափոխության առաջին փուլում ֆորմացիոն

---

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՆԻԿՈԼԱՅ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՀՍՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտի փոխտնօրեն:

և սոցիալ-տնտեսական վերափոխումների պրոբլեմը ստորադաս էր ազգային-ազատագրական պայքարի, օտարերկրյա տիրապետության տապալման և քաղաքական անկախության նվաճման պրոբլեմին: Դրանում է արաբական երկրներում սոցիալական հեղափոխության դրսևորման յուրահատկություններից մեկը:

Այդ փուլում սոցիալական հեղափոխության մյուս յուրահատկությունն այն է, որ նրա առջև ծառացած կարևոր խնդիրներն իրականացվում էին ոչ թե մեկ դասակարգի կամ կուսակցության, այլ տարբեր սոցիալ-դասակարգային ուժերի ու խավերի և նրանց շահերն արտահայտող քաղաքական կազմակերպությունների կողմից: Եթե առաջավոր, զարգացած կապիտալիստական երկրներում պայքարի գլխավոր ուժը պրոլետարիատն էր, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ «պրոլետարիատի քաղաքացիական կռիվը բուրժուազիայի դեմ»՝ նրա մարքսիստական-լենինյան կուսակցության ղեկավարությամբ, ապա Արևելքի տարբեր, այդ թվում և արաբական, երկրներում սկսված սոցիալական հեղափոխությունում պատկերն այլ էր: Այստեղ հեղափոխական պրոցեսը դասակարգային ընդգրկման առումով ավելի բազմաշերտ էր: Դա բացատրվում է նրանով, որ սոցիալական հեղափոխության գլխավոր խնդիրները՝ օտարերկրյա տիրապետության վերացումը, քաղաքական անկախության նվաճումը, ազգային պետության ստեղծումը համազգային պահանջներ էին և այս կամ այն չափով շոշափում էին բոլոր դասակարգերի ու խավերի շահերը: Այդ խնդիրները կենսականորեն այնքան կարևոր նշանակություն ունեին, որ հարկադրում էին իրենց բնույթով և քաղաքական վերջնական նպատակներով միանգամայն տարբեր ուժերին առժամանակ «մոռանալ» իրենց տարաձայնությունները, նեղ եսասիրական շահերը, դրանք ստորադասել, ենթարկել գաղութային լծի թոթափման և քաղաքական անկախության նվաճման ավելի բարձր ու համազգային խնդրին:

Այդ ուժերի մեջ մտնում էին ազգային բուրժուազիան իր բոլոր ենթաշերտերով, հողատեր-կալվածատերերի հայրենասիրաբար տրամադրված խավերը, գյուղացիությունը, բանվոր դասակարգը, ազգային՝ քաղաքացիական և ռազմական մտավորականությունը և այլն:

Յուրահատկություններից մեկն էլ այն էր, որ արաբական երկրներում սոցիալական հեղափոխությունն ընթանում էր ազգային բուրժուազիայի կամ նրա ու ֆեոդալ-կալվածատերերի բլոկի ղեկավարության ներքո: Այս իրողության արտահայտությունն էր այդ երկրներում սոցիալական հեղափոխության առաջին փուլում մի շարք ազդեցիկ քաղաքական կուսակցությունների ձևավորումը, ինչպես «Վաֆդը» Եգիպտոսում, «Աշ-Շաաբը» և «Քութլա ալ-Վաթանիյան» Սիրիայում, «Ալ-Իսթիքլալը» և ազգային դեմոկրատական կուսակցությունը Իրաքում, «Քութլա ադ-Դուստուրիան» Լիբանանում և այլն, որոնք արտահայտում էին ազգային բուրժուազիայի ու լիբերալ կալվածատերերի շահերը, ղեկավարում ազգային-ազատագրական շարժումները:

Սոցիալական հեղափոխության առաջին փուլում տիրապետող գաղափարախոսությունը բուրժուական նացիոնալիզմն էր, որը, լինելով ճնշված ազգի գաղափարախոսություն, պարունակում էր դեմոկրատիզմի տարրեր, ուներ արդարության միտումներ և այդ պատճառով էլ ի վիճակի էր շարժման մեջ դնել ու իր դրոշի ներքո համախմբել այդքան խայտաբղետ դասակարգեր ու սոցիալական խավեր:

Իսկ ինչ վերաբերում է բանվոր դասակարգին, ապա նա, լինելով սոցիալական հեղափոխության ամենահեղափոխական և ամենանվիրված ուժը, այնուամենայնիվ, արաբական ոչ մի երկրում չկարողացավ դառնալ սոցիալական հեղափոխության հեգեմոնը: Դա բացատրվում է այդ երկրների սոցիալ-տնտեսական հետամնացությամբ, բանվոր դասակարգի փոքրաթիվ լինելով, նրա անբավարար կազմակերպվածությամբ և համեմատաբար ցածր դասակարգային ինքնագիտակցությամբ: Այդ հանգամանքն իր հերթին նպաստավոր պայմաններ չէր ստեղծում արաբական երկրներում կոմունիստական կուսակցությունների գործունեության ծավալման համար: Ուստի և սոցիալական հեղափոխությունն արաբական երկրներում ընթացավ գլխավորապես ազգային բուրժուազիայի ղեկավարությամբ և նրա գաղափարախոսության դրոշի ներքո:

Սոցիալական հեղափոխության առաջին փուլն արաբական երկրներում ընդհանուր գծերով ավարտվեց հաջողությամբ: Այն լուծեց իր ամենակարևոր խնդիրը՝ քաղաքական անկախության նվաճումը և ազգային ինքնուրույն պետությունների ստեղծումը: Դրա շնորհիվ աշխարհի քաղաքական քարտեզի վրա հայտնվեցին քսան անկախ արաբական պետություններ: Գաղութային լծի տապալումը արաբական աշխարհում և արաբական ժողովուրդների կողմից քաղաքական անկախության նվաճումը կարևոր ներդրում էին համաշխարհային հեղափոխական պրոցեսի մեջ:



Քաղաքական անկախության նվաճումից հետո արաբական երկրների մեծ մասում սոցիալական հեղափոխությունը հետագա զարգացում չստացավ: Դա վերաբերում է առաջին հերթին այն երկրներին, որոնք ընտրեցին զարգացման կապիտալիստական ուղին: Դրանցից էին Արաբական Միացյալ Էմիրությունները, Բահրեյնը, Եմենի Արաբական Հանրապետությունը, Թունիսը, Լիբանանը, Կատարը, Հորդանանը, Մարոկկոն, Քուվեյթը, Օմանը և այլն, որտեղ անկախության նվաճումից հետո իշխանությունն անցավ բուրժուազիայի կամ բուրժուակալվածատիրական բլոկի ձեռքը: Թեև դանդաղ, սակայն բուրժուականացման ուղին է ոտք դրել նաև Սաուդյան Արաբիան: Վերոհիշյալ երկրները պատկանում են կապիտալիզմի համաշխարհային սիստեմին և ենթակա են նրա օրինաչափությունների ազդեցությանը: Եվ իշխանության գլուխ եկած բուրժուազիան, հողատեր-կալվածատերերը այլևս շահագրգռված չեն հեղափոխության հետագա զարգացմամբ ու, առավել ևս, նրա խորացմամբ, քանի որ այն անխուսափելիորեն կրելու է սոցիալ-դասակարգային բնույթ և առաջին հերթին ուղղվելու է հենց իրենց դեմ:

Չնայած դրան, այդ երկրներում պահպանվում է հեղափոխական պոտենցիան, որի անմիջական կրողներն են բանվոր դասակարգը, գյուղացիությունը, մանր և միջին խավերը, քաղաքացիական ու զինվորական մտավորականությունը: Բարենպաստ քաղաքական պայմանների առկայության դեպքում հնարավոր է, որ այդ ուժերի հեղափոխական ավյունը դուրս ժայթքի և դառնա հեղափոխական նոր պրոցեսի սկիզբը: Դրա հավանականության մասին են խոսում սոցիալական այն խոր ցնցումները, որ տեղի ունեցան 70—80-ական թվականներին Լիբանանում, Մարոկկոյում և անգամ մի այնպիսի պահպանողական երկրում, ինչպիսին Սաուդյան Արաբիան է: Այդ, ինչպես սոցիալ-քաղաքական այլ կարևոր իրադարձություններ, հիմք են տալիս եզրակացնելու, որ զարգացման կապիտալիստական ուղիով ընթացող արաբական երկրներում հեղափոխական նոր պրոցեսի դրսևորման հնարավորությունը պայմանավորված է դասակարգային հակասությունների սրության, խորության և ինտենսիվության աստիճանով, որին համապատասխան էլ կբարձրանա հեղափոխական պայքարի ալիքը և առաջին պլան կմղվեն ֆորմացիոն բնույթի հարցեր:

Արաբական երկրների քաղաքական և սոցիալ-տնտեսական անհամաչափ զարգացման հետևանքով առաջացավ երկրների մի խումբ, որտեղ, ի տարբերություն վերևում նշված խմբի, սոցիալական հեղափոխությունն ունեցավ իր շարունակությունը և թևակոխեց զարգացման երկրորդ՝ ազգային-դեմոկրատական հեղափոխության փուլը:

Տարբեր ժամանակներում և տարբեր չափով այդ փուլը թևակոխեցին Ալժիրը, Եգիպտոսը, Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետությունը (ԵԺԴՀ), Իրաքը, Լիբիան, Սիրիան և Սուդանը:

Ազգային-դեմոկրատական հեղափոխություններն իրենց բնույթով տարբերվում են ինչպես բուրժուական և բուրժուադեմոկրատական, այնպես էլ սոցիալիստական հեղափոխություններից: Նրանք ազգային են համարվում, քանի որ կոչված են լուծելու համազգային խնդիրներ: Սակայն ի տարբերություն սոցիալական հեղափոխության առաջին փուլի, երբ «համազգային» հասկացողությունը ներառում էր ոչ միայն աշխատավորական զանգվածներին, այլև ազգային բորժուազիային և լիբերալ հողատեր-կալվածատերերին, ապա այժմ նրանք «համազգային» հասկացողությունից դուրս են մնում: Այլ կերպ ասած, ազգային-դեմոկրատական հեղափոխությունները արտահայտում են տվյալ ազգի դեմոկրատական խավերի՝ բանվորների, գյուղացիների, արհեստավորների, մանր, մասամբ և միջին բուրժուազիայի, քաղաքացիական և զինվորական մտավորականության շահերը և, առաջին հերթին, լուծում համադեմոկրատական խնդիրներ: Այստեղից էլ անա այդ հեղափոխությունների անվանումը՝ ազգային-դեմոկրատական հեղափոխություններ:

Բուրժուական, այդ թվում և բուրժուադեմոկրատական հեղափոխությունները, ինչպես հայտնի է, հաստատում են բուրժուական հասարակարգ, և որպես արդյունք իշխանության գլուխ է կանգնում բուրժուազիան:

Ի տարբերություն դրանց, ազգային-դեմոկրատական հեղափոխությունները չեն հաստատում կապիտալիստական հասարակարգ, համենայն դեպս դրանում չէ նրանց առաքելությունը: Ընդհակառակը, այնտեղ, որտեղ ազգային բուրժուազիան անկախություն նվաճելուց հետո կանգնել էր իշխանության գլուխ, ազգային դե-

մոկրատական հեղափոխությունները նրան զրկեցին իշխանությունից, հեռացրին երկրի քաղաքական կառավարումից և իրականացրին քաղաքական ու տնտեսական մի շարք միջոցառումներ, որոնք լուրջ կերպով խարխլեցին նրա դիրքերը, սահմանափակեցին գործունեության ոլորտը։ Շատ լուրջ հարված ստացավ նաև ֆեոդալ-կալվածատերերի դասակարգը։ Ազգային-դեմոկրատական հեղափոխությունների բնորոշ այդ գիծն առավել ցայտուն կերպով դրսևորվեց 60-ական թվականներին Եգիպտոսում, 60-ական թվականների վերջին—70-ական թվականների կեսին՝ Սիրիայում և Իրաքում։ Իսկ արաբական այն երկրներում, որտեղ ազգային բուրժուազիան թույլ էր զարգացած կամ նոր էր ձևավորվում, ազգային-դեմոկրատական հեղափոխությունների շնորհիվ իրականացվում են բուրժուազիայի հետագա զարգացումը կանխարգելող կամ սահմանափակող միջոցառումներ։ Այդ պրոցեսը դրսևորվեց ԵԺԴՀ-ում, Լիբիայում, Ալժիրում, իսկ 70-ական թվականների սկզբներին՝ նաև Սուդանում։

Այս առումով, ազգային-դեմոկրատական հեղափոխությունների հակակապիտալիստական բնույթն ակնհայտ է և դրանում է նրա սկզբունքային տարբերությունը բուրժուական ու բուրժուադեմոկրատական հեղափոխություններից։

Ազգային-դեմոկրատական հեղափոխությունները, մյուս կողմից, չպետք է շփոթել և, առավել ևս, նույնացնել սոցիալիստականի հետ, քանի որ նրանք իրականացնում են դեմոկրատական վերափոխումներ և անմիջականորեն չեն հաստատում սոցիալիստական արտադրահարաբերություններ, թեև դրա համար նրանք ստեղծում են որոշակի քաղաքական ու տնտեսական նախադրյալներ։ Բացի այդ, պետք է ի նկատի ունենալ մի հանգամանք ևս. ազգային-դեմոկրատական հեղափոխություններն ընթանում են ոչ թե պրոլետարիատի և նրա մարքսիստական-լենինյան ավանգարդի, այլ գլխավորապես մանր բուրժուազիայի ծոցից ելած ուժերի ղեկավարությամբ, որոնք շատ հաճախ ապավինում են բանակին։

Վերն ասվածից կարելի է եզրակացնել, որ ազգային-դեմոկրատական հեղափոխությունները ո՛չ սոցիալիստական, ո՛չ էլ բուրժուական հեղափոխություններ են։ Դրանք անցման շրջանի հեղափոխություններ են և որոշակի հասարակական ֆորմացիա չեն հաստատում։ Դա արդյունք է արաբական երկրներում տիրող յուրահատուկ վիճակի, որն արտահայտվում է նրանց հետամնացության, սոցիալ-դասակարգային անբավարար զարգացման և ոչ հստակ շերտավորման հանգամանքով։ Բուրժուազիան, որ իշխանության գլուխ անցավ սոցիալական հեղափոխության առաջին փուլից հետո, այնքան ուժեղ ու կազմակերպված չէր, որ կարողանար քաղաքական իշխանությունն իր ձեռքում պահել և երկրի զարգացումը տաներ կապիտալիստական ուղիով։ Մյուս կողմից, այդ երկրներում բանվոր դասակարգը ևս թույլ է զարգացած, բավարար չափով չի հասունացել և առայժմ ի վիճակի չէ դառնալու հեղափոխական պրոցեսի ղեկավար, գլխավոր ուժը և միանգամից իրականացնելու սոցիալիստական վերափոխումներ։ Արաբական բուրժուազիայի և պրոլետարիատի փոխադարձ թուլության պայմաններում ասպարեզը մնաց մանր, որոշ դեպքերում նաև միջին բուրժուազիային և նրա շահերն արտահայտող մտավորականությանն ու բանակի սպայական կազմին։

Արաբական երկրներում անցումը սոցիալական հեղափոխության առաջին փուլից երկրորդ փուլին՝ ազգային դեմոկրատական հեղափոխություններին, տեղի ունեցավ երկու ուղիով՝ հեղափոխական և էվոլյուցիոն։ Անցումը հեղափոխական ուղիով իրականացվեց Սիրիայում (1963 թ. մարտի 8-ի հեղափոխությունը և 1966 թ. փետրվարի 23-ի շարժումը), Իրաքում (1968 թ. հուլիսի 17-ի հեղափոխությունը), Սուդանում (1969 թ. մայիսի 25-ի հեղափոխությունը), Լիբիայում (1969 թ. սեպտեմբերի 1-ի հեղափոխությունը), ԵԺԴՀ-ում (1967—1970 թթ. հեղափոխական իրադարձությունները)։ Բոլոր նշված երկրներում տապալվեց բուրժուազիայի կամ բուրժուա-կալվածատիրական բլոկի իշխանությունը և կառավարումն անցավ հեղափոխական դեմոկրատների ձեռքը, որոնք և հանդիսացան դեմոկրատական հեղափոխությունների իրականացնողները։ Էվոլյուցիոն ուղու ամենաբնորոշ օրինակը Եգիպտոսն է. 1952 թ. հուլիսի 23-ին Եգիպտոսում կատարված հեղափոխությունն իր բնույթով դասվում է բուրժուական հեղափոխությունների շարքը։ Երկրում հաստատված ռեժիմը ոչ միայն չդրեց եգիպտական բուրժուազիային քաղաքական ասպարեզից հեռացնելու և նրա՝ որպես դասակարգի, գոյության հիմքերը խարխլելու հարցերը, այլև նպաստեց այդ դասակարգի քաղաքական ու տնտեսական դիրքերի ամրապնդմանը՝ նրա հետ կապելով Եգիպտոսի սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրերը։ Սակայն Գամալ Աբդել Նասերի



և նրա համախոհների հույսերը չարդարացան։ Եգիպտական ազգային բուրժուազիան ի վիճակի չեղավ և չէր էլ կարող ապահովել Եգիպտոսի սոցիալ-տնտեսական առաջադիմությունը։ Նասերն ըմբռնեց, որ այդ պրոբլեմը հնարավոր է լուծել բուրժուա-կապիտալիստական հարաբերությունների շրջանակներից դուրս, հարված հասցնելով հենց իրեն՝ բուրժուազիային։ Ահա այստեղ էր, որ տեղի ունեցավ պառակտում Նասերի և 1952 թ. հուլիսի 23-ին հեղափոխությունը կատարած ղեկավար կորիզի մի շարք անդամների միջև, որոնք հեռացան Նասերից և նրա նոր քաղաքական կողմնորոշումից։ Այդ ուժերի և նրանց համախոհների հեռացումը, որոնք դեմ էին Նասերի՝ 1961 թ. հռչակած հակակապիտալիստական, սոցիալիստական քաղաքական կուրսին, հնարավոր դարձրեց ռեժիմի անարյուն էվոլյուցիան, որով և Եգիպտոսը ոտք դրեց ազգային-դեմոկրատական հեղափոխության ասպարեզը։

Թեև մի փոքր այլ, յուրահատուկ ձևով, սակայն մեր կարծիքով Ալժիրը ևս զարգացման էվոլյուցիոն ուղիով թևակոխեց ազգային-դեմոկրատական հեղափոխության փուլը։

Ազգային-դեմոկրատական հեղափոխությունների մի առանձնահատկության վրա ևս հարկ է ուշադրություն հրավիրել։ Եթե սոցիալական հեղափոխության առաջին փուլում գլխավորը, տիրապետող հարցը քաղաքական անկախության նվաճման հարցն էր, իսկ ներքին սոցիալ-տնտեսական հարցերը հետին պլան էին մղված, ապա ազգային-դեմոկրատական հեղափոխությունների շրջանում, ընդհակառակը, տիրապետող են դառնում ներքին հարցերը, քաղաքական և սոցիալ-տնտեսական վերափոխումների պրոբլեմները։ Սրանից չի հետևում, թե այս շրջանում արտաքին քաղաքական լուրջ պրոբլեմներ չկան։ Դրանք գոյություն ունեն և առաջին հերթին բխում են նվաճված քաղաքական անկախությունը պահպանելու և ամրապնդելու, իմպերիալիզմի քաղաքական ու տնտեսական ազդեցությունը վերացնելու անհրաժեշտությունից, որն իր հերթին կենսականորեն կարևոր նախապայման է ազգային-դեմոկրատական հեղափոխությունների առջև ծառացած քաղաքական և սոցիալ-տնտեսական պրոբլեմների հաջող լուծման համար։ Այս շրջանի բնորոշ գիծն այն է, որ խնդիր է դրվում այդ պրոբլեմների լուծումն իրագործել հակակապիտալիզմի հիմքի վրա։

Այս կապակցությամբ տեղին է հիշեցնել Վ. Ի. Լենինի խիստ կարևոր դրույթն ազգային-ազատագրական շարժումները հակակապիտալիստական շարժման վերածվելու մասին։ 1921 թ. ելույթ ունենալով Կոմինտերնի III կոնգրեսում, Վ. Ի. Լենինը հայտարարեց. «Եվ միանգամայն պարզ է, որ համաշխարհային հեղափոխության գալիք վճռական ճակատամարտում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազգային ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի ու իմպերիալիզմի դեմ և գուցե շատ ավելի մեծ հեղափոխական դեր խաղա, քան սպասում ենք» (**ԵԼԺ**, հ. 44, էջ 45)։ Արաբական երկրների հեղափոխական պրակտիկան լիովին հաստատեց լենինյան այդ կանխատեսումը։

Ազգային-դեմոկրատական հեղափոխությունները, ինչպես նշվեց, իրականացնում են հակակապիտալիստական կամ որոշակի սոցիալիստական կողմնորոշում ունեցող քաղաքական և սոցիալ-տնտեսական միջոցառումներ։ Նրանք մտում ունեն, նպատակամղված են քաղաքական իշխանությունից զրկել և հեռացնել խոշոր բուրժուազիային, իսկ այնտեղ, ուր նրանք դեռևս չեն անցել իշխանության գլուխ, կանխել այդ, կիրառել արմատական ագրարային ռեֆորմ և արմատախիլ անել ֆեոդալ կալվածատերերի՝ որպես դասակարգի, տնտեսական հիմքերը, ազգայնացնել օտարերկրյա մոնոպոլիստական ընկերություններին և ազգային խոշոր ու միջին բուրժուազիային պատկանող արդյունաբերական ձեռնարկությունները, բանկերը, ապահովագրական ընկերությունները, ստեղծել պետական սեկտոր՝ նրա ձեռքում կենտրոնացնելով արտադրության հիմնական միջոցները, բանվորներին մասնակից դարձնել ձեռնարկությունների կառավարմանը, ապահովել բանվորների և գյուղացիների մասնակցությունն օրենսդիր մարմինների աշխատանքներին, վարել ակտիվ հակաիմպերիալիստական արտաքին քաղաքականություն ու բարեկամության սկզբունքների հիման վրա համագործակցել սոցիալիստական երկրների հետ և այլն։

Հենց սա էլ կազմում է ազգային-դեմոկրատական հեղափոխությունների սոցիալ-տնտեսական և քաղաքական բովանդակությունը։

Այս փուլն անցման շրջան է կիսաբուրժուական և կիսաֆեոդալական (Եգիպտոս, Սիրիա, Իրաք և այլն) կամ տոհմատիրական-ցեղային և կիսաֆեոդալական (ԵԺԴՀ և այլն) հարաբերություններից դեպի սոցիալիզմ։ Համենայն դեպս դրանումն է նրա

կոչումը և պատմական առաքելությունը: Այդ երկրների զարգացման մակարդակը և սոցիալ-դասակարգային ռեալ փոխհարաբերությունները հնարավորություն չեն տալիս միանգամից անցնելու սոցիալիստական հասարակարգին: Օբյեկտիվ պայմաններն իրենք ծնեցին միջին օղակի կամ յուրատեսակ կիսակայարանի անհրաժեշտությունը, որպիսիք են՝ ազգային-դեմոկրատական հեղափոխությունները և զարգացման ոչ կապիտալիստական ուղին:

Հեղափոխական շարժումը կենդանի պրոցես է, որի ընթացքում նա հասնում է զարգացման ավելի բարձր աստիճանի: Հակառակ դեպքում կարող է տեղի ունենալ հեղափոխության վերասերում՝ դրանից բխող քաղաքական և սոցիալ- տնտեսական ամենածանր հետևանքներով: Այս օրինաչափությունը հաստատում է նաև արաբական հեղափոխական պրակտիկան:

Արդի փուլում ազգային դեմոկրատական հեղափոխությունները որոշակի էվոլյուցիա են ապրում, որը բխում է նրանց՝ որպես անցման շրջանի հեղափոխությունների, բուն էությունից: Անցման շրջանը չի կարող ոչ միայն հավերժական լինել, այլև պատմական շատ երկար ժամանակաշրջան տևել: Այս առումով, մենք այժմ գործ ունենք ազգային-դեմոկրատական հեղափոխությունների էվոլյուցիայի երեք տարբերակների հետ:

Առաջին տարբերակ. երբ ազգային-դեմոկրատական հեղափոխությունների խորքում տեղի ունեցող որակական փոփոխություններն այն աստիճանի արմատական բնույթ են կրում, որ բավականին արագ կերպով է ընթանում ազգային-դեմոկրատական հեղափոխությունների վերաճումը սոցիալիստականի: Արաբական երկրներից այսօր այդ պրոցեսը տեղի է ունենում միայն ԵԺԴՀ-ում: Այստեղ 1980 թ. հիմնվեց Եմենի սոցիալիստական կուսակցությունը, որը կառավարող կուսակցություն է և որի պաշտոնական գաղափարախոսությունը մարքսիզմ-լենինիզմն է: Նրա ղեկավարությամբ ԵԺԴՀ-ում իրականացվում են արմատական վերափոխումներ՝ գիտական սոցիալիզմի սկզբունքներին համապատասխան, հաշվի առնելով միաժամանակ երկրի հետամնաց, տնտեսապես թույլ զարգացած լինելը, բազմազան կացութաձևերի, այդ թվում և ցեղային-տոհմատիրական հարաբերությունների առկայությունը, պրոլետարիատի փոքրաթիվ լինելը և այլն, այսինքն՝ ԵԺԴՀ-ի յուրահատուկ պայմանները:

ԵԺԴՀ-ի, ինչպես նաև աֆրիկյան մի շարք այլ երկրների (Բենին, Եթովպիա և այլն) օրինակը ցույց է տալիս, որ բարենպաստ պայմանների և ճիշտ քաղաքականության դեպքում ազգային-դեմոկրատական հեղափոխությունները կարող են հասնել իրենց տրամաբանական զարգացմանը՝ թևակոխել հեղափոխության սոցիալիստական փուլը:

Երկրորդ տարբերակ. պատմական փորձը ցույց է տալիս, որ ազգային-դեմոկրատական հեղափոխությունները ոչ միայն ինքնաբերաբար չեն վերաճում սոցիալիստականի, այլև, ընդհակառակը, հնարավոր է նրանց ընդհատումը և հետընթաց զարգացումը: Ազգային-դեմոկրատական հեղափոխություններն առայժմ անշրջելի չեն և դա է ապացուցում Եգիպտոսի հասարակական-քաղաքական զարգացումը Նասերի մահից հետո՝ 1970-ական թվականներին, Սուդանի փորձը՝ 70-ական թվականների կեսերին:

Նասերի մահից հետո, որ տեղի ունեցավ 1970 թ. սեպտեմբերի 28-ին, պայքար սկսվեց երկրի աջակողմյան և ձախ՝ նասերական ուժերի միջև, որն ավարտվեց աջերի հաղթանակով: Նրանց շահերի արտահայտիչ դարձավ նոր պրեզիդենտ Անվար Սադաթը: Նրա որդեգրած «ինֆիթահի»՝ բաց դռների, մասնավոր և օտարերկրյա կապիտալի դիրքերի ամրապնդման քաղաքականությունը ծանր հարված հասցրեց ազգային-դեմոկրատական հեղափոխության ընթացքում ստեղծված ամբողջ քաղաքական և սոցիալ-տնտեսական համակարգին: Եգիպտոսը հետընթաց շարժում կատարեց: Այստեղ վերջ տրվեց ազգային դեմոկրատական հեղափոխությանը և երկիրը կրկին ընտրեց զարգացման կապիտալիստական ուղին:

70-ական թվականների կեսերից շրջադարձ տեղի ունեցավ նաև Սուդանի կառավարության քաղաքականության մեջ: Երկրում հաստատվեց Ջաֆար Նիմեյրիի հետադիմական դիկտատուրան, որն անցավ բացահայտ բռնությունների և հակակոմունիզմի քաղաքականությանը: Հարված հասցնելով դեմոկրատական ուժերին և դադարեցնելով առաջադիմական վերափոխությունները, որ սկսվել էին 1969 թ. հեղափոխությունից հետո, Նիմեյրին 80-ական թվականների սկզբներին երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական վերակառուցման հիմքում պաշտոնապես դրեց իսլամի



սկզբունքները: Դրա քաղաքական արդյունքը եղավ ազգային-դեմոկրատական հեղափոխության վերացումը:

Երրորդ տարբերակը ազգային-դեմոկրատական հեղափոխությունների մեկ այլ, բավականին յուրատեսակ ձևափոխությունն է: Խոսքն այն մասին է, որ ազգային-դեմոկրատական հեղափոխությունը, հասնելով զարգացման մի որոշակի մակարդակի, այլևս առաջ չի ընթանում, չի խորանում և դոփում է տեղում: Տեղի է ունենում լճացման պրոցես, որը պարարտ հող է հանդիսանում ամեն տեսակի բացասական երևույթների առաջացման համար:

Այս պրոցեսն ընթանում է Իրաքում և Սիրիայում սկսած 70-ական թվականների վերջից և 80-ական թվականների սկզբներից: Նրանց համար բնորոշ է այն, որ տեղի չի ունենում առաջադիմական քաղաքական և սոցիալ-տնտեսական վերափոխումների խորացում, դրանց չի տրվում արմատական բնույթ, չեն օգտագործվում աշխատավորների եռանդն ու նախաձեռնությունը, նրանք իսկապես չեն ներգրավվում երկրի կառավարմանը, տեղի է ունենում ժողովրդական զանգվածների տնտեսական վիճակի վատթարացում: Դրան հակառակ, ձևավորվել և զարգանում է բյուրոկրատական և մակաբուծային բուրժուազիան, որոշ չափով աշխուժացել է մասնավոր սեկտորը: Իրաքում 70-ական թվականների երկրորդ կեսին սրվեցին հարաբերությունները Բաաս և կոմունիստական կուսակցությունների միջև: Կոմունիստները հարկադրված էին դուրս գալ կառավարության կազմից և ազգային հայրենասիրական առաջադիմական ճակատից: Իրաքի զարգացման և ներքաղաքական վիճակի վրա խիստ բացասաբար անդրադարձավ 1980 թ. սեպտեմբերին սկսված և մինչև օրս շարունակվող իրանաիրաքյան պատերազմը, որը նպաստում է պահպանողական ուժերի գլուխ բարձրացնելուն և դիրքերի ամրապնդմանը:

Իրաքի և Սիրիայի կոմունիստական կուսակցությունները գտնում են, որ Իրաքում և Սիրիայում զարգացող բացասական միտումների հետևանքով ազգային-դեմոկրատական հեղափոխություններն այսօր ամբողջ ծավալով և խորությամբ չեն կարողանում լուծել նրանց առջև ծառացած խնդիրները և չկան համապատասխան պայմաններ ազգային-դեմոկրատական հեղափոխությունները սոցիալիստականի վերաճելու համար:

Այսպիսով, կարող ենք ասել, որ արաբական երկրներում այսօր հեղափոխական շարժումն ապրում է ճգնաժամ: Սակայն ճգնաժամ է ապրում ոչ թե հեղափոխական շարժումն ընդհանրապես, այլ հեղափոխության կոնկրետ տվյալ տիպը, այսինքն ազգային-դեմոկրատական հեղափոխությունը: Մեր կարծիքով հեղափոխական դեմոկրատների հեղափոխական պոտենցիան կամ արդեն սպառվել է, կամ էլ ընդհուպ մոտեցել է դրան: Արաբական երկրների քաղաքական և սոցիալ-տնտեսական հետագա առաջադիմությունը օբյեկտիվորեն պահանջում է դուրս գալ ազգային-դեմոկրատական հեղափոխությունների շրջանակներից և վճռական քայլ կատարել իսկապես սոցիալիստական հեղափոխության ուղղությամբ: Սակայն դրա համար անհրաժեշտ են հեղափոխական պրոցեսի ղեկավար ուժերի վերադասավորում այն հաշվով, որ վճռական դերը միջին և մանր բուրժուազիայի ծոցից ելած հեղափոխական դեմոկրատներից անցնի բանվոր դասակարգին և այլ աշխատավորական ուժերին ու նրանց մարքսիստական ավանգարդին: Դա շատ բարդ պրոցես է և դրա համար կպահանջվի պատմական որոշակի ժամանակաշրջան:

---

# ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄՈԴԵՌՆԱՑՄԱՆ ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿՈՆՑԵՊՑԻԱՆԵՐԸ

Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ԱՅՍՕՐ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ ակտիվ կերպով քննարկվում է նեոգաղութատիրության պրոբլեմը: Այն մղվել է քաղաքական ու գաղափարախոսական պայքարի, դիվանագիտական բանակցությունների և տարբեր մակարդակի բանավեճերի առաջին պլան և գտնվում է այնպիսի գլոբալ պրոբլեմների շարքում, ինչպիսիք են խաղաղության ու պատերազմի, զինաթափման, շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմները, քանի որ խոսքը երիտասարդ պետությունների հասարակական զարգացման, հետամնացության, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդների կախվածության վերացման մասին է:

Ազատագրված երկրների վիճակը 80-ական թվականներին շեշտակիորեն վատթարացավ ամբողջ համաշխարհային տնտեսական վիճակի հետ միասին: Այդ երկրների ժողովուրդների համար առաջացան ապագայի նկատմամբ բոլոր տեսակի հույսերը, լավատեսությունը կորցնելու տագնապալի նշաններ: Իմպերիալիստական տերությունների համեմատ տնտեսական զարգացման մակարդակների միջև ճնկայական խզումը ոչ միայն չփոքրացավ, այլ, ընդհակառակը, առավել մեծացավ: 80-ական թվականների սկզբին մեկ շնչին ընկնող եկամուտների մակարդակը ազատագրված երկրներում ամբողջովին վերցված 11 անգամ ցածր է, քան կապիտալիստական զարգացած երկրներինը: Արտաքին պարտքը հասել է վիթխարի չափերի, անցել մեկ տրիլիոն դոլարի սահմանից:

Եվ պրոբլեմը միայն ազատագրված երկրների համեմատական աղքատությունը չէ: Խոսքն անգրագիտության և խավարի, խրոնիկ կիսաքաղցածության և սովի, սարսափելի մանկամահացության, համաճարակների մասին է, որոնք հարվածում են հարյուր միլիոնավոր մարդկանց: Այս ամենն ավելի է խորանում նեոգաղութատիրության կողմից այդ երկրների անխնա շահագործմամբ: Իմպերիալիստական տերություններն ամեն տարի այդ երկրներից քամում են 200 միլիարդ դոլարից ավելի գումար: Այսպիսով, նեոգաղութատիրությունն այսօր նույնպիսի սպառնալիք է խաղաղության և մարդկության համար, ինչպես, ասենք, սպառազինությունների մրցավազքը: Անդրադառնալով այս պրոբլեմին՝ Մ. Ս. Գորբաչովը նշել է. «... Նեոգաղութատիրական մեթոդներով ուրիշի ռեսուրսների օգտագործումը, տարազգային կորպորացիաների կամայականությունը, հարկային ստրկությունը, տրիլիոնանոց, բացահայտորեն անվճարելի պարտքերը ևս հանգեցնում են փակուղու... Ոչ համարժեք փոխանակությունը մնում է և վերջիվերջո հանգեցնում պայթյունի: Այդպիսի ելքի հնարավորությունը, թվում է, սկսում են ըմբռնել Արևմուտքի լիդերները: Եվ ելքը առայժմ որոնում են տարբեր կարգի կիսամիջոցների մեջ» (Մ. Ս. Գորբաչով, **Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է:** «Հայաստան» հրատ., 1987, էջ 67):

Ազատագրված երկրները ելք են փնտրում համաշխարհային տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցման, նրանց դեմոկրատացման, նոր համաշխարհային տնտեսական կարգ սահմանելու, ոչ համարժեք փոխանակության վերացման և այլ միջոցներով: Սոցիալիստական երկրները, ՍՍՀՄ-ը լիովին պաշտպա-

ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ՄԿՐՏԻՉ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, Մոսկվայի պետական միջազգային հարաբերությունների ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի պրոֆեսոր:



նում են ժողովուրդների այդ դեմոկրատական, արդարացի ձգտումները: Իմպերիալիստական շրջանները, Արևմուտքի պարագլուխները փորձում են սահմանափակվել կիսատ-պռատ միջոցներով, մասնակի և աննշան զիջումներով: Այս կապակցությամբ առաջադրվում են զանազան բուրժուական կոնցեպցիաներ, որոնք միավորված են ազատագրված երկրների մոդեռնացման ընդհանուր նեոգաղութատիրական տեսության մեջ:

Մոդեռնացման տեսությունը նեոգաղութատիրության գաղափարախոսական էքսպանսիայում այսօր պատահականորեն չէ, որ մղվում է առաջին պլան: Այն ձգտում է լիովին հաշվի առնել ազատագրված երկրների հիմնական իրողություններն ու պրոբլեմները, նույնիսկ՝ ամենաբարդ ու ամենասուր պրոբլեմները, հենց նրանց վրա կառուցել իրենց գլխավոր կանխադրույթներն ու հիմնավորումները և դառնալ այդ երկրների զարգացման բնույթի ու հեռանկարների մարքս-լենինյան բացատրության այլընտրանքը: Բուն երիտասարդ պետությունների գաղափարախոսության ազգային-ազատագրական առանձնահատկությունը, նրանցում զարգացող օբյեկտիվ խնդիրների ու պրոցեսների հակաիմպերիալիստական բովանդակությունը որոշեցին այն, որ գաղափարախոսական կոնցեպցիաների ողջ բազմազանության, լոզունգների և զարգացման ծրագրերի շուրջը գաղափարախոսական անզիջում գոտեմարտերի պայմաններում բոլոր երիտասարդ պետությունների գաղափարախոսության համար ընդհանուր են այնպիսի արմատական հասկացություններ, ինչպիսիք են զարգացումը, անկախությունը, հետամնացության հաղթահարումը: Հենց դրանք էլ գտնվեցին ազգային-ազատագրական հեղափոխությունների գոտիներում ծավալված արդի գաղափարախոսական պայքարի կիզակետում և առավել լիովին արտացոլվեցին մոդեռնացման տեսությունում:

Մոդեռնացման նեոգաղութատիրական տեսությունը ծնվեց 60-ական թվականներին, երբ ազատագրված երկրներում պայքար սկսվեց հանուն հետամնացությունը, կախվածությունը վերացնելու և մեծ նշանակություն ձեռք բերեց նրանց հասարակական կողմնորոշման հարցը: 70-ական թվականների սկզբին արդեն մշակված էին այդ տեսության հիմնական դրույթները, Արևմուտքում այդ թեմայով հրապարակումների թիվը հասավ 2,5 հազար անունի: 80-ական թվականների կեսերին մոդեռնացման պրոբլեմներին նվիրված աշխատությունների քանակը գրեթե կրկնապատկվեց: Դրա հետ մեկտեղ 80-ական թվականների սկզբին կարելի էր տեսնել նաև այդ տեսության յուրատեսակ զարգացումը, նոր դրույթների, նոր մոտեցումների ի հայտ գալը, մի տեսակ նոր շրջադարձ, որոնք կոչված էին, մի կողմից, ավելի լավ ու խորապես հաշվի առնելու ազատագրված երկրների կյանքում տեղի ունեցած նոր երևույթներն ու իրողությունները, մյուս կողմից՝ բուն տեսությանը հաղորդելու առավել գրավչություն, «պատկառելիություն», գիտականության ու օբյեկտիվության երևութականություն:

Առաջին էական հարցը, որ անմիջապես ծագում է մոդեռնացման տեսությունը դիտարկելիս, նրա բովանդակության հարցն է: Որո՞նք են նրա հիմնական դրույթները, ինչպիսի՞ք են նրա ըմբռնումների հիմքը և նրա հեղինակների բացահայտած օրինաչափությունները: Վերջապես, ի՞նչ է այն առաջարկում ազատագրված երկրների ժողովուրդներին, ու՞ր է նրանց կանչում: Տվյալ նեոգաղութատիրական տեսությանը, նրա դասակարգային էությանն ու գաղափարախոսական նպատակին գիտական գնահատական տալու համար կարևոր է նաև ցույց տալ հեղինակների կիրառած մեթոդի առանձնահատկությունները, այդ տեսության ելակետային պրոբլեմների վերլուծության ու լուսաբանման նկատմամբ նրանց մոտեցման բնույթը:

Մոդեռնացման տեսությունը բարդ է ու բազմակողմանի, բաղկացած է մի քանի բաղադրատարրերից, որոնք տեսական արտահայտությունն են ազատագրված երկրների զարգացման խոշոր պրոբլեմների, այդ երկրներում հասարակական պրոցեսների հիմնական ոլորտների և ուղղությունների բովանդակության՝ վերջիններիս նեոգաղութատիրական մեկնաբանման: Մոդեռնացման տեսության տեսադաշտում են գտնվում ոչ միայն սոցիալ-տնտեսական, այլև քաղաքական, հոգևոր, գիտատեխնիկական, մշակութային և այլ պրոցեսները: Այդ տեսության կառուցվածքային բաղադրամասերից յուրաքանչյուրը կարող է հանդես գալ նաև ինքնուրույնաբար, որպես տեսական կոնցեպցիա՝ որպես «քաղաքական մոդեռնացում», «գիտատեխնիկական մոդեռնացում», «մշակութային մոդեռնացում» և այլն: Ուստի, մոդեռնացման տեսությունը, խստորեն ասված, զանազան կոնցեպցիաների, դպրոցների, տարբեր հեղինակների երբեմն հակասական դրույթների ու պնդումների խառնակույտ է: Նրանց

միավորում է հայացքների միասնությունը հասարակության նկատմամբ՝ «արդիականի» և «ավանդականի» երկմիասնական շրջանակներում, որոնք հակադրվում են միմյանց, իսկ մոդեռնացման պրոցեսը հասկացվում է որպես ագրարային, ավանդական հասարակությունները արդյունաբերորեն զարգացած հասարակությունների, երկըրների վերածվելու պրոցես: Նրանց միավորում է նաև վերջնական նպատակների բնույթի, մոդեռնացման արդյունքների, նրանց կարծիքով մոդեռնացվածության իդեալական տարբերակներ ներկայացնող հասարակությունների սոցիալական էության վերաբերյալ պատկերացումների ընդհանրությունը:

Արևմտյան գրականությունում այսօր կարելի է հանդիպել մոդեռնացման տարբեր սահմանումների: Կ. Բլեքը՝ այս տեսության հեղինակը, որը լայնորեն հայտնի է դեռևս 60—70-ական թվականներին, միջազգային հարաբերությունների ուսումնասիրման Պրինստոնյան կենտրոնի դիրեկտորը, գրում է, որ «մոդեռնացումը մի պրոցես է, որի ընթացքում տեղի է ունենում հասարակության փոխակերպություն՝ գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության ներքո» (Development in the Non-western world, Tokyo, 1984, p. 124): Ճապոնական գիտնական Տակեսի Այասին իր հերթին սահմանում է, որ «մոդեռնացումը բարձր զարգացման արդի մակարդակի հանրագումար է սոցիալական և տնտեսական զարգացման միջոցով, քայքայիչ է մշակութային առանձնահատկությունների համար և մոդեռնացման գործակալներն իսկ հաճախ նրա զոհն են հանդիսանում» (ibid, 114): Այս սահմանումներից երևում է, որ մոդեռնացման տեսության հիմքում ընկած է գիտական ու տեխնոլոգիական դետերմինիզմը, որը այն սերտորեն մոտեցնում է այնպիսի բուրժուական տեսությունների, ինչպիսիք են «տնտեսական աճի փուլի», «արդյունաբերական» և «հետարդյունաբերական» հասարակության, «կոնվերգենցիայի» տեսությունները, որոնք էլ, ըստ էության, կազմում են նրա մեթոդաբանական հիմքը:

Չի կարելի խոսել մոդեռնացման մասին՝ առանց շոշափելու ավանդականության պրոբլեմները, ուստի և հեղինակներն այս կամ այն կերպ, այս կամ այն ձևով այսօր ևս շոշափում և լուսաբանում են այդ հարցերը: 70-ական թվականների սկզբին ավանդականությանն զգալիորեն ավելի շատ ուշադրություն էր դարձվում և դա թերևս բացատրվում է նրանով, որ ազատագրված երկրներում մոդեռնացումը դիտարկվում էր առաջացման փուլում: Ս. Էնլոուն, օրինակ, գրել է, որ «աշխարհի ժողովուրդներին կոպիտ կերպով կարելի է բաժանել այնպիսիների, ովքեր թևակոխում են մոդեռնացումը, և այնպիսիների, ում համար մոդեռնացումը մնացել է հետևում» (Enloe' C. H. Ethnic conflict and Political development. Boston, 1973, p. 2): Ինչ վերաբերում է ավանդականության գնահատականներին, ապա նրանք, ինչպես նախկինում՝ 70-ական թվականներին, այնպես էլ այժմ, տարբեր են ու հակասական: Հեղինակներից ոմանք այն կարծիքին են, թե դա քարացած, հետադիմական ուժ է, մյուսները, ընդհակառակը, դա համարում են խթանիչ, մոդեռնացման ազդակ:

Սովետական արևելագիտությունը միշտ սևեռուն ուշադրություն է դարձրել ավանդականության պրոբլեմներին՝ ելնելով այն բանից, որ նրա հետ սերտորեն կապված են հետամնացության վերացման, հասարակական առաջընթացի խնդիրները: Ավանդապահությունը որպես պահպանողական ուժ, նշում է Ռ. Ա. Ուլյանովսկին, ծառայում է իբրև «սնուցող միջավայր ոչ միայն ֆեոդալական, այլև ազգային-բուրժուական, իսկ հաճախ նաև մանրբուրժուական հետադիմության համար, և հենց դրանով է պայմանավորված ինչպես գյուղի, այնպես էլ քաղաքի աշխատավորների, իսկ հայտնի չափով էլ արդի աֆրիկա-ասիական պրոլետարիատի գիտակցականության ցածր մակարդակը» («Народы Азии и Африки», 1979, № 5, стр. 70): Գ. Ֆ. Կիմն այս կապակցությամբ նշում է, որ պրոբլեմը ոչ միայն արդյունաբերության, գիտության, կրթության և այլ ոլորտներում արդիական նվաճումները շուտափույթ յուրացնելու անհրաժեշտությունն է: Բանն այն է, թե «արդիականությունն ինչպիսի սոցիալական հետևաբար և հոգևոր կերպարանք կընդունի, կմիակցվի կապիտալիզմի՞, թե՞ սոցիալիզմի հետ, ակտիվ գործունեության ասպարեզ կներգրավե՞ն արդյոք ժողովրդական լայն զանգվածները, որոնք դեռևս սերտորեն կապված են անցյալից իրենց բաժին հասած հարաբերություններին ու արտոնություններին: Առանց նման ներգրավման հասարակությունը ոչ միայն զրկվում է ժողովրդական զանգվածների ակտիվության հիմքում ընկած դրական միտումներից, այլև հարվածի տակ է դնում զարգացման արդեն ձեռք բերված արդյունքները, որոնք կսահմանափակվեն նեղ շրջանակներով» (Г. Ф. Ким. От национального освобождения к социализму. М. 1986, стр. 201):



70-ական թվականներին ձևավորվեց մոդեռնացման տեսության այն կոնցեպցիան, որը բացահայտորեն հռչակում էր «Արևմտյան մոդելը» մոդեռնացող ազատագրված երկրների ապագա սոցիալական կերպարի Արևմտյան տիպարը: «Զարգացում. Արևմուտքի տեսակետը» կոլեկտիվ աշխատությունում այն գաղափարն է անցկացվում, թե, քանի որ մոդեռնացումը իբրև երևույթ իր արմատներով խորանում է «Արևմուտքի ժամանակակից արդյունաբերական համակարգի մեջ», ապա, ուրեմն, «մոդեռնացումն» ու «արևմտականացումը» հոմանիշ հասկացություններ են (տե՛ս Development: the western Wiew, Paris, 1972, p. 235): Ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ում հասարակական առաջընթացի և սոցիալիստական վերափոխումների փորձին, ապա այն մոդեռնացման տեսությունում շատ համեստ տեղ է գրավում, ընդ որում մատուցվում է որպես Արևմտյան տիպարի տարբերակ: Հոկտեմբերյան հեղափոխությունը, ՍՍՀՄ-ը, պարզվում է, շարունակում էին այն, ինչ սկսվել էր Արևմուտքում բուրժուական հեղափոխություններով: Այստեղից էլ, ըստ հեղինակների (Ս. Ֆիներ, Հ. Սմիտ, Վ. Ցարացիո) կարծիքի, մոդեռնացման ծագումնաբանական ընդհանրությունը, հաջորդայնությունն ունի նաև իր ապագան. բոլոր երկրների, այդ թվում և ազատագրված երկրների ապագա մերձեցումն իրենց մոդեռնացման ընթացքում տեղի կունենա «Արևմտյան տիպարի» հիման վրա (տե՛ս ibid., p. p. 241, 257):

Անհրաժեշտ է մատնանշել 70-ական թվականների մոդեռնացման տեսության մեկ առանձնահատկություն ևս՝ զանազան ուղղությունների և դպրոցների հանդես գալը: Նրանք սկսեցին պնդել, օրինակ, թե մարքսիզմը և հասարակական առաջընթացի սոցիալիստական տեսությունը իբր թե մոդեռնացման տեսության բաղադրամասերն են, որոնք առաջացել են նրա տեսական և մեթոդաբանական հիման վրա: Վերնոն Ասպատուրյանը ճիշտ այդպես էր դնում հարցը՝ 1973 թ. մարտին Կոլումբիական համալսարանում կայացած կոնֆերանսում հանդես գալով «Մարքսիզմը և մոդեռնացման էությունը» թեմայով զեկուցմամբ: Ըստ հեղինակի, «մոդեռնացումն» ու «արևմտականացումը» միևնույն բանն են և լայն առումով համընկնում են մեկ այլ հիմնարար արևմտյան «առաջընթաց» կոնցեպցիայի հետ: Մարքսիզմը և զարգացման այլ արևմըտյան կոնցեպցիաներ իբր թե ունեն ոչ միայն ընդհանուր հասկացությունների արժեքների լայն ընդգրկում, այլև արտահայտում են զարգացման ընդհանուր երևույթները, փուլերն ու օրինաչափությունները: Սոցիալիզմը պնդում է Վ. Ասպատուրյանը, մոդեռնացման միջոցով, «արդյունաբերական հեղափոխությունից» դեպի «բարձր սպառման հասարակություն» զարգացման սոսկ մի աստիճան է: Ուղիներն ու իդեալները միասնական են, տարբեր են միայն մեթոդները (տե՛ս The politicsof Modernization in Eastern Europe. London, 1974, p. 84): Նույն բանն է ասել նաև Կ. Ե. Բլեքը՝ ելույթ ունենալով միևնույն կոնֆերանսում: Նա մասնավորապես պնդել է, որ Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրները զարգանում են դեպի «հետմոդեռնացված» հասարակություն, որն աճում-բարձրանում է «միասնական արդյունաբերական հասարակությունից» (ibid., p. p. 24—36):

Հատկապես ուժեղ արտահայտված գաղափարախոսական ուղղվածությունը, «արևմտականացման» դեղատոմսերի ու մեթոդների քարոզը՝ ազատագրված երկրներում սոցիալ-տնտեսական պրոբլեմների սրման պայմաններում, պայմանավորեցին մոդեռնացման տեսության ճգնաժամը 80-ական թվականների սահմանագծում: Տընտեսական քաղաքականությունում նոր մտածողության համար ծավալված պայքարն առաջադրել է համաշխարհային կապիտալիստական տնտեսության գործառնության պայմանների, այդ համակարգում ազատագրված երկրների վիճակի արմատական փոփոխությունների պրոբլեմը: Այդ երկրների հասարակական կարծիքում ամենալայն ժողովրդականություն են վայելում այն գաղափարներն ու կարծիքները, որոնցում հակաիմպերիալիստական դիրքերից դատապարտվում էին բուրժուական առաջընթացի արևմտյան մոդելների պատճենավորումը, Արևմուտքի փորձի անվերապահ փոխառնումը, «արևմտականացումը»:

Այդ իսկ պատճառով 80-ական թվականների սկզբին մոդեռնացման տեսության էվոլյուցիան բնութագրվում էր մի շարք նոր դրույթների առաջին պլան մղումով որոշ

թե ինչու քաղաքական մոդեռնացումը, նրա նոր մեկնաբանման համաձայն, ոչ միայն չի բացառում, այլև ուղղակի ենթադրում է կենտրոնացում, այսինքն՝ իշխանության ավտորիտար բնույթ: Ճիշտ է, իդեալական է համարվում ավտորիտարիզմի համադրումը որոշակի դեմոկրատական ինստիտուտների հետ: Դա տեսության կերպարանք է ստանում՝ քաղաքականության և իշխանության ավանդական և արդիական գործոնների սինթեզի գաղափարի ձևով: Այդ առումով միանգամայն ընդունելի է համարվում Հարավային Կորեայի դիկտատորական վարչակարգը: Բերկլիի համալսարանի Արևելյան Ասիայի ինստիտուտի դիրեկտոր Ռոբերտ Սկալպինոն այդ կապակցությամբ գրում է, թե Հարավային Կորեայի քաղաքական կառուցվածքին բնորոշ է ավանդականի և արդիականի սինթեզը, և որ «մինչև մոդեռնացման սկսվելը Կորեան ուներ խիստ կենտրոնացված բյուրոկրատիա՝ ինքնակալական միապետության պայմաններում» (Asian Political institutionalization. Bercley Calif., 1986, p. 7):

Սակայն քաղաքական տեսակետից իդեալականը ճապոնական տիպարն է: Ճապոնիայի փորձը, ըստ Ռ. Սկալպինոյի, ցույց է տալիս, որ «նախ» հասարակության նախնական աստիճաններում լիբերալ քաղաքական ինստիտուտի ստեղծումը դժվար է և նման հասարակությունը դեմոկրատացնելու փորձերը քիչ արդյունավետ են: Երկրորդ, տնտեսական մոդեռնացումը հաջող չի կարող լինել, քանի դեռ դրանց հասնելու համար ժողովուրդը չի մոբիլիզացված առանձնահատուկ նպատակների շուրջը: Իսկ երբ հաջողությունը ձեռք է բերված, այն ժամանակ կարելի է բավարարել նաև քաղաքական մասնակցության ճնող պահանջները» (ibid.): Բոլոր դեպքերում, կարծում է հեղինակը, բարձրմոդեռնացված հասարակության քաղաքական ինստիտուտները և քաղաքական կյանքը կարիք չունեն, որպեսզի լինեն ճշգրիտ պատճենահանումը, կրկնօրինակը այն դասական լիբերալ սիստեմի, որը ավելի վաղ ձևավորվել է Արևմուտքում (ibid.):

Այս ամենից գլխավոր հետևությունն այն է, որ մենք գործ ունենք ազատագրված երկրների նեոգաղութատիրական մոդեռնացման բուրժուական տեսության հետ, այսինքն՝ նեոգաղութատիրության դիրքերի, ժողովուրդների կախվածության ու շահագործման պահպանման ու ամրապնդման տեսության հետ: Ի՞նչն է հիմք տալիս նման հետևություն անելու: Առաջին, մոդեռնացման տեսությունն ապացուցում է, որ աշխարհի բոլոր ժողովուրդները զանազան ուղիներով, մեթոդներով ընթանում են միևնույն ուղղությամբ և ճակատագրորեն, անխուսափելիորեն ստեղծում են մի հասարակություն, որն իր բոլոր հատկանիշներով բարձրզարգացած կապիտալիստական է: Արժե՞ արդյոք այդ դեպքում պայքարել հասարակական կողմնորոշման այլընտրանքային ուղու համար, եթե ըստ էության նման ուղի չկա: Երկրորդ, մոդեռնացման տեսությունը լռելյայն ենթադրում է, որ համաշխարհային կապիտալիստական տնտեսության գործառության արդի պայմանները, այդ տնտեսության անիրավահավասար և խորպես ոչ հավասար հարաբերությունները պահպանվելու են և դրանով իսկ շրջանցում է ոչ համարժեք փոխանակության, պարտքի բեռի հարցերը: Երրորդ, այն այժմ համբերություն է քարոզում, այն է՝ թե արագ փոփոխություններ մի սպասեք, մոդեռնացումը երկար ու տանջալի ուղի է: Բոլոր երկրներն էլ, այդ թվում նաև Ճապոնիան, մոդեռնացման երկար ուղի են անցել, մինչև հասել են բարձր զարգացման: Չորրորդ, մոդեռնացման տեսությունը, ինչպես 70-ական թվականներին, այնպես էլ այժմ, սոցիալիստական կողմնորոշում չի ընդունում, այն համարում է պատմականորեն ոչ բնական: Որպես սեփական բաղադրատարրեր ներառելով Վիետնամի, ԿԺԴՀ-ի զարգացման փորձը, այն ուղեկցելով քննադատությամբ, վերապահումներով, մոդեռնացման տեսությունը հենց շեմից չի ընդունում սոցիալիստական կողմնորոշման երկրների փորձը:

Այդպիսով, նեոգաղութային մոդեռնացումը ազատագրված երկրների միացումն է համաշխարհային կապիտալիզմի սիստեմին՝ որպես վերջինիս հետամնաց և կախյալ բաղադրատարրերի: Այստեղ կարելի է ավելացնել ևս մեկ հանգամանք: Համաշխարհային կապիտալիստական տնտեսության համակարգում երիտասարդ պետությունների դրության շեշտակի վատթարացման ցուցանիշներից մեկը այդ երկրներից ֆինանսական միջոցների արտահոսքն է զարգացած կապիտալիստական երկրներ: Սովետական տնտեսագետ Ն. Շմելյովը մի հետաքրքիր պատկեր է մեզ ներկայացնում: 70-ական թվականներից մինչև 80-ական թվականների սկիզբը դեպի զարգացող երկրներ միջոցների ամենամյա զուտ ներհոսքը գտնվում էր 40 մլրդ դոլարի մակարդակին, 1982 թ. այն իջավ մինչև 10 միլիարդի, իսկ 1983 թ. բոլորովին դադարեց: 1984 թ. միջոցների ներհոսքը փոխարինվեց արտահոսքով 12,5 մլրդ դոլարի չափով, իսկ 1985 թ.՝ 31 մլրդ (տե՛ս «Мировая экономика и международные отноше-
ния», 1987, № 9, стр. 19): Այս վիճակը տագնապ է առաջացնում նաև Արևմուտքի որոշակի շրջաններում:

«Մոնդ Դիպլոմատիկ»-ի 1986 թ. սեպտեմբերյան համարում տպագրված «Ինչպես է երրորդ աշխարհը ֆինանսավորում հարուստ-երկրներին» հոդվածում նշվում էր, որ 1979 թ. սկսած ամենախոշոր պարտք ունեցող երկրները իրենց վերցրած նոր փոխառությունների գումարի 70—80 տոկոսը ստիպված են հատկացնել նախորդ փոխառությունների տոկոսների վճարման համար: Ծայրամասերից դեպի առաջատար կապիտալիստական երկրներ ֆինանսական միջոցների այդ հսկայածավալ արտահոսքը հանգեցրեց արտառոց հետևանքի՝ 1981 թ., հետպատերազմյան տարիներին առաջին անգամ, երրորդ աշխարհի երկրները վերածվեցին կապիտալի ուղղակի արտահանողների: 1981—1985 թթ. ընկած ժամանակաշրջանում այդ արտահոսքի ծավալն աճեց միջինը 10 անգամ՝ 7 միլիարդից հասնելով 74 մլրդ դոլարի... որին ավելանում է նաև տարազգային կորպորացիաների շահույթների ձևով արտահոսող կապիտալը: Ընդհանուր առմամբ դա կազմում է շուրջ 230—240 մլրդ դոլար, այսինքն՝ չորս անգամ ավելի, քան Մարշալի պլանի շրջանակներում տրամադրված վարկերը» («Le Monde Diplomatique», 1986, № 9, p. p. 5—7):
Մոդեռնացման տեսությունը գաղափարախոսական միջոցներով առաջ է մղում նեոգաղութատիրական նպատակներ, դրանց իրականացման համար գործնական ծրագիր տալիս: Ուստի և դրա քննադատությունը նեոգաղութատիրության, նրա ստրատեգիայի ու տակտիկայի քննադատության բաղկացուցիչ մասն է:

---

փոքրիկ Կային առաջարկում է «Աստվածաշնչում» հիշատակվող արգելված այն երկրորդ պտուղը, որը մարդուն անմահացնի պիտի։ Եվ այդ պտուղն է սառը, անհոգի հաշվարկով ծնված հավերժության բանաձևը։ Թագուհու հակառակորդը սեր և մարդկային ջերմություն փառաբանող Գերդա աղջնակն է։ Անդերսենյան այս հեքիաթում ևս յուրովի մերժվում է դրախտի պարգևը, փառաբանվում հողեղեն մարդկայինը... Ասեմ, որ երաժշտության միջոցով վախ ու սարսափ, կռիվ ու աններդաշնակություն ներկայացնելու ջանքերը միակողմանի զարգացման մեծ թափ են ստացել մեզանում։ Այս ընթացքին երաժշտությունը կորցրել է ոչ միայն իր լայն ունկնդրին, այլ նաև, թվում է, իր ընդհանուր նկարագիրը, իր բարձրագույն կոչումը։ Բալետի սյուժեն, իմ կարծիքով, ինձ օգնում է գտնվել երաժշտական մի բնական վիճակի մեջ, որ, հուսով եմ, կարող է օգնել ինձ՝ հակադրվելու վախի ու աններդաշնակության, կռվի ու սարսափի այն միաթև արտահայտությանը երաժշտության մեջ։

Ուրիշ գործեր ևս կան սեղանիս, որոնց մասին, գուցե, խոսենք մեկ այլ անգամ։

Հ. Ա.— Դուք հարուստ առօրյայով, անհանգիստ պրպտումներով, բեղուն գործունեությամբ ապրող արվեստագետ եք։ Կարդացել ենք ձեր խոսքը Կոմիտասին այսպես կոչված մշակելու ջատագովների դեմ, հայ երգը անաղարտ պահելու, զարգացնելու կոչերը, հասարակական կյանքում ազնվության, գործիմացության, աշխատանքին նվիրվածության, բարեկրթության մասին մտորումները, բնապահպանական թեմայով ելույթներն ենք լսել, գրականության հարցերը հրապարակավ քննարկելու ականատեսն ենք եղել... Մարդու, ստեղծագործողի հասարակական ակտիվության ձեր ըմբռնումը։

Տ. Մ.— Ես ինձ հրապարակախոս չեմ համարում։ Ուղղակի լռելն իմ ուժերից վեր է։ Մեր երաժշտական կյանքում մերժելի երևույթներ շատ կան։ Դրանք այսօր չէ, որ ձևավորվել են, պատահականորեն չեն ի հայտ եկել։ Տասնամյակների ընթացքում երաժշտա-հասարակական փոխհարաբերությունների ամբողջ մի մերժելի համակարգ է գոյացել։ Այն առաջին հերթին ծնվել է երաժշտական-համքարային նեղ հետաքրքրությունների հետևանքով։ Կոմպոզիտոր-երաժշտագետ խմբակցությունը մեր մտավորականության, նաև ունկնդիրների լայն շրջաններում իր համար ստեղծել է մի անձեռնմխելի իրավունք, ըստ որի երաժշտության մասին խոսելը, նրան գնահատական տալը միայն իր մենաշնորհն է։

Վերջերս ինձ զանգահարում է մեր մտավորականներից մեկը և հարցնում՝ ինչ է նշանակում «մշակում» բառը, երբ հայ կոմպոզիտորը այդ բառով է բնորոշում Կոմիտասի կամ Սայաթ-Նովայի երգը գործիքային որևէ խմբով ներկայացնելու իր աշխատանքը։ Ես ասում եմ՝ դա պարզ մի բան է նշանակում. այն, որ երաժշտության «պրոֆեսորները» ապակողմնորոշել են ձեզ այն աստիճան, որ Կոմիտասին «մշակելու» համարձակություն ունեցող կոմպոզիտորի դեմ ձեր բնական զայրույթն արտահայտելու փոխարեն, ձեր գիտելիքները ստուգելու երկչոտ փորձ եք անում։ Թերևս այս պատճառով է, որ մեր երաժշտական պլենումներն ու համագումարները ինքներս լսում, ինքներս էլ քննարկում ենք։ Ունկնդրի հետ կենդանի կապ չունենք։ Մեր այս միջոցառումների նկատմամբ մասսայական ունկնդիրը վաղուց կորցրել է հետաքրքրությունը։ Երաժշտությունը այս ընթացքին, կարելի է ասել, դարձել է հասարակական մտքի մի բնագավառ, որտեղ պրոբլեմները, հարցերը ոչ պատշաճ խորությամբ են արծարծվում։

... Ե՞րբ է իսկական արվեստագետը միայն իր աշխատասենյակի ներսում ապրել։ Կոմիտասի հետ իմ հոգեհարազատությունը միայն խանդավառության արդյունք չէ։ Կոմիտասին հետևել եմ մշտապես։ Այն հավատն ունեմ, որ Կոմիտասն էլ ինձ է հետևում՝ իբրև իր զավակներից մեկին։ Գիտակցության այս ոլորտների մեջ ապրելը ստիպում է աշխատել ոչ միայն հնչյուններով, այլ հարկ եղած դեպքում՝ նաև խոսքով։ Ամենայն ուրախությամբ ձեռ կքաշեի հրապարակային իմ ելույթներից, եթե նրանցում բարձրացված հարցերով ավելի հիմնավոր զբաղվեին ուրիշները։ Ժամփորդական նոթեր կգրեի։ Աշխարհի երաժշտական կենտրոններում լսածս այս կամ այն գործի մասին կխոսեի։ Արվեստագետների հետ հանդիպումներիս տպավորությունները կշարադրեի։ Բայց այս ամբողջը ես չեմ ապրում, դրանց մասին պատմելու նյութի ակտիվ ճնշումը չունեմ։ Իմ ասելիքը մեր առօրյայից է ծնվում։

Հ. Ա.— Զրույցի սկզբում այսպիսի մի արտահայտություն արեցիք. «Իմ ապրածը խառը, իրարամերժ երևույթներով լեցուն մի կյանք է»։ Ի՞նչ է նշանակում այս։ Առավել պարզեցնել կարելի՞ է։

Տ. Մ.— Խոսքս պարզ բաների մասին է։ Եվ երաժշտա-դավանաբանական, գեղագիտական հարցերին բոլորովին չի վերաբերում։ Կարծում եմ, որ իմ տարիքին ու փորձի կուտակման հասած մեկը, որտեղ էլ որ ապրեր, հանրությանը ներկայանալու տարրական պատնեշները հաղթահարած պիտի լիներ վաղուց, պիտի ձայնագրվեր, հրատարակվեր։ Վերջին տասը տարիների իմ գործերից Հայաստանի ռադիոյի ֆոնդ է մտել մեկ-երկու ստեղծագործություն ընդամենը։ Նույնն է հրատարակության ոլորտում։ Այս պարզ բաների մասին է խոսքս։

Հ. Ա.— Այդ դեպքում ինչպե՞ս վերաբերվել ձեր՝ մի շարք քաղաքներում կայացած ստեղծագործական երեկոների, պետական մրցանակների, կոմերիտմիության մրցանակի փաստերին...



Տ. Մ.— Նորմա՞լ եք համարում այն, որ երևանյան իմ առաջին և դեռ միակ հեղինակային համերգը իրականանում է քառասունութ տարեկանիս միայն։ Մեկ փաստ ևս ասեմ. առ այսօր ես չունեմ որևէ հեղինակային ձայնապնակ։ Ու չգիտեմ՝ ե՞րբ է թույլատրվելու ինձ ունենալ այդ մեկ ձայնապնակը։ Այնինչ, եթե ես վարչարարներով շրջապատված չլինեի, այլ իմ կողքին գտնվեր գործի օգուտն ու շահը գիտակցող մի մարդ, ես վաղուց ձայնագրած, հրատարակած կունենայի իմ երկերից շատ-շատերը։

Այս առնչությամբ տեղին է հիշել իմ գործընկերոջ՝ ՎՍՍՀ ժողովրդական արտիստ, կոմպոզիտոր Ռ. Գաբիչվաձեի խոսքը, որ տպագրվել է «Սովետսկայա կուլտուրա» թերթում (№ 72)։ «Այդ մարմինը (խոսքը կոմպոզիտորների միության ղեկավարության մասին է.— Տ. Մ.), որը ինչ-որ մի ժամանակ ստեղծվել է ստեղծագործական և վարչական աշխատանքը կոորդինացնելու համար, արդեն վաղուց վերածվել է արգելակող մարմնի։ Ախր գաղտնիք չէ, որ միության քարտուղարները առաջին հերթին զբաղված են իրե՛նց ստեղծագործական գործերը կարգավորելով։ Արտասահմանյան ճանապարհորդություններ՝ հեղինակային համերգներով, պարբերաբար՝ պետական պարգևներ հոբելյանի առիթով կամ առանց դրա, կլորիկ աշխատավարձ՝ ամսական 500 ռ., կոչումների շնորհում և այլ բարիքներ՝ ահա թե ինչ է քարտուղարների ինստիտուտը մեր ժամանակներում»։

... Հայաստանի պետական մրցանակի ես առաջին անգամ արժանացա երկու գործերի համար՝ «Թավջութակի երկրորդ կոնցերտ» և «Թովեմ»։ Առաջին գործն առհասարակ չի ձայնագրված ոչ ռադիոյի ֆոնդում, ոչ էլ ձայնապնակով։ Ինչպես նաև չի հրատարակված։ «Թովեմը» ձայնագրվեց ՍՍՀՄ Մեծ թատրոնի մենակատարների անսամբլի կատարմամբ։ Սակայն ձայնապնակի մեծ մասն ուղարկվեց արտասահման։ Հայաստան չմտավ այդ ձայնապնակը, որևէ խանութում չվաճառվեց։ Այդ գործը Մոսկվան հրատարակեց ընդհանուր ժողովածուի մեջ։ Նոտաները Հայաստան չմտան, նույնպես որևէ խանութում վաճառքի չհանվեցին։ Նույնիսկ ինքս այդպես էլ առայսօր չեմ տեսել այդ հրատարակությունը.. Պիտի խնդրեմ, որ այս հարցերի մեջ շատ չխորանանք, որովհետև դրանց մասին խոսել չեմ սիրում։ Իմ պարտքը երաժշտություն գրելն է, ինչքան կարողանամ՝ պիտի գրեմ։ Այսքան։

Հ. Ա.— «Լենինյան ուղիով» ամսագիրը հատուկ խնդրել է Ձեր խոհերը, առաջարկները այսպիսի մի հարցի շուրջ. ինչպիսի՞ն է այսօր հայ երգի վիճակը, ինչպե՞ս է ձեզ պատկերանում նրա ապագան, զարգացման ինչպիսի՞ ուղիներով պետք է այն առաջ ընթանա, ո՞րն է լավագույն տարբերակը։

Տ. Մ.— Երգի ժանրում գրեթե չեմ աշխատել։ Այդ ժանրի շուրջ իմ իմացածն ու գնահատածը սիրողական, ընդհանուր մակարդակ ունեն։ Սիրում եմ այն անունները, որ բոլորի շուրթին են։ Օրինակ՝ Ռոբերտ Ամիրխանյանին... Այնինչ այդ հարցի շուրջ այսօր անհանգստություն կա...

Հիշում եմ գեղանկարիչ Հակոբ Հակոբյանի արտահայտությունը Մարտիրոս Սարյանի մասին. «Մարտիրոս Սարյանը շատ էր սիրում Հայաստանը, այդ պատճառով էլ այդքան գեղեցիկ է նկարել այն»։ Այո՛... Առաջին հայացքից շատ միամիտ է թվում այս բանաձևը։ Սակայն, իմ կարծիքով, այն ճշմարիտ է։ Մեր ամեն մի չծընված գործը առ Հայրենիքը, առ մեր ժողովուրդը և նրա պատմությունը ունեցած սիրո պակասի արտահայտություն է։ Նույնն է նաև երգի բնագավառում։ Թերևս այս բանաձևն ավելի գործուն է երաժշտական այնպիսի դյուրահաղորդ ժանրում, ինչպիսին երգն է։ Երգի ասպարեզում գոյություն ունեցող հարցերի մեջ «սիրելու հարցը» առաջինն է, թերևս, և ամենաընդհանուրը։ Գործը մասնավորվում է, երբ սերն ուզում ենք արտահայտել։

Երգը անբաժան է բանաստեղծությունից։ Բանաստեղծությունից երգ ծնելը առաջին հերթին բառը զգալու, բառը սիրելու, լեզուն սիրելու ակտ է։ Ինչպե՞ս կարելի է բաց ճակատով լեռների կատարներին նայել, որ մեջդ երգ հղանա, երբ քո շուրթերին թռիչքի անկարող, ներքին կրակից զուրկ հանգաբանություն է և ոչ՝ բանաստեղծություն։ Հանգաբանական թխվածքներից երգ չի ծնվի։ Սայաթ-Նովայից Ջիվանիով մինչ Շառլ Ազնավուր ու Ժակ Բրել երգի բառն ու երաժշտությունը մեկ մարդ է ստեղծել, նույն մարդուց են ծնվել։ Եվ այդ մեկ մարդու ստեղծած արժեքը հավասարապես պատկանում է թե՛ գրականության, և թե՛ երաժշտության բնագավառներին։ Հիմա մեկ մարդու գործը դարձել է երկու մարդու մասնագիտություն։ Սրա հետ եկած խոչընդոտները, բարդությունները հաղթահարելը, իրոք, դժվար, նուրբ և պատասխանատու բան է։ Այս համագործակցության մեջ երկու արվեստների ներկայացուցիչների մերձեցումը բարձր ստեղծագործական ակտ է ենթադրում, ուր երգի բնագավառ մտնող բանաստեղծը երաժիշտ դառնալու ձգտումով է հղի, երաժիշտն էլ իր հերթին բանաստեղծ դառնալու գրգիռներ ունի։ Ես որևէ մեկին որևէ բան չեմ ուզում ուսուցանել, սակայն իմ համոզումն է, որ առանձին վերցված մեկ բանաստեղծություն գոյություն չունի որևէ ժողովրդի գրականության մեջ։ Հայերեն ամեն մի բանաստեղծություն գրական մեր մեծ մշակույթի. մասնիկն է անպայման։ Ու այդ մշակույթի մեջ տեղ ունեն թե՛ Թումանյանը, թե՛ Տերյանը, թե՛ Չարենցը, թե՛ Իսահակյանը, Մեծարենցը, Վարուժանը ու այստեղից մինչև՝ Գողթան երգերը։ Հնարավո՞ր է, արդյոք, պատկերացնել, ասենք, Ախմատովայի

անգամ նստելու տեղ չկար... Այո, երաժիշտները ընդհանրապես համերգների և մասնավորապես իրենց ընկերների համերգներին քիչ են լինում։ Նրանցից շատերն էլ ոչ թե համերգ են գնում, այլ գնում են պարտք կատարելու։ Արդեն վաղուց նրանք իրենց սրտի կանչով համերգ չեն գնում։ Դրանք հենց ասածս համքարայիններն են, որ եթե հարկ եղավ նույն երեկոյին երեք դահլիճ կայցելեն՝ այստեղ ելույթ ունեցող երեք երաժիշտների ձեռքն էլ հավասար ջերմությամբ սեղմելու ցանկությամբ։ Այսպիսի մարդիկ Բիեշուի ելույթին ներկա գտնվելու պարտականությունը և ցանկությունը չունեն։ Բնական է, որ երբ ելույթ են ունենում համքարայինները, դահլիճներում շատ քիչ մարդ է լինում։ Լայն ունկնդիրը բոլորովին մեղավոր չէ, երբ համերգ չի գնում։ Հո չի կարելի արգելել, որ համքարայինների նկատմամբ իր վերաբերմունքը նա լռությամբ արտահայտի։ Այս իրավիճակից հետևություն անողը մենք պիտի լինենք՝ երաժիշտներս, նաև երաժշտական կյանքը տնօրինող մարդիկ։

Հ. Ա.— Կոմպոզիտորը ինչպե՞ս պիտի վերակառուցի իր աշխատանքը։ Մի՞թե նա ի ծնե չէ տաղանդավոր կամ պակաս տաղանդավոր։ Այս մարդուն, որը ծնվել է այսքան ձիրքով, այսքան գիտելիքներ է կուտակել, կենսափորձն այսպիսին է, ինչպես համոզենք, ստիպենք, հորդորենք, որ ավելի լավ գրի, առավել ճշմարիտ, կենսականորեն անհրաժեշտ, մնայուն գործեր ստեղծի։ Թե՞ կոմպոզիտորի հարցում ամեն ինչ պարզ է, և խնդիրը պետք է տեղափոխել երաժշտական գործի կազմակերպման, տնօրինման ասպարեզ։ Թե մեկի, թե մյուսի կատարելագործման կոնկրետ ուղիները ինչպե՞ս եք պատկերացնում։

Տ. Մ.— Մշտապես զարմանքով եմ լսել երաժշտական կյանքը կազմակերպող մարդկանց այն խոսքը, թե իրենք անկարող են կանխատեսել երաժշտական արվեստի զարգացման ուղղությունը։ Նրանք ասում են՝ վաղը կոմպոզիտորները նոր գործեր կգրեն, ինչն էլ կորոշի երաժշտության զարգացման վաղվա ուղղությունը։ Քանի դեռ չեն ստեղծվել այդ նոր գործերը, ինչպե՞ս կարելի է կանխատեսել նրանց ուղղվածությունը։ Բացարձակապես սխալ եմ գտնում այս տեսակետը։ Էլ ինչ ստեղծագործող անհատ, էլ ինչ ստեղծագործող կոլեկտիվ, նաև ստեղծագործողների միություն, եթե նա ամենապարզ ստեղծագործական եռանդի դրսևորումը չունի իր վաղվա անելիքները պարզելու խնդրում։ Իհարկե, ապագա գործերի կենդանի նկարագիրը առավել ստույգ և որոշակի կդառնա նրանց ծննդով։ Բայց կանխորոշել, կանխագծել նրանց ուղղվածությունը, քաջալերել, խթանել այն՝ պարտավոր ենք։ Եվ դա ամենից առաջ երաժշտական գործը տնօրինող մարդկանց կոչումն է հենց։ Ես հասկանում եմ, որ երաժշտական կյանքը ղեկավարող մարդկանց համար ձեռնտու է քաջալերելու, խթանելու իրենց դերից հրաժարվելը։ Այդպես, իհարկե, ավելի հանգիստ է կյանքը։ Աթոռը իր տակին ամուր պահող ղեկավարի համար լավագույնը տեղքայլն է։ Միայն տեղքայլ անող մարդն է, որ չի ուզում տեսնել, թե ինչ կա իր առջևում և պարզել իր շարժման ուղղությունը։

Իսկ երբ ստեղծագործական կոլեկտիվը կամ միությունը տնօրինում է իր տնտեսության զարգացման թե՛ այսօրը, թե՛ վաղը, նա գործի է դնում այդ ուղղությամբ իրեն հասու բոլոր ուժերը։ Այս դեպքում, ենթադրում եմ, գոյանում է ստեղծագործական մի մթնոլորտ, որտեղ ամեն մի անհատական դրսևորում, մնալով ինքնատիպ, մաս է դառնում ընդհանուր զարգացմանը, որին նվիրվելու գաղափարն է, որ իմաստավորում է ստեղծագործական միության, կոմպոզիտորական դպրոցի գոյությունը։

Հ. Ա.— Այս ամենը հետաքրքիր էր, բայց ինձ թվաց, թե որոշ չափով ընդհանուր դատողությունների մեջ ենք ընկնում։ Ուրեմն, հարցս նորից եմ մասնավորեցնում։ Կոնկրետ այսօրվա հայ կոմպոզիտորը ինչպե՞ս պիտի վերակառուցվի։ Վերակառուցման կարիք ունենք բոլորս։ Իսկ նա երեսուն, հիսուն, յոթանասուն տարեկան է՝ իր ուրույն աշխատաձևով, կենսափորձով, տաղանդով վերջապես...

Տ. Մ.— Վերակառուցվելու ուղղությամբ առաջին քայլը բոլոր տարիքի հայ կոմպոզիտորների համար միևնույնն է. դուրս գալ համքարային նեղ շրջանակներից, արձագանքել լայն ունկնդրի պահանջներին։ Նույնքան կարևոր է ստեղծագործական լուրջ չափանիշներով ապրելը։ Վերակառուցվել հայ կոմպոզիտորի համար կնշանակի նաև՝ որդեգրվել Կոմիտասի, Խաչատրյանի ծրագրին։ Իմ կարծիքով, այս ուղղությամբ վերակառուցման պատկառելի ճանապարհ ունենք անցնելու՝ կոմպոզիտորական մի քանի սերնդի կյանքով չափվող։

Հ. Ա. — Եվ վերջապես՝ ձեր ստեղծագործական նորությունների մասին։ Եթե կարելի է՝ որտեղի՞ց ի՞նչ լուր ստացաք, որ քաղաքում ի՞նչ հնչեց, հրատարակվեց, ձայնագրվեց ձեզնից։

Տ. Մ.— Այդ մասին երկար կարող ենք խոսել։ Բավարարվենք մի քանի փաստով միայն։ Վերջերս Իտալիայից ստացա իմ «Գիշերային երաժշտության» պարտիտուրը՝ «Ռիկորդիի» հրատարակությամբ։ Տարվա սկզբին Նյու-Յորքում հնչեց Թավջութակի երկրորդ սոնատս։ Դաշնամուրի իմ սոնատը կատարվեց XX դարի դաշնամուրային երաժշտության Հռոմի փառատոնում։ Շվեդիայից ստացա իմ «Հինգ բագատելների» ձայնագրությունը։ Այս երաժշտությունը հաղորդվել է Շվեդիայի ռադիոյով, յուրաքանչյուր բագատելի նախորդել է Աննա Ախմատովայի բանաստեղծություններից մեկը։ Ծանրոց ստացա Լենինգրադից։ Տեղի կոնսերվատորիայի դասախոս Օ. Մալովի թեկնածուական դիսերտացիան էր՝ նվիրված իմ կամերային երաժշտության առանձնահատկություններին։ Եվ այլն...

# ԽՆԱՅԵՆՔ ԲԱՌԸ, ՏՆՏԵՍԵՆՔ ԼԵԶՈՒՆ

## Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մեր ամենօրյա հաղորդակցումը (գրավոր, բանավոր) իրականացվում է լեզվի միջոցով։ Հաղորդակցման ընթացքում խոսողը և գրողը (նաև ընթերցողն ու լսողը) ծախսում են էներգիա, ժամանակ, տեղ։ Պետք է կարողանանք խնայել և՛ էներգիան, և՛ ժամանակը, և՛ տեղը, դրանով իսկ՝ լեզուն։

Հիշենք, որ խնայողությունը դարձել է կենսական պահանջ և առկա է մեր կյանքի բոլոր բնագավառներում ու ավելի որոշակի է արտահայտվում հատկապես նյութական արտադրության և սպառման ոլորտներում։ Տնտեսումը, խնայողությունը նշանակում են որոշակի քանակի արտադրանք տալ՝ ծախսելով ավելի քիչ հումք, աշխատուժ, աշխատաժամանակ։ Ասելիքն էլ մեր՝ բոլորիս յուրատեսակ արտադրանքն է, որ իրականացվում է էներգիայի, ժամանակի և տեղի ծախսումով։ Տնտեսում հնարավոր է նաև խոսելու (կամ գրելու) ընթացքում։ Լեզվի տնտեսում նշանակում է հնարավոր քիչ բառերով (նույնիսկ հնչյուններով) հաղորդակցվել՝ խնայելով էներգիա, ժամանակ, տեղ։ Խնայողությունը խոսքին տալիս է սեղմություն, համառոտություն։ Բայց անենք մի վերապահություն. ինչպես արտադրության ոլորտում մերժելի է խնայողությունը որակի հաշվին, այնպես էլ լեզվի մեջ մերժելի է խնայողությունը հասկանալիության, մատչելիության, պարզության՝ խոսքի որակի հաշվին։

Խնայողությունը դասական կատարելության է հասել բուն ժողովրդական խոսքում. ոչ մի ավելորդ բառ, նույնիսկ հնչյուն, արտակարգ սեղմություն։

Երբ այս չափանիշներով վերլուծում ենք մեր գրավոր ու բանավոր խոսքը, մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի, գիտական գրականության լեզուն, մեր պաշտոնական ելույթները, գործնական գրությունները (արձանագրություն, որոշում, հրաման, երաշխավորագիր, տեղեկանք, դիմում և այլն), ծանրութեթև ենք անում ամեն մի բառ, արտահայտություն, ապա նկատում ենք, թե ինչքան շատ են ավելորդությունները՝ բառեր, արտահայտություններ, որոնք տեղեկատվություն չեն պարունակում կամ հայտնի են խոսքից, խոսքային իրադրությունից, և սովորաբար չենք զգում, մի տեսակ վարժվել ենք։ Դրա պատճառները բազմազան են և սկսվում են դպրոցական ուսուցումից, գրագետ, կիրթ խոսքի ոչ ճիշտ պատկերացումից, բառի արժեքը չիմանալուց, բառերի հեղեղով տպավորություն թողնելու մտահոգությունից և այլն, որոնց կուտակումը տարիների ընթացքում դառնում է սովորություն, իսկ սովորությունից հրաժարվելն այնքան էլ դյուրին չէ։ Բերենք մեկ օրինակ. ինչքան ենք ականատես եղել և՛ դպրոցների բարձր դասարաններում, և՛ բուհերում, և՛ պաշտոնական վայրերում այն իրադրությանը, որ երբ հարցը տալիս են, և պատասխանը տրվում է մեկ բառով (որը հարցվում է), աշակերտը, ուսանողը, հայցվորը արժանանում են կշտամբանքի հարցին լրիվ չպատասխանելու, այսինքն՝ հարցն ամբողջությամբ չկրկնելու համար։ Եթե մանկապարտեզում, ցածր դասարաններում սա անհրաժեշտ է խոսքի կարողությունները զարգացնելու համար, ապա հետագայում այն դառնում է ավելորդ։ Հենց այստեղ էլ ասենք, որ սկզբում գրեցի «կապակցված խոսք», ապա մտածեցի, որ կապակցված բառը ավելորդ է, քանի որ խոսքը պիտի լինի կապակցված բառերի ամբողջություն։

Նոր չէ լեզվի տնտեսման, բառի խնայողության հարցը, ինչպես տնտեսումն առհասարակ։ Այդ հարցը հուզել է գեղարվեստական խոսքի վարպետներին։ Իմաստուն Թումանյանը, որ լեզվից օգտվելու դասական, կատարյալ օրինակներ է տվել, «Հայ գրական լեզվի խնդիրը» զեկուցման մեջ գրում է. «Ժողովրդական լեզուն էներգիայի տնտեսության խնդրում հասնում է ծայրահեղ ժլատության. նա ժամանակի ընթացքում տաշում, մաշում, հեռացնում, կորցնում է ամեն բան, ինչ որ կարող է միայն ավելորդ բեռ լինել իրեն համար և երբեք անմիտ բառեր ու ձևեր չի սիրում պահել իրեն մեջ, էն էլ երկար դարերով»։

Գեղարվեստական խոսքի մեկ ուրիշ վարպետ, լեզվի մեծ գիտակ Դ. Դեմիրճյանը «Ժամանակակից հայ գրական լեզվի զարգացման տենդենցները» զեկուցման մեջ բառերի սղման, կրճատման վերաբերյալ անելով մի շարք առաջարկություններ, մասնավորապես գրում է. «Մեր

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՀԵՆՐԻԿ ԱՐՏԱՎԱԶԴԻ— բանասիրական գիտությունների թեկնածու, Երևանի պետական համալսարանի հայոց լեզվի ամբիոնի դոցենտ:

կանից և այս դեպքում նորից հանդիպում ենք ավելորդության՝ ածականի հետ գործածելով ավելի բառը, որը, հայտնի է, բաղդատական իմաստի արտահայտման հիմնական միջոցն է՝ Երևանը ավելի մեծ է Լենինականից:

Ածականի գործածության հետ կապված մեկ այլ սխալի մասին։ Տարածված ավելորդություն է գույն նշանակող ածականների հետ գույն գոյականի գործածությունը 'կարմիր գույնի դրոշակ, կապույտ գույնի մատիտ, դեղին գույնի ծաղիկ և այլն, փոխանակ՝ կարմիր դրոշակ, կապույտ մատիտ, դեղին ծաղիկ:

Ավելորդ է նաև բազմիցս, կրկնակի, եռակի և նման բառերի հետ անգամ-ի գործածությունը (բազմիցս անգամ, կրկնակի անգամ...), քանի որ այդ բառերի մեջ արդեն կա անգամ-ի իմաստը։

Վերջերս նկատվում է կապերի գործածության աշխուժացում (ոչ միայն հայերենում)։ Հայտնի է, որ հոլովներ չունեցող լեզուներում կապերն ունեն ավելի մեծ դեր այն իմաստով, որ գոյականների բոլոր հարաբերություններն արտահայտվում են կապերի միջոցով, իսկ հայերենում «միևնույն հարաբերությունը կարող է արտահայտվել թե՛ որևէ հոլովով 'առանձին վերցրած, թե՛ մի այլ հոլովով ու կապով միասին վերցրած, և կապն ու հոլովն արտահայտում են նույն հարաբերությունը, ինչ տվյալ հոլովաձևն առանց կապի» և հիշյալ զուգաձևերի տարբերությունը ոճական է, «առանց կապի ձևերը լակոնիկ ոճի արտահայտություններ են», իսկ կապերը «մի փոքր շեշտում են տվյալ հարաբերությունը» (Ս. Աբրահամյան)։ Այսինքն՝ միաժամանակ գործում են լեզվին բնորոշ երկու, տվյալ դեպքում՝ փաստորեն իրար բացառող օրինաչափություններ, մի կողմից՝ համառոտության ձգտում, մյուս կողմից՝ ճշգրտություն։ Սա նշանակում է, որ յուրաքանչյուր դեպքում պետք է հաշվի առնել, թե արտահայտչական ո՞ր կողմն է էական, և ըստ այնմ գործածել միայն հոլովաձևը (որը համառոտ է, սեղմ, տնտես) կամ հոլովը և կապը (որն ավելի որոշակի է շեշտում հարաբերությունը)։ Բայց մերժելին այն է, որ կապերն սկսել ենք գործածել աջուձախ, տեղին ու անտեղի՝ երկարացնելով ասելիքը, նույնիսկ այն դեպքում, երբ առանց կապի ձևն է ճիշտ և հանձնարարելի. նախանձել հաջողության վրա, հսկել սահմանների վրա, ծանոթանալ պայմանների հետ, մեկնել դեպի ձորը, մեկնելու ժամանակ հուզվել, մեկ ժամվա ընթացքում փոխանակ՝ նախանձել հաջողությանը, հսկել սահմաններին (սահմանները), ծանոթանալ պայմաններին, մեկնել ձորը, մեկնելիս հուզվել, մեկ ժամում և այլն։

Չգիտես ինչ տրամաբանությամբ և ինչ հիմնավորումով բազմաթիվ նամադրական բայեր, հատկապես մամուլում, ռադիոհեռուստատեսային հաղորդումներում փոխարինվում են վերլուծական կազմություններով՝ անտեղի ձգձգելով խոսքը, ստեղծելով վերամբարձ, ճոռոմ ոճ։ Զարմանալիորեն դուրս է մղվում մասնակցել բայը և փոխարինվում մասնակցություն բերել կամ մասնակցություն ունենալ կապակցությամբ՝ իր բառն էլ իբրև հավելում։ Դժվար է ասել, թե ինչ են նշանակում երեկոյին (միջոցառմանը, ցուցահանդեսին, հանդիպմանը) իր մասնակցությունը բերեց արտահատությունը։ Գուցե ուզում են ասել՝ երեկոյին մասնակցե՞ց...:

Այդպես էլ ասում-գրում են վերլուծության ենթարկել, քննության ենթարկել, փոխանակ՝ վերլուծել, քննել, բանակցություն վարել, փոխանակ՝ բանակցել, առաքում կատարել, փոխանակ՝ առաքել, համեմատություն (ընտրություն, ակնարկ, հարցում, ճամփորդություն, մակագրություն, պեղում) կատարել, փոխանակ՝ համեմատել (ընտրել, ակնարկել, հարցնել, ճամփորդել, մակագրել, պեղել), որոշում կայացնել–որոշել և այլն։

Ոչ մի հիմնավորումով չի արդարանում «իրենից ներկայացնում է...» արտահայտությունը, որը չգիտես ինչ կոչես՝ հարադրությո՞ւն, բառակապակցությո՞ւն, դարձվա՞ծք։ Միևնույն է, ինչ ուզում ես կոչել, անիմաստ է, ոչ հայերեն, խոսքը ծանրաբեռնող։ Ի՞նչ է նշանակում «Առաջարկությունը իրենից ներկայացնում է լուրջ ներդրում...»— ի՞նչ ոճ է սա։ Կամ «նա իրենից ներկայացնում է օրենքի պաշտպան»: Ավելորդություն է իրենից բառը, բայց նրա առկայությունը պարտադիր է որպես ներկայացնել բառի սխալ գործածության հենարան։ Ինչու՞ է արհամարհվում հայերենի ամենակարող է-ն, այս դեպքում ճիշտ են և հայերեն «Առաջարկությունը լուրջ ներդրում է», «նա օրենքի պաշտպան է», կամ՝ «ներկայանում է որպես օրենքի պաշտպան»՝ իմաստային նրբերանգով։ Ներկայացնել բառի անհասկանալի գործածության ծնունդ է նաև «Ձեր ուշադրությանն ենք ներկայացնում մայիսի մեկի ծրագիրը»: Մի՞թե ավելի ճիշտ և ընդունելի չէ «Հաղորդում ենք մայիսի մեկի ծրագիրը» կամ՝ «ծանոթացեք մայիսի մեկի ծրագրին» ձևերը։ Տեղին է հիշեցնել, որ հաճախ ենք մոռանում մեր անչափ կարճ, սեղմ է բայը, որն ունի անգնահատելի դեր ու արժեք հայերենում ։Դա չէ՞ պատճառը, որ այն դուրս է մղվել հանդիսանալ բայի կողմից և ահա փոխանակ գրելու «Արարատյան դաշտը Հայաստանի շտեմարանն է» գրում են՝ «Արարատյան դաշտը հանդիսանում է Հայաստանի շտեմարանը»: Մի կողմ թողած նախադասության ճշտությունը, հայցիությունը՝ համեմատեք հանդիսանում է և է բայերը՝ առաջինը տասն անգամ երկար է։

Կամ. ռուսերենի ազդեցությամբ նախադասություններում սկսել են գործածել մի ավելորդ ենթակա 'արտահայտված դա դերանվամբ. «Սևանը, դա Հայաստանի մարգարիտն է լեռների գրկում», «Դեմոկրատիան, դա կյանքի առաջմղիչ ուժն է» և այլն, որոնք հայերեն չեն։ Երևանի քաղաքային երթուղիներից մեկում լսում ենք. «Կտրոնները ժամանակին դակելը, դա տրանսպորտից օգտվելու կուլտուրա է»: Իսկ լեզվից օգտվելը կուլտուրա չէ՞...

Ե՞րբ պետք է մեր բուհերի, որոշ հիմնարկձեռնարկությունների անվանումներից հանենք պետական բառը։ Եթե չասենք «Երևանի պետական համալսարան» մի՞թե որևէ մեկը կարող է կասկածել, թե դա մասնավոր կամ ժողովրդական համալսարան է։ Չէ որ ժողովրդական բառը

---

արդեն պարտադիր ասվում է ժողովրդական համալսարանների անվանումներում։ Չի՞ լինի, որ ասենք «Երևանի բժշկական ինստիտուտ» և ոչ պետական բժշկական ինստիտուտ: Մեր օրերում ում են պետք այս հավելումները։

Մինչև ե՞րբ դիմումների, տեղեկանքների, հրամանների, զանազան այլ փաստաթղթերի վերջում պիտի ավելացնենք «Քաղաք Երևան», որևէ մեկը կարո՞ղ է մտածել, թե Երևանը գյուղ է կամ ավան և, ի վերջո, դա ի՞նչ կարևոր է...

Կարծում ենք՝ այլ օրինակներ բերելու հարկ չկա, դրանք շատ-շատ են։ Նորից ասենք, որ բոլորս պարտավոր ենք հարգել լեզուն, նրա օրենքներն ու օրինաչափությունները, խնայենք լսողին, կարդացողին, ուշադիր ու հետևողական լինենք մեր խոսքի նկատմամբ, խուսափենք ավելորդ բառերից ու արտահայտություններից, խոսքը չխճողենք դրանցով, խնայենք բառը, տնտեսենք լեզուն՝ տնտեսելով էներգիա, ժամանակ, տեղ։

Աշխատության ուշագրավ էջերից է կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնությանը նվիրված բաժինը: «Պատմության մեջ դժվար է գտնել, ուղղակի չկա իր ինքնահաստատումն ապրող մի ուրիշ հասարակություն, գրում է հեղինակը, որ այդքան կարճ պահի մեջ, յոթ տասնամյակ միայն, այդքան բարդ ճակատագիր ունենա, այդքան հաղթանակ ու հաճախ նաև սայթաքում. և ամեն դեպքում նրա հետ է կուսակցությունը» (էջ 365): Կուսակցության ուժը ժողովրդի հետ սերտ ու անխախտ միասնության մեջ է: Ճշմարտությունը, ազնվությունը կուսակցության քաղաքականության և պրակտիկ գործունեության հիմնարար սկզբունքներն են: Քննություն բռնած այդ սկզբունքները լճացման երկու տասնամյակում գրեթե մոռացության էին տրվել: Կուսակցությանն ու ժողովրդին երկար ժամանակ չէր ասվում ճշմարտությունը երկրի սոցիալ-տնտեսական ու բարոյահոգեբանական զարգացման ոլորտում տիրող բացասական միտումների մասին:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը, նշում է հեղինակը, ջարդեց լռության սառույցը: Կուսակցության XXVII համագումարի փաստաթղթերը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները կրկին տոգորվեցին լենինյան հստակ ու անկեղծ ոգով, ճանապարհ հարթվեց կյանքի բոլոր ոլորտներում լենինյան ոճի արմատավորման համար.:

Հեղինակը նշում է, որ ՍՄԿԿ-ի վերակառուցման կուրսը գաղափարական ու բարոյական հաղթանակ է տանում, այն ընդլայնվում ու խորանում է: Վերակառուցումը, սակայն, հարթ ճանապարհ չէ, այն չտրորված արահետներով վերելք է, որը պահանջում է մեծ ջանքեր և ժամանակ: Վերակառուցման գործն անպայման հաղթանակելու է, որովհետև սովետական ժողովուրդը չի ցանկանում ապրել հին ձևով: Հասարակությունը վճռականորեն տրամադրված է դեպի բարեշրջումը և ձգտում է այն հասցնել մինչև վերջ:

Աշխատությունում արծարծված հարցերը և պրոբլեմները սերտորեն շաղկապված են մեր հանրապետության սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի, աշխատավորության հուզող կենսական խնդիրների, թույլ տրված սխալների ու վրիպումների վերացման, տեղապտույտից դուրս գալու նպատակով ձեռնարկվող միջոցների հետ:

Գրքում հակահարված է տրվում վերակառուցման՝ բուրժուական գաղափարախոսների մեկնաբանություններին: Նրանք միտումնավոր աղավաղում են մեր երկրում կատարվող բարեփոխումների էությունը, պնդելով, թե վերակառուցումը նշանակում է, որ կոմունիստները հրաժարվում են իրենց գաղափարական սկզբունքներից: Սակայն ճշմարտությունն այն է, որ վերակառուցման նպատակը հենց սոցիալիզմի հիմքերի ամրապնդումն է, նրա պոտենցիալի ծավալումը և հզորության աճը, ինչպես պատկերավոր ձևով հեղինակն է ասում՝ դա այնքան բնական է, ինչպես բնությունը, ինչպես գարունը, որ ամեն անգամ նորոգում է ինքն իրեն և ամեն անգամ մնում է ինքը:

**Լ. ԲԱՅՐԱՄՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ**

# ՀԻՄՆԱՐԱՐ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ

Արվեստի վաստակավոր գործիչ, պրոֆեսոր Եղիշե Մարտիկյանը, որը շուրջ քառասուն տարի իրեն նվիրել է հայկական կերպարվեստի ուսումնասիրման գործին, ստեղծել է մի շարք կապիտալ աշխատություններ: Դրանց մեջ առանձնանում է «Հայկական կերպարվեստի պատմություն» եռահատոր աշխատությունը, որ լույս է տեսել 1971—1983 թթ.: Այդ գրքերը գրված են նկարիչ-արվեստաբանի պրոֆեսիոնալ բարձր մակարդակով, տոգորված հայրենասիրական ոգով:

Հայտնի է, որ Արևելյան Հայաստանում պահպանված XVII—XVIII դարերի գեղարվեստական գործերը կենտրոնացած են եղել Էջմիածնում: Դրանք կարելի է բաժանել երկու խմբի. մի խումբը կատարված է եվրոպական վերածնության արվեստի նկատելի ազդեցությամբ, մյուսը ինքնատիպ գործեր են, որոնք պատկանում են Հովնաթանյանների տոհմի հինգ ներկայացուցիչներին, և բոլորն էլ անստորագիր: Այդ գործերը միմյանցից ունեզանազանելու համար անհրաժեշտ էր ունենալ ոչ միայն արվեստաբանի գիտելիքներ, այլև նկարչի աչք: Մարտիկյանին հաջողվել է ցույց տալ այդ տոհմի ներկայացուցիչների յուրաքանչյուրի նախասիրությունը թեմայի ընտրության գործում, նրա ընտրած կոմպոզիցիոն մեթոդը, պատկերների մշակման եղանակը, յուրօրինակ տիպարները և կոլորիտը:

Առաջին հատորում ընդգրկված են նաև XIX դարի առաջին կեսի նկարիչները, Հովնաթանյանների տոհմի վերջին ներկայացուցիչ Հակոբ Հովնաթանյանը՝ որպես հայկական դիմանկարի ժանրի հիմնադիր, և Ստեփանոս Ներսիսյանը: Երկրորդ հատորը բովանդակում է XIX դարի երկրորդ կեսի արվեստը, որտեղ առաջին անգամ Հովհաննես Այվազովսկին ընդգրկված է հայկական արվեստում, համոզիչ կերպով ներկայացված է նրա կյանքի և ստեղծագործության կապը հայ արվեստի հետ: Հատորում լայն տեղ է տրված նաև Գևորգ Բաշինջաղյանին՝ հայկական բնանկարի հիմնադրին: Նկարչի բնանկարները նվիրված են Սևանին, Արագածին, Արարատին, Արարատյան դաշտի գեղատեսիլ վայրերին: Այստեղ պատկառելի տեղ է հատկացված Վարդգես Սուրենյանին, որի ստեղծագործություններում արտացոլված են հայ ժողովրդի պատմության բազմաթիվ դրվագներ: Հեղինակը հավուր պատշաճի է բնութագրում մեծ արվեստագետի կտավները՝ «Ոտնակոխ արված սրբություն», «Շամիրամը Արա Գեղեցիկի դիակի մոտ», «Լքվածը», «Անարգվածը», գաղթականների կյանքից պատկերներ և այլն:

Երրորդ հատորը նվիրված է XX դարի առաջին քառորդի Հայաստանի արևելյան հատվածի արվեստին և ընդգրկում է հայ դասական կերպարվեստի լավագույն ներկայացուցիչներին (Հ. Արծաթբանյան, Ս. Աղաջանյան, Փ. Թերլեմեզյան, Ե. Թադևոսյան, Գ. Յակուլով, Վ. Գայֆեջյան), որոնց ստեղծագործությունները վերլուծված են հանգամանորեն: Իրավացիորեն նշված է Ս. Աղաջանյանի դերը հայկական դիմանկարի ժանրի զարգացման բնագավառում: Աղաջանյանի դիմանկարներին բնորոշ են կերպարային կոնկրետությունը: Զուր չէ նա ասել՝ «Ես նկարում եմ այնպես, որ տեսնողն իմանա տվյալ անձնավորության ով և ինչպիսին լինելը»: Աշխատության մեջ ընդգրկված է նաև Աղաջանյանի դեմոկրատիզմը: Նրան բարձր է գնահատել ռուս մեծատաղանդ նկարիչ Կոնստանտին Կորովինը:

Հայ դասական արվեստի խոշոր ներկայացուցիչներից է Փանոս Թերլեմեզյանը: Իր կտավներում նա մեծ սիրով պատկերել է հարազատ բնաշխարհի գողտրիկ անկյունները: Թուրքական իշխանությունների հետապնդումներից դրդված՝ Թերլեմեզյանը դեգերել է օտարության մեջ ու շարունակել ստեղծագործել՝ լույս աշխարհ բերելով բնանկարների, դիմանկարների, նատյուրմորտների մի ամբողջ շարք: Ամերիկայում եղած ժամանակ Թերլեմեզյանը 1923 թվականին կտակել է՝ իր մահից հետո շուրջ 800 ստեղծագործություններ և բազմաթիվ արխիվային նյութեր հանձնել Հայաստանի կերպարվեստի թանգարանին:

Խոր համակրանքով է ներկայացված Եղիշե Թադևոսյանը, որը ժամանակին բարձր գնահատականի է արժանացել նաև ռուսական նախասովետական մամուլի կողմից: Հիմնականում նախապատվություն տալով բնանկարին Ե. Թադևոսյանը ստեղծել է հինգ հարյուրից ավելի էտյուդներ: Լինելով լավագույն կոլորիստ, նա միաժամանակ մեծ ուշադրություն է նվիրել իրականության ճշմարտացի վերարտադրմանը: Այնպիսի գործեր, ինչպիսիք են «Գարունը», «Փողոց Վաղարշապատում», «Կնոջ դիմանկար», «Ջան գյուլում», մտել են հայ արվեստի ոսկե ֆոնդ՝ որպես այդ ժանրի գլուխգործոցներ:

Հատորում տեղ են գտել նաև գրաֆիկներ Դավիթ Օքրոյանը, Վրթանես Ախիկյանը: Գովելի է, որ լայնորեն է ընդգրկված տաղանդավոր ինքնուս նկարիչ Վանո Խոջաբեկյանի ստեղծագործությունը, որում զարմանալի ճշմարտությամբ արտացոլված է Թիֆլիսի հին կյանքը՝ կենցաղի բազմազան կողմերով: Ապրելով ծայրահեղ թշվառ պայմաններում, նա սովորական մատիտով, աշակերտական հասարակ տետրակի էջերում մեծ վարպետությամբ ներկայացրել է մի ամբողջ ժողովրդի կենցաղը: Վ. Խոջաբեկյանը օժտված է եղել սուր դիտողականությամբ, տիպարներ ստեղծելու արտակարգ վարպետությամբ:

Ե. Մարտիկյանի ոճը պատկերավոր է, լեզուն՝ ճոխ, հարուստ քնարական բազմաթիվ նկարագրություններով: Հատորներում հստակորեն դրսևորված է նրա մեծ սերը հարազատ ժողովրդի կերպարվեստի նկատմամբ:

**Հրաչյա ՌՈՒԽԿՅԱՆ**
**Հայկական ՍՍՀ ժողովրդական նկարիչ**

*Հանձնված է շարվածքի՝ 16.08.88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 7.09.88 թ.: ՎՖ 04035: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 15632: Պատվեր՝ 1413:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*